19 SEP 2009

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

## 3

ՄԱՐՏ

ԵՐԵՎԱՆ • 1973

A.R.A.R.@

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։

3-Й ЭКЗ.

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3 ՄԱՐՏ 1973
ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն



digitised by A.R.A.R.@

# Содержание




542-73





# ՎՃՌԱԿԱՆ ԲԵԿՈՒՄ Է ՊԵՏՔ

Ուղեցույց ունենալով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, մեր լայնածավալ երկրի աշխատավորները ամենուրեք լարված պայքար են տանում ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության կարգացման իններորդ հնգամյա պլանով սահմանված առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ասպարեզում նորանոր հաջողությունների հասնելու համար։

Կուսակցության կողմից դաստիարակված և նրա շուրջ սերտորեն համախմբված մեր հերոսական բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, մտավորականությունը, սովետական ողջ ժողովուրդը լավ գիտեն, որ ընթացիկ հնգամյա պլանի հաջող կատարումը բոլորից պահանջում է հետևողական ու լարված աշխատանք, մեծ եռանդ ու բարձր կազմակերպվածություն, ստեղծագործական նախաձեռնություն, գիտության նվաճումների ու առաջավոր փորձի արմատավորում, եղած միջոցների ու ներքին ռեզերվների արդյունավետ օգտագործում։ Հենց այդ գիտակցությամբ էլ նրանք ջանում ու ձգտում են հաջողությամբ կատարելու հնգամյա պլանը, որն ունի ոչ միայն ներքին, այլև միջազգային հսկայական նշանակություն։

Անցած երկու տարվա արդյունքները ցույց են տալիս, որ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության կարգացման նոր հնգամյա պլանը, ամբողջությամբ վերցրած, կատարվում է հաջողությամբ։ Ամրապնդելով 1971 թվականին ձեռք բերված նվաճումները, սովետական մարդիկ նոր, առավել նշանակալից ցուցանիշների հասան 1972 թվականին։ Կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները և ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի պատվին ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցությունում ստանձնած պարտավորությունները, նրանք հնգամյակի երկրորդ տարում հասան էկոնոմիկայի հետագա վերելքի, գիտության ու կուլտուրայի կարգացման և ժողովրդի բարեկեցության բարձրացման։

1972 թվականին Միության մասշտաբով սպառման ու կուտակման համար օգտագործված ազգային եկամուտն ավելացել է 11 միլիարդ ռուբլով և կազմել է ավելի քան 310 միլիարդ ռուբլի (փաստական գներով)։ Ազգային եկամտի երեք քառորդը օգտագործվել է սպառման համար։

Նշանակալից են արտադրության կարգացման պլանային առաջադրանքների կատարման ասպարեզում ձեռք բերված հաջողությունները։ Արտադրության մեջ նոր նմուշի մեծ քանակությամբ մեքենաներ, ապարատներ, սարքեր, հաշվողական տեխնիկա ու նյութեր, մեքենայացված հոսքային ու ավտոմատ գծեր




digitised by A.R.A.R.@

և կատարելագործված տեխնոլոգիա ներդնելու, արտադրապրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը ծավալելու շնորհիվ երկրի արդյունաբերական արտադրանքը 1972 թվականին աճել է 26 միլիարդ ռուբլով և անցել է 424 միլիարդ ռուբլուց: Արդյունաբերական արտադրանքի բացարձակ աճը, նախորդ տարվա համեմատությամբ, կազմել է 6,5 տոկոս, իսկ աշխատանքի արտադրողականության աճը՝ 5,2 տոկոս: Աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին ստացվել է արդյունաբերական արտադրանքի աճի ավելի քան 80 տոկոսը և ազգային եկամտի աճի երեք քառորդը: Ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության աճն ապահովել է ավելի քան 2,5 միլիոն մարդու աշխատանքի տնտեսում:

Հարկ է նշել, որ անցած տարում առավել արագ տեմպերով են զարգացել արդյունաբերության այն ճյուղերը, որոնք ապահովում են ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջընթացը և դրանով իսկ նպաստում են աշխատանքի արտադրողականության մեծ չափով բարձրացմանը, արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը և շահույթի ավելացմանը:

Չնայած անբարենպաստ եղանակի պատճառած մեծ վնասին, երկրի գյուղատնտեսության արտադրանքի ընդհանուր ծավալը կազմել է համարյա 84 միլիարդ ռուբլի, որը թեև մի փոքր պակաս է 1971 թվականից, բայց ավելի է նախորդ հնգամյակի միջին տարեկան արտադրությունից:

Կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության կողմից վերջին տարիներս գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման, հողագործության կուլտուրայի բարձրացման ուղղությամբ իրականացված միջոցառումները, երկրի ռեսուրսները մոբիլիզացնելու և կոլտնտեսություններին ու սովխոզներին օգնություն ցույց տալու գործում անցած տարի ձեռնարկված լրացուցիչ միջոցները հնարավորություն տվին մեղմացնելու անբարենպաստ եղանակի բացասական հետևանքները: Կուսակցության կոչով երկրի կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատավորները համառ պայքարի մեջ մտան բնության դեմ և իրենց ունեցած ժամանակակից տեխնիկայի հուժկու միջոցներով ապահովեցին բերքի արագ ու անկորուստ հավաքումը: Նրանց հայրենանվեր ու հերոսական աշխատանքի շնորհիվ հացահատիկի արտադրությունը կազմեց 168, բամբակինը՝ 7,3, շաքարի ճակնդեղինը (գործարանայինը)՝ 75,7, բրնձինը՝ 1,6 միլիոն տոննա: Բոլոր կարգի տնտեսություններում ավելացավ խոշոր եղջերավոր անասունների, այդ թվում կովերի, ինչպես նաև ոչխարների ու այծերի գլխաքանակը. գերակատարվել է անասունների, թռչունների և ձվի գնումների ժողովրդատնտեսական պլանը, իսկ կաթի գնումների պլանը թերակատարվել է:

Կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվների համաձայն շարունակվում է գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդումը: Գյուղատնտեսության համակողմանի զարգացման համար պետության և կոլտնտեսությունների կապիտալ ներդրումները կազմել են 23,7 միլիարդ ռուբլի, որն 8 տոկոսով ավել է 1971 թվականին այդ նպատակով կատարված կապիտալ ներդրումներից: Դրա շնորհիվ իրագործվել է իռիգացիոն-մելիորատիվ ծավալուն շինարարություն, կատարվել է գյուղին տեխնիկայի կարևորագույն տեսակների և հանքային պարարտանյութերի մատակարարման տարեկան պլանը:

Խոշոր և ոգեշնչող են հաջողությունները նաև կապի, տրանսպորտի, կապիտալ շինարարության, ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման բնագավառներում:



Հնգամյակի անցած երկրորդ տարում սովետական ժողովրդի ձեռք բերած հաջողությունների մեջ իրենց արժանի բաժինն ունեն նաև մեր հանրապետության աշխատավորները, որոնք ջանք ու եռանդ չեն խնայում հարազատ կոմունիստական կուսակցության նախագծումները հետևողականորեն գործի վերածելու, ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար:

Վերջերս կայացած հանրապետության կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական ակտիվի ժողովում նշվեց, որ կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները, սովետական ու տնտեսական օրգանները և հասարակական կազմակերպությունները 1972 թվականի հենց սկզբից սոցիալիստական լայն մրցություն ծավալեցին ի պատիվ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի և հանրապետության բոլոր աշխատավորներին մոբիլիզացրին նորանոր հաջողությունների հասնելու հնգամյա պլանի կատարման գործում: Մրցության արդյունքների ամփոփումը ցույց տվեց, որ աշխատավորական շատ կոլեկտիվներ փայլուն ցուցանիշների են հասել և ժամկետից շուտ կատարել հնգամյակի երկրորդ տարվա պլանները:

Հանրապետության աշխատավորների ձեռք բերած հաջողություններն արտացոլված են Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության զարգացման 1972 թվականի պետական պլանի կատարման մասին ՀՍՍՀ կենտվիճվարչության հաղորդագրության մեջ: Այստեղ նշված է, որ հնգամյակի երկրորդ տարում սպառման և կուտակման համար օգտագործված ազգային եկամուտն աճել է ավելի քան 100 միլիոն ռուբլով և կազմել է 3 միլիարդ ռուբլի (փաստական գներով): Ազգային եկամտի մոտավորապես երեք քառորդը օգտագործված է սպառման համար, որի շնորհիվ զգալիորեն բարձրացել է ժողովրդի կենսամակարդակը:

Կատարվել է արտադրանքի իրացման տարեկան պլանը: Տարվա ընթացքում արդյունաբերական արտադրանքն ավելացել է 124 միլիոն ռուբլով կամ աճել է 4 տոկոսով: Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունն աճել է 1,8 տոկոսով, շահույթը՝ 4 տոկոսով: Կապիտալ շինարարության ծրագրի իրագործման շնորհիվ գործարկվել են 700 միլիոն ընդհանուր արժողությամբ հիմնական ֆոնդեր: Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում մի շարք խոշոր միջոցառումներ են իրականացվել գիտատեխնիկական առաջադիմության արագացման համար: Ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել են մոտավորապես 15 հազար գյուտ և նորարարական առաջարկություն, որոնք տարեկան տալիս են ավելի քան 25 միլիոն ռուբլու տնտեսում:

Ամբողջությամբ վերցրած հանրապետության արդյունաբերության տարեկան պլանի կատարմամբ հանդերձ 97 ձեռնարկություն, կամ բոլոր ձեռնարկությունների 14 տոկոսը թերակատարեցին արտադրության իրացման պլանը: Թերակատարվել է հանքային պարարտանյութերի, ծծմբաթթվի, ավտոդողի, դարբնամամլիչ մեքենայի, կենտրոնախույս պոմպի, ցեմենտի, հավաքովի երկաթբետոնի, շիֆերի, բամբակե ու բրդե գործվածքեղենի, կաշվե կոշիկի, հրուշակեղենի, սառնարանի, կահույքի և մի քանի այլ արտադրատեսակների արտադրության պլանը:

Առանձնապես լուրջ թերություններ կան հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման, ֆոնդահատույցի, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, նոր տեխնիկայի ներդրման և աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում: Շատ ձեռնարկություններում արտադրանքի պլանի թերակատարման



digitised by A.R.A.R.@

և աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերի նվազեցման հետևանքով միջին աշխատավարձի աճի տեմպերը գերազանցում են աշխատանքի արտադրողականության բարձրացման աճի տեմպերին: Ավելին, արտադրության վատ կազմակերպման, նյութական ու դրամական միջոցների ոչ ռացիոնալ օգտագործման, անարտադրողական ծախսերի մեծացման պատճառով թերակատարվել է արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանը: Հիմնականում դրանով է բացատրվում այն, որ միայն հանրապետական ենթակայության ձեռնարկություններում կատարվել է 15,4 միլիոն ռուբլու գերածախս:

Դեռևս չի հաղթահարված այն արատավոր պրակտիկան, երբ առանձին մինիստրությունների ու գերատեսչությունների թողտվությամբ արդյունաբերության որոշ ճյուղեր և մի շարք ձեռնարկություններ տարվա ընթացքում գործում են անհամաչափ, անհարկի խախտում են արտադրանքի թողարկման՝ ըստ ամիսների ու եռամսյակների սահմանված պլանը: Այդպիսի ձեռնարկությունների ղեկավարները կոլեկտիվների համար տարվա սկզբի եռամսյակներին ապահովում են թեթև, ոչ լարված աշխատանք, իսկ վերջին եռամսյակին անցնում են գրոհայնության, դիմում են անհարկի միջոցների, որոնք, ինչ խոսք, լավ արդյունքի չեն հասցնում: Ավելին, առանձին ձեռնարկությունների ղեկավարներ, խախտելով պետական կարգապահությունը և հովանավորվելով մինիստրությունների կողմից, չորրորդ եռամսյակում երբեմն հասնում են նախօրոք հաստատված պետական պլանի վերանայմանն ու պակասեցմանը: Այս առումով ՀԿԿ Երևանի Սովետականի շրջկոմի օրերս տեղի ունեցած պլենումում խիստ քննադատության ենթարկվեցին ոչ ալկոհոլային խմիչքների, շամպայն-գինիների, տեխնոլոգիական սարքավորումների, հացի № 5 գործարանների, «Արագած» և կարի № 5 ֆաբրիկաների ղեկավարները, ինչպես նաև թեթև ու սննդի արդյունաբերության մինիստրությունները, որոնք 1972 թվականի չորրորդ եռամսյակում նշված ձեռնարկությունների արտադրական պլաններն նվազեցրել են ավելի քան 2 միլիոն ռուբլով:

Լուրջ անհանգստություն են պատճառում կապիտալ շինարարության ասպարեզում եղած թերությունները: Մինիստրությունների և գերատեսչությունների մեծ մասը և, հանրապետությունն ամբողջությամբ վերցրած, անցած տարի կապալային աշխատանքների ծավալի գծով թերակատարեցին պլանային առաջադրանքները: Ավելին, կենտրոնացված կապիտալ ներդրումների գծով հիմնական ֆոնդերի գործարկման առաջադրանքները կատարվել են միայն 66 տոկոսով, որով և շահագործման չհանձնվեցին արտադրական մի շարք կարևոր օբյեկտներ ու հզորություններ, շատ բնակելի տներ, դպրոցների, մանկապարտեզների ու մանկամսուրների շենքեր:

Հայտնի է, որ խստաշունչ ձմռան և գարնան ուշացման պատճառով անցած տարի անբարենպաստ պայմաններ առաջացան գյուղատնտեսության համար: Բայց հանրապետության կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատավորները կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ ու օգնությամբ լուրջ ջանքեր գործադրեցին առաջացած դժվարությունները հաղթահարելու և սոցիալիստական պարտավորությունները կատարելու համար: Դրա շնորհիվ հաջողությամբ կատարվեցին հացահատիկային ու բոստանային կուլ-



տուրաների, ծխախոտի, խորդենու, կաթի, մսի, ձվի և բրդի մթերումների պետական առաջադրանքները:

Գյուղատնտեսության բնագավառում արդյունքներն ավելի մեծ կլինեին, եթե չլինեին այն զգալի թերությունները ու բացերը, որոնք կան արտադրության կազմակերպման գործում: Գաղտնիք չէ, որ հանրապետության մի շարք շրջաններում և մեծ թվով կոլտնտեսություններում ու սովխոզներում ագրոկանոնների կոպիտ խախտման հետևանքով ցածր բերք է ստացվել: Հացահատիկային կուլտուրաների ցածր բերք է ստացվել Եղեգնաձորի, Ապարանի, Ազիզբեկովի, Ամասիայի և Կրասնոսելսկի շրջաններում, բանջարեղենի ու կարտոֆիլի ցածր բերք՝ Ապարանի, Ղափանի, Թումանյանի, Գորիսի և մի շարք այլ շրջաններում:

Թերությունները քիչ չեն նաև անասնապահության բնագավառում: Հանրապետության և, առանձնապես, Վարդենիսի, Ղափանի և Կրասնոսելսկի շրջանների կոլտնտեսությունների ու սովխոզների հոտում դեռևս քիչ է կովերի գլխաքանակը: Շատ շրջաններում ու տնտեսություններում ցածր է անասունների մթերատվությունը: Աններելի է, երբ 1971 թ. համեմատությամբ, 1972 թ. ֆուրաժային կովի կաթնատվությունը նվազել է Շահումյանի, Էջմիածնի, Արարատի, Գորիսի, Իջևանի և մի շարք այլ շրջաններում:

Կովերին վատ խնամելու և բավարար քանակությամբ կեր չտալու հետևանքով առանձին շրջանների շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում կաթի արտադրությունը նվազել է նաև այս տարվա հունվար ամսին: Անասնապահական մի այնպիսի շրջանում, ինչպիսին Կալինինոն է, հունվար ամսին պակաս է արտադրվել 100 տոննա կաթ:

Ինչպես արդյունաբերության, այնպես էլ գյուղատնտեսության բնագավառում 1972 թ. եղած թերությունների ու բացերի հիմնական պատճառներից մեկն այն է, որ առանձին մինիստրություններ, գերատեսչություններ, արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական ղեկավարներ պահանջվածին պես չմոբիլիզացրին կոլեկտիվների ուժերը և հետևողական պայքար չծավալեցին պետական պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարման համար: Կուսակցության շատ քաղկոմշրջկոմներ էլ, իրենց հերթին, սիստեմատիկ ու հետևողական հսկողություն չիրականացրին սկզբնական կուսկազմակերպությունների ու կոլեկտիվների աշխատանքի վրա, ինչպես հարկն է նրանց չօգնեցին պետական պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարումն ապահովելու համար:

Այժմ, երբ թևակոխել ենք հնգամյակի երրորդ տարին, հրամայական պահանջ է դառնում նախորդ տարում եղած թերությունների ու բացերի իսպառ վերացումը, առավել կազմակերպված ու լարված աշխատանքը, էկոնոմիկայի արդյունավետության շեշտակի բարձրացումը: 1973 թվականը հնգամյակի երրորդ, վճռական տարին է, որը մեծապես որոշելու է ամբողջ հնգամյակի բախտը: Ընթացիկ տարում ոչ միայն պետք է անպայմանորեն ապահովել պետական պլանային առաջադրանքների կատարումը, այլև զգալիորեն գերազանցել դրանք և անհրաժեշտ ռեզերվներ ստեղծել հաջորդ տարիների համար: Ահա թե ինչու պետք է վճռական բեկում ստեղծել ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում և հասնել արտադրանքի թողարկման նշանակալից ավելացման:



digitised by A.R.A.R.@

ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի մասին տված իր զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևն անդրադառնալով հնգամյակի երրորդ վճռական տարվա պլանների հաջող կատարմանը, դրանց գերազանցմանն ու հաջորդ տարիների համար անհրաժեշտ ռեզերվների ստեղծմանը, նշեց, որ դա կարող է արվել. «Առաջին հերթին՝ մեր ունեցած մեծ ռեզերվների իրացման հաշվին...: Դա պետք է արվի խնայողության խիստ ռեժիմի, ուժերն ու միջոցները գործարկվելիք օբյեկտներում կենտրոնացնելու, աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու և աշխատանքում կազմակերպվածությունը բարձրացնելու միջոցով»:

Հենց այդ գիտակցությամբ էլ հանրապետության բանվորները, կոլտնտեսականները, ինժեներա-տեխնիկական անձնակազմը, գյուղատնտեսության մասնագետները և գիտնականները, ջերմորեն հավանություն տալով և լիովին պաշտպանելով ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԿ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումները 1973 թվականի ժողովրդատնտեսական պլանները ժամկետից շուտ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին, մեծ սիրով մտան մրցության մեջ և ստանձնեցին բարձր պարտավորություններ:

Կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններ, մինիստրությունների ու գերատեսչությունների կարևոր խնդիրն է՝ բազմակողմանի օգնություն ցույց տալ արտադրական կոլեկտիվներին, գործի դնել ներքին բոլոր ռեզերվները և ապահովել սոցիալիստական պարտավորությունների ժամանակին կատարումը: Մրցության արդյունքներն ամփոփելիս, առաջավորներին աջակցելու և խրախուսելու հետ միասին, պետք է ի հայտ բերել նաև նրանց, ովքեր բարեխղճորեն չեն աշխատում և ետ են մնում: «Եվ դա,— ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— հարկավոր է անել հրապարակայնորեն, ի լուր ամենքի, որպեսզի մարդիկ իմանան ոչ միայն նրանց մասին, ովքեր աշխատում են ուժերի լիակատար նվիրումով, այլև նրանց մասին, ովքեր աշխատում են առանց եռանդի, առանց լարվածության»:

Հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա առաջադրանքները մեծ են ու պատասխանատու: Դրանց կատարման համար ամեն օր, ամեն ժամ պետք է հետևողական պայքար ծավալել, գործի դնել բոլոր միջոցները: Պետական պլանը, սահմանված առաջադրանքները օրենք են և պարտադիր բոլորի համար: Ուստի չպետք է լինի ձեռնարկություն, որ չկատարի ընթացիկ տարվա արտադրական պլանն ու ստանձնած պարտավորությունները: Այդ գործում պետք է բարձրացնել տնտեսական ղեկավարների պատասխանատվությունը, անվիճելի լինել առանձին տեղերում նկատվող թափթփվածության, անտնտեսվարության ու այն երևույթների նկատմամբ, որոնք պատճառ են հանդիսանում առաջադրանքների թերակատարման:

Հանրապետության կուսակցական կազմակերպությունները, քաղաքի ու գյուղի բոլոր աշխատավորները լի են վճռականությամբ պատվով կատարելու հնգամյակի երրորդ տարվա առաջադրանքները, մինչև վերջ գործի վերածելու Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարի պատմական որոշումները:



# ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՒՐՍՈՎ

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԵՐԻ ԵՎ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ԵՐՐՈՐԴ ՀԱՏՈՐԻ ԼՈՒՅՍ ԸՆԾԱՅՄԱՆ ԱՌԹԻՎ

*«Հայաստան» հրատարակչությունը լույս է ընծայել ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի Լենինյան կուրսով ժողովածուի երրորդ հատորը*, ուր ամփոփված են 1970—1972 թթ. ընթացքում արտասանած ճառերը, զեկուցումներն ու ելույթները:*

*Լ. Ի. Բրեժնևի ճառերում և հոդվածներում համակողմանիորեն լուսաբանվում է մեր կուսակցության բեղմնավոր գործունեության բազմաերանգ փորձը կոմունիստական շինարարության և ՍՍՀՄ արտաքին քաղաքականության բնագավառներում, մշակվում են մարքս-լենինյան տեսության կարևորագույն պրոբլեմները, վերլուծվում է կուսակցական-կազմակերպական և գաղափարական աշխատանքի պրակտիկան զարգացած սոցիալիստական հասարակարգի պայմաններում:*

*ՍՄԿԿ տեսության ու պրակտիկայի և արդի էտապում համաշխարհային կոմունիստական շարժման հրատապ հարցերը, որոնք քննարկվում են Լենինյան կուրսով ժողովածուի երրորդ հատորում, հետագա լուսաբանում են ստացել Լ. Ի. Բրեժնևի «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հիսնամյակի մասին» զեկուցման մեջ: Տեսական և քաղաքական մեծ նշանակություն ունեցող այդ փաստաթղթում համակողմանիորեն ցույց է տրված կոմունիստական կուսակցության տեսական, քաղաքական ու կազմակերպչական վիթխարի աշխատանքը ՍՍՀՄ ամրապնդման ու զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման բնագավառում, ամփոփված են մեր երկրի պատմական հոյակապ նվաճումները և նախանշված նրա հետագա զարգացման հեռանկարները, բացահայտված է սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործում ՍՍՀՄ փորձի միջազգային նշանակությունը: Ներկայումս կոմունիստները, սովետական երկրի բոլոր աշխատավորները խորապես ուսումնասիրում են այդ փաստաթղթի դրույթները և անշեղորեն ղեկավարվում դրանցով:*

* Լ. Ի. Բրեժնև, «Լենինյան կուրսով», ճառեր և հոդվածներ: Հատ. երրորդ, 1972 թ., Երևան, «Հայաստան» հրատ., 719 էջ:



digitised by A.R.A.R.@

Վերջին տարիներին սովետական ժողովուրդը, կոմունիստական կուսակցության և նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի ղեկավարությամբ, նոր, վիթխարի հասումներ ունեցավ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, ժողովրդի բարեկեցության ու կուլտուրական մակարդակի բարձրացման, մեր մեծ հայրենիքի տնտեսական և պաշտպանական հզորության ամրապնդման ասպարեզում: Ուստի, բնական է, որ գրքում պատշաճ տեղ է հատկացված կուսակցության տնտեսական քաղաքականությանը: Այնտեղ բազմակողմանիորեն բացահայտվում և հիմնավորվում է ՍՄԿԿ և նրա Կենտրոնական կոմիտեի հսկայական աշխատանքը էկոնոմիկայի ղեկավարման, տնտեսավարման նոր մեթոդների, տնտեսության կազմակերպման ու կառավարման նոր ձևերի մշակման ու օգտագործման ասպարեզում: Ցույց են տրվում սոցիալիստական տնտեսավարման առավելությունները, ՍՄԿԿ տնտեսական քաղաքականության փայլուն նվաճումները: Մեր երկրում,— նշում է Լ. Ի. Բրեժնևը,— «...ստեղծվել է տնտեսական վիթխարի հզորություն, որի հիմքը կազմում են բազմաճյուղ ինդուստրիան և սոցիալիստական խոշոր գյուղատնտեսությունը, առաջավոր գիտությունը, բանվորների, մասնագետների, տնտեսական ղեկավարների որակյալ կադրերը: Դա մի այնպիսի էկոնոմիկա է, որն օրական արտադրում է գրեթե երկու միլիարդ ռուբլու հանրային արդյունք, այսինքն՝ տասն անգամ ավելի, քան օրական արտադրվում էր 30-ական թվականների վերջերին» (էջ 316):

Տնտեսական այս վիթխարի պոտենցիալի շնորհիվ մեծացել են սովետական հասարակության հետագա բազմակողմանի առաջընթացի նոր հնարավորությունները: Ուստի, կուսակցությունը նշում է արդի էտապում ժողովրդատնտեսական նորանոր խնդիրների լուծման հիմնական ուղիները, աշխատավորներին նպատակամղում ըստ ամենայնի բարձրացնել և ինտենսիվացնել հասարակական արտադրության արդյունավետությունը:

Ներկայումս մեր բազմազգ երկրի աշխատավորներն իրականացնում են ՍՄԿԿ XXIV համագումարի հոյակապ կանխագծումները: Գրքում զետեղված ճառերում ու հոդվածներում տրված է միլիոնավոր սովետական մարդկանց, առաջավոր կոլեկտիվների, մարզերի և հանրապետությունների փորձի վերլուծությունը: Այն պարզորոշ ցույց է տալիս, թե ինչպիսի հսկայական ուժեր են թաքնված ժողովրդական նախաձեռնության մեջ, գիտության և տեխնիկայի նվաճումների, գյուտարարների ու ռացիոնալիզատորների նորարարական առաջարկությունների համարձակ օգտագործման, արտադրության հմուտ կազմակերպման մեջ:

Մեր երկրում կոմունիստական շինարարությունը կատարվում է գիտատեխնիկական հեղաշրջման ընձեռած լայն հնարավորությունների պայմաններում: Սոցիալիզմը, պլանային սոցիալիստական տնտեսությունը առավել լայն ասպարեզ են բացում գիտության ու տեխնիկայի համակողմանի առաջընթացի համար: Գիտատեխնիկական առաջընթացը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գլխավոր լծակն է: Այս ոլորտում ներկայումս սուր մրցություն է ընթանում սոցիալիզմի և կապիտալիզմի միջև: Այդ մրցության մեջ սովետական գիտության նվաճումները մեծ են և անվիճելի: ՍՍՀՄ-ը գիտության շատ բնագավառներում ընթանում է առջևից: Սակայն արդի դարաշրջանում գլխավորն ամբողջ արտադրության գիտատեխնիկական բարձր մակարդակի ապահովումն է, որի համար լուրջ միջոցներ է ձեռնարկում մեր կուսակցությունը: Հատորի նյութերում խորապես բացահայտվում է գիտատեխնիկական հեղափոխության այսօրվա նվաճումները սոցիալիստական տնտեսավարման առավելությունների հետ միացնելու նշանակությունը և նշվում դրանց արմատավորման ուղիները:



Հնգամյա պլանը, սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման խնդիրներն անհրաժեշտորեն նոր պահանջներ են ներկայացրել պլանավորմանը, կառավարմանը, տնտեսական աշխատանքի մեթոդների կատարելագործմանը: Ուժեղացել է էկոնոմիկայի բոլոր օղակների փոխադարձ կախվածությունը, որի շնորհիվ մեծացել է հեռանկարային պլանավորման, միջճյուղային կապերի սիստեմի կատարելագործման պահանջը: Հեռանկարային պլանավորման հիմքում,— նշում է Լ. Ի. Բրեժնևը,— «...պետք է ընկած լինեն ամենաստույգ, գիտականորեն հիմնավորված հաշվարկումները, տնտեսավարման ու պլանավորման առավել ժամանակակից մեթոդները, կազմակերպման ու կառավարման ձևերն ու կառուցվածքները: Նշանակում է՝ մենք բոլորս պետք է լրջորեն աշխատենք այնպիսի բնագավառում, ինչպիսին պլանավորումն է:

Ուստի այժմ առանձնապես կարևոր է սովորել աշխատանքի տնտեսավարման, կառավարման առաջավոր մեթոդները: Դա պետք է դառնա մեր աշխատանքի ամբողջ ոճի, մեր կուսակցության, սովետական ողջ ժողովրդի կողմից լուծվող պրակտիկ գործերի նկատմամբ ամբողջ մոտեցման հիմքերից մեկը» (էջ 644—645):

Ներկայումս, նշում է Լ. Ի. Բրեժնևը, էկոնոմիկայի բնագավառում կուսակցական, սովետական, տնտեսական և արհմիութենական մարմինների գլխավոր խնդիրն է՝ յուրաքանչյուր հարցին մոտենալ իններորդ հնգամյա պլանի, ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած տնտեսական և սոցիալական քաղաքականության կոնկրետ իրականացման դիրքերից: Հասնել տնտեսական որոշումների համակողմանի հիմնավորվածության և արդյունավետության: Առաջադրված խնդիրները լուծել խնայողաբար, նվազագույն ծախսումներով և հասարակության համար առավելագույն փոխհատուցմամբ: Բարձրացնել պահանջկոտությունը և բոլոր աշխատողների անձնական պատասխանատվությունը հանձնարարված գործի, ՍՄԿԿ Կենտկոմի և կառավարության որոշումների կատարման համար: Հարկավոր է բացառել կուսակցական և պետական կարգապահության խախտումները, խիստ պատժել այդպիսի խախտումների համար:

Մեր կուսակցությունը մեծ ուշադրություն է նվիրում գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացմանը: Գրքում լուսաբանվում են գյուղատնտեսության զարգացման կոմպլեքսային ծրագրից բխող հրատապ խնդիրները, նշվում այդ բնագավառի աշխատողների առջև ծառացած այն լուրջ պրոբլեմները, որոնք պետք է լուծվեն հնգամյակի ընթացքում:

«Կուսակցությունը,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— առանձնահատուկ ուշադրություն է նվիրում հնգամյակի գլխավոր խնդրի լուծման՝ սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման հետ անմիջականորեն կապված արտադրության ճյուղերի զարգացմանը: Գյուղատնտեսության մեջ կատարվող կապիտալ ներդրումները կկազմեն 128,6 միլիարդ ռուբլի, այսինքն՝ 46,4 միլիարդով ավելի, քան անցյալ հնգամյակում...

Հենց այն փաստը, որ մենք հնարավորություն ենք ստանում դնելու և լուծելու այդպիսի մասշտաբի խնդիրներ, վկայում են մեր պետության հզորությունը, ուժը» (էջ 641):

ՍՄԿԿ տնտեսական քաղաքականության գլխավոր նպատակը և իմաստն է՝ ամենաբարենպաստ պայմաններ ստեղծել սովետական մարդկանց աշխատան-



digitised by A.R.A.R.@

քի, ուսման, հանգստի, նրանց ստեղծագործական ունակությունների համակողմանի զարգացման համար: Մեր երկրում տարեցտարի աճում են բնակչության մեկ շնչին ընկնող եկամուտները, բարելավվում են բնակարանային պայմանները, առողջապահության և ժողովրդական կրթության գործը: Լ. Ի. Բրեժնևի ճառերում և հոդվածներում հումանիստական այս վեհ նպատակների իրականացման տեսանկյունից են լուսաբանվում և գնահատվում արդիականության հասունացած պրոբլեմները, մեր առաջընթացի հոյակապ հեռանկարները:

* * *

Գրքում մեծ տեղ է հատկացված սովետական հասարակության սոցիալ-քաղաքական հարաբերությունների, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման հարցերին: Սոցիալիստական դեմոկրատիայի իմաստն ու բովանդակությունը,— նշում է Լ. Ի. Բրեժնևը,— մենք համարում ենք երկրի, հասարակական գործերի կառավարմանն ավելի ու ավելի լայն մասսաների մասնակցությունը: Հասարակության քաղաքական ողջ սիստեմը, աշխատավորների հարաճուն նախաձեռնությունը ծառայում են կոմունիզմի կառուցմանը: Այդպիսի դեմոկրատիան մեզ համար կենսական պահանջմունք է, սոցիալիստական հասարակական հարաբերությունների զարգացման և ամրապնդման անհրաժեշտ պայմանը:

Հատորում հանգամանորեն ցույց են տրված սովետական հասարակության շարունակ ամրապնդվող սոցիալ-քաղաքական և բարոյական միասնությունը, բոլոր ազգերի, դասակարգային ու սոցիալական խմբերի բարեկամությունն ու համագործակցությունը, բնութագրվում են զարգացած սոցիալիզմի հասարակության սոցիալական կառուցվածքը, բանվոր դասակարգի առաջատար դերը, նրա օրեցօր ամրապնդվող դաշինքը կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի հետ: Կուսակցության քաղաքականության նպատակն է, ասում է Լ. Ի. Բրեժնևը, նպաստել բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ինտելիգենցիայի մերձեցման, քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների աստիճանական հաղթահարմանը: Դա անդասակարգ կոմունիստական հասարակարգի կառուցման գլխավոր բնագավառներից մեկն է:

Գրքում խորությամբ լուսաբանվում և քննարկվում են ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականության հոյակապ հաստումները: Հասարակական կյանքի այդ ամենաբարդ հարցերից մեկի լուծումը իրականություն դարձրեց միայն սոցիալիզմը: Միայն նա կարողացավ արդարացիորեն լուծելու դարեր շարունակ մարդկությանը հուզող այդ կնճռոտ հարցը: Անշեղորեն իրականացնելով ազգային քաղաքականության լենինյան սկզբունքները՝ մեր կուսակցությունը սովետական իշխանության տարիներին ապահովեց ու իրականացրեց սովետների երկրի բոլոր ազգերի ու ազգությունների համակողմանի զարգացումն ու ծաղկումը, ամրապնդեց նրանց եղբայրական միասնությունն ու բարեկամությունը: Սոցիալիստական հասարակությունը, կուսակցության վարած լենինյան ազգային քաղաքականության հետևողական իրականացումը, ասում է Լ. Ի. Բրեժնևը, համախմբեցին մեր երկրի ժողովուրդներին, նրանց բարեկամությունը վերածեցին սովետական հասարակության զարգացման շարժիչ ուժի, Սովետական Միության բոլոր ազգերի ու ազգությունների եռանդի ու ստեղծագործության անսպառ աղբյուրի: ՍՄԿԿ հավատարիմ մնալով լենինյան պատգամներին, կենսագործում է մեր երկրում բնակվող ավելի քան հարյուր ազգերի ու



ազգությունների տնտեսության ու մշակույթի բարգավաճումն ապահովելու գիծը: Սովետական Միությունում վաղուց այլևս չկան հետամնաց, թույլ զարգացած հանրապետություններ: Միութենական 15 հանրապետություններից յուրաքանչյուրն ունի ժամանակակից ինդուստրիա, մեքենայացված գյուղատնտեսություն, ինտելիգենցիայի ազգային կադրեր, գիտությունների ակադեմիա, համալսարաններ, գիտահետազոտական ինստիտուտներ: Եվ այս ամենը համատեղ, ընդհանուր ջանքերի, եղբայրական փոխադարձ օգնության և աջակցության արգասիք են:

Սոցիալիզմի, կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության, ժողովուրդների բարեկամության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների կենսագործման շնորհիվ մեր մեծ հայրենիքի բոլոր ազգերի ու ազգությունների պատմական վիթխարի նվաճումների փայլուն օրինակներից մեկը Սովետական Հայաստանն է: Նրա պատմական փորձը, ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Գերագույն սովետի հանդիսավոր նիստում արտասանած՝ «Սովետական Հայաստանի հիսուն տարին» ճառում, կըրկին ու կրկին հաստատում է, որ ազգի իսկական ծաղկումը ձեռք է բերվում ոչ թե ազգային պարփակման ու մեկուսացման ուղիներով, այլ սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների եղբայրական ընտանիքում՝ փոխադարձաբար միմյանց հարստացնող ներդաշնակ զարգացման շնորհիվ: Սովետական Հայաստանի տնտեսական ու հոգևոր կյանքի բազմակողմանի ծաղկումը սոցիալիզմի, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության կենսահաստատ ուժի վառ ապացույցն է:

Բարձր գնահատելով սովետական իշխանության տարիներին հայ ժողովրդի ձեռք բերած աննախադեպ նվաճումները, Լ. Ի. Բրեժնևը շեշտում է սովետական բոլոր ժողովուրդների, այդ թվում և հայ ժողովրդի հայրենասիրությունը, հավատարմությունն ինտերնացիոնալիզմի գաղափարներին: «Բայց, ասում է Լ. Ի. Բրեժնևը, եթե հայերը և մեր երկրի մյուս ժողովուրդներն ընկալեին գործի միայն մեկ կողմը, եթե նրանք խոսեին ու մտածեին միայն իրենց հանրապետության մասին, նրա քաղաքների ու դաշտերի, նրա կուլտուրայի մասին, ապա կարող էր նացիոնալիստական դիրքերը գլորվելու վտանգ առաջանալ: Հայաստանում մենք տեսանք միանգամայն այլ բան: Իրենց հանրապետության նկատմամբ հայրենասիրական բարձր ոգին հայերի, ինչպես որ սովետական մյուս բոլոր ժողովուրդների մեջ, զուգորդվում է առավել լայն առումով հայրենասիրական ոգու հետ՝ նվիրվածությամբ ու սիրով դեպի մեր ընդհանուր մեծ սոցիալիստական հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը... Սովետական Հայաստանի ժողովուրդը՝ կոմունիստներն ու անկուսակցականները, բանվորությունը, գյուղացիությունն ու ինտելիգենցիան հայրենասիրության ոգին սերտորեն զուգորդում են սովետական մարդու մի այլ, ոչ պակաս արժեքավոր, հատկության՝ ինտերնացիոնալիզմի հետ» (էջ 251):

Մեր երկրի ժողովուրդները, այդ թվում և հայ ժողովուրդը, աչքի լույսի պես են պահպանում հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության լենինյան գաղափարները, քաջ գիտակցելով, որ այդ վեհ սկզբունքների իրականացմամբ միայն նրանք կարող էին հասնել այսօրվա հիասքանչ հաջողություններին: «Լինել հայրենասեր և միևնույն ժամանակ տոկուն, համոզված ինտերնացիոնալիստ,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— նշանակում է խորապես ըմբռնել սոցիալիստական աշխարհայաց-



digitised by A.R.A.R.@

քը, սոցիալիստական կուլտուրան, նշանակում է հավատարիմ լինել լենինյան մեծ ուսմունքին» (էջ 251):

Գրքում համոզիչ կերպով ցույց է տրվում պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի, առաջացման դերն ու նշանակությունը: Պատմության մեջ աննախադեպ այդ մեծ հանրությունը ծնունդ է առել լենինյան ազգային քաղաքականության գործնական իրականացման շնորհիվ, սոցիալիզմի ու կոմունիզմի համար սովետական բոլոր ազգերի ու ազգությունների միացյալ պայքարում: Այդ հանրությունը մեր խոշոր նվաճումն է, ՍՍՀՄ-ում կատարված տնտեսական և սոցիալ-քաղաքական վիթխարի փոփոխությունների արգասիքը:

Հատորում քննարկվում են նոր մարդու ձևավորման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության հարցերը: Մեծ գործը՝ կոմունիզմի կառուցումը, նշում է Լ. Ի. Բրեժնևը, անկարելի է առաջ շարժել առանց մարդու բազմակողմանի զարգացման: Առանց մարդկային կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցության, ներքին հասունության բարձր մակարդակի կոմունիզմն անհնարին է, ինչպես որ այն անհնարին է առանց նյութատեխնիկական բազայի: Ուստի, մեր կուսակցության գաղափարադաստիարակչական ողջ աշխատանքի առանցքը կազմում են աշխատավորության հոծ զանգվածների կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը, նրանց դաստիարակումը մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով: Կուսակցությունը մասսաներին դաստիարակում է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, քաղաքական բարձր գիտակցականության, սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, հեղափոխական զգոնության և բուրժուական գաղափարախոսության ու այն ամենի հանդեպ անհաշտվողականության ոգով, ինչը հակասում է մեր գաղափարներին, խոչընդոտում կոմունիզմի կառուցման գործին:

Սովետների երկրի անցած ուղին, հերոսական սխրանքներով լի նրա պատմությունը վկայում են, որ ՍՄԿԿ-ն պատվով է կատարել բանվոր դասակարգի ու բոլոր աշխատավորների քաղաքական ղեկավարի դերը, սովետական ժողովրդին առաջնորդելով ճիշտ ճանապարհով, լենինյան կուրսով: Ուստի, բնական է, որ գրքում բազմակողմանիորեն քննարկվում է կոմունիստական կուսակցության ղեկավար դերի մեծացման օրինաչափ պրոցեսը: Այսօր, ինչպես նշում է Լ. Ի. Բրեժնևը, այն դարձել է մարքսիզմ-լենինիզմի և ռևիզիոնիզմի միջև մղվող պայքարի հանգուցակետը: ՍՄԿԿ սկզբունքային դիրքավորումը, կուսակցության մասին մարքս-լենինյան ուսմունքի անաղարտության համար նրա անհաշտ պայքարը միջազգային նշանակություն ունեցավ, նպաստելով կոմունիստների և միլիոնավոր աշխատավորների ճիշտ կողմնորոշմանը: ՍՄԿԿ-ի ունեցած ղեկավար դերը հենվում է ռեալ հնարավորությունների վրա, կուսակցության շարքերի ամրակուռ միասնության վրա: Մեր կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն անշեղորեն վարում են ներկուսակցական դեմոկրատիան է՛լ ավելի զարգացնելու, կուսակցության կյանքի լենինյան նորմերը կիրառելու, կոմունիստների ակտիվությունը բարձրացնելու կուրս:

Կուսակցության մեջ, նշվում է գրքում, հետևողականորեն իրականացվում է ղեկավար մարմինների ընտրովիության և հաշվետվության սկզբունքը, հաստատվել է կոլեկտիվ ղեկավարության ոգին, բարելավվել է ներկուսակցական ինֆորմացիան, ավելի է զարգացել քննադատությունն ու ինքնաքննադատությունը: Կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակման գործում



հաստատվել է այնպիսի պրակտիկա, երբ մարդկանց նկատմամբ վստահությունն ու հարգանքը զուգորդվում են սկզբունքային պահանջկոտության հետ:

* * *

Հատորում զետեղված ճառերն ու հոդվածները խորությամբ լուսաբանում են մարդկությանը հուզող քաղաքական և սոցիալ-տնտեսական առավել հրատապ պրոբլեմները, այդ թվում միջազգային հարաբերությունների կոնկրետ հարցերը: Ցույց են տրվում մեր կուսակցության, նրա Կենտկոմի քաղբյուրոյի և սովետական կառավարության միջազգային հսկայական գործունեությունը, որը ծառայում է խաղաղության, դեմոկրատիայի, ՍՍՀՄ-ում կոմունիստական շինարարության շահերին: Սովետական Միության վարած խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականությունն ամրապնդում է սոցիալիզմի, դեմոկրատիայի, ազգային ազատագրության և խաղաղության ուժերի միասնությունը, միջազգային անվտանգությունը: Արդի էտապում ՍՄԿԿ և սովետական պետության արտաքին քաղաքականության հիմնական ուղղություններն ու խնդիրները որոշվեցին կուսակցության XXIV համագումարի ընդունած խաղաղության ծրագրում: Հիշատակելով այդ պատմական ծրագիրը, Լ. Ի. Բրեժնևը համագումարի ամբիոնից ասաց. «...հետևողականորեն վարելով խաղաղության և ժողովուրդների բարեկամության քաղաքականություն, Սովետական Միությունն այսուհետև էլ վճռական պայքար կմղի իմպերիալիզմի դեմ, ուժգին հակահարված կհասցնի ագրեսորների մեքենայություններին և դիվերսիաներին: Մենք, ինչպես որ առաջ, անշեղորեն կպաշտպանենք ժողովուրդների պայքարը հանուն դեմոկրատիայի, ազգային ազատագրության և սոցիալիզմի» (էջ 304):

Սովետական Միությունը, սոցիալիստական մյուս երկրների հետ միասին, հսկայական ավանդ է մուծում իմպերիալիստական ագրեսիայի դեմ, աշխարհում խաղաղության պահպանման և ամրապնդման համար մղվող պայքարում: ՍՍՀՄ-ն անվարան կերպով միշտ պաշտպանում է ազգային անկախության և ազատության համար մարտնչող ժողովուրդներին, գաղութային ու ռասիստական վարչակարգերի դեմ պայքարող մարտիկներին: «Ագրեսիային հասցվող ուժգին հակահարվածը,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— մեր քաղաքականության մեջ միշտ զուգորդվել է միջազգային հասունացած պրոբլեմների կարգավորման, սոցիալական այլ սիստեմի պատկանող պետությունների հետ նորմալ, իսկ որտեղ թույլ են տալիս հանգամանքները, լավ հարաբերություններ պահպանելու կոնստրուկտիվ գծի հետ: Ինչպես որ առաջներում, մենք հետևողականորեն պաշտպանել ենք պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը՝ անկախ նրանց հասարակարգից: Ներկայումս այդ սկզբունքը վերածվել է միջազգային զարգացման իրական ուժի» (էջ 291):

Գրքում զգալի տեղ է հատկացված սոցիալիստական երկրների փոխհարաբերությունների զարգացման, համաշխարհային պատերազմում սոցիալիստական սիստեմի հետագա ամրապնդման հարցերին: Մեր կուսակցությունը մեծ ավանդ է մուծում համաշխարհային սոցիալիզմի զարգացման պրոբլեմները տեսականորեն լուծելու գործում: Ներկայումս սոցիալիզմը կապիտալիզմի հետ պատմական հակամարտության մեջ ապացուցել է իր կենսական մեծ ուժը: Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը՝ հակաիմպերիալիստական պայքարի վճռական ուժը, վիթխարի դեր է խաղում՝ կանխելու համաշխարհային պատերազմը, վիժեցնելու իմպերիալիստական ագրեսորների պլանները: «Այժմ,— ՍՄԿԿ XXIV համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը,— մենք ոչ միայն տեսականորեն գիտենք, այլև գործնականում համոզվել ենք, որ սոցիալիզմի ուղին,



digitised by A.R.A.R.@

նրա գլխավոր հատկանիշները որոշվում են այն ընդհանուր օրինաչափություններով, որոնք հատուկ են սոցիալիստական երկրների զարգացմանը: Մենք գիտենք նաև այն, որ ընդհանուր օրինաչափությունների գործողությունը դրսևորվում է կոնկրետ պատմական պայմաններին, ազգային առանձնահատկություններին համապատասխանող տարբեր ձևերով: Չհենվելով ընդհանուր օրինաչափությունների վրա, հաշվի չառնելով յուրաքանչյուր երկրի կոնկրետ պատմական յուրահատկությունը, անհնար է սոցիալիզմ կառուցել: Առանց այդ երկու գործոնները հաշվի առնելու անհնար է նաև ճիշտ զարգացնել սոցիալիստական պետությունների հարաբերությունները» (էջ 263—264):

ՍՄԿԿ մեծ նշանակություն է տալիս եղբայրական երկրների կոմունիստական կուսակցությունների համագործակցության զարգացմանը, միմյանց դրական փորձի ուսումնասիրմանը: Այդպիսի համագործակցությունը, նշում է Լ. Ի. Բրեժնևը, մեզ հնարավորություն է ընձեռում հարստանալ միմյանց փորձով, համատեղ մշակել սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման սկզբունքային պրոբլեմները:

Համաշխարհային սոցիալիզմի հաջողությունները տագնապ են առաջացնում իմպերիալիզմի լագերում: Միջազգային ասպարեզում տեղի է ունենում գաղափարական կատաղի պայքար: Մեր հակառակորդները ձգտում են ամեն ինչ անել, որպեսզի սեպ խրեն սոցիալիստական երկրների միջև, խարխլեն նրանց միասնությունն ու ամրակուռ դաշինքը: Բայց, ինչպես նշում է Լ. Ի. Բրեժնևը, սոցիալիզմի թշնամիները պետք է իմանան, որ իրենց ոտնձգություններին մենք պատասխանում ենք կրկնապատկված զգոնությամբ, պատասխանում ենք մեր սոցիալիստական, կոմունիստական խնդիրների պլանաչափ, հետևողական լուծմամբ:

Սոցիալիստական լագերի ամրապնդման, իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի հաջողությունը մեծապես կախված է հակաիմպերիալիստական ուժերի և, ամենից առաջ, նրանց ավանգարդի՝ համաշխարհային կոմունիստական շարժման համախմբվածությունից: Ուստի, պատահական չէ, որ հատորում մեծ տեղ են գրավում միջազգային կոմունիստական շարժման միասնության համար ՍՄԿԿ պայքարի հարցերը: ՍՄԿԿ-ն հետևողականորեն պայքարում է աջ և «ձախ» ռևիզիոնիզմի դեմ, որոնք շատ դեպքերում միաձուլվում են նացիոնալիզմի հետ: Ներկայումս, ասում է Լ. Ի. Բրեժնևը, բուրժուական գաղափարախոսները, բուրժուական պրոպագանդան սոցիալիզմի ու կոմունիստական շարժման դեմ մղվող պայքարում ամենից հաճույքով օգտագործում են հենց նացիոնալիստական տենդենցները և դրանց հատկապես այն մասը, որը հակասովետիզմի ձև է ընդունում: ՍՄԿԿ-ն ցույց է տալիս, որ այդ ուղին տանում է դեպի օպորտունիզմի ճահիճը, և դավաճանություն է կոմունիստական շարժման նպատակամբ: Հենվելով մարքս-լենինյան ուսմունքի վրա, ՍՄԿԿ-ն վարում է այնպիսի գիծ, որը նպաստում է համաշխարհային հակաիմպերիալիստական պայքարի հետագա ակտիվացմանը, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միասնության ամրապնդմանը:

Լ. Ի. Բրեժնևի ճառերի ու հոդվածների եռահատորյակի հրատարակումը հիրավի կարևոր իրադարձություն է արդի ժամանակաշրջանի գաղափարական-քաղաքական կյանքում: Այն մեր կադրերին, կոմունիստներին, բոլոր աշխատավորներին կօգնի ավելի խոր յուրացնելու մարքս-լենինյան տեսությունը, ավելի հաստատակամորեն պայքարելու կոմունիզմի հաղթանակի, կուսակցության հոյակապ կանխագծումներն իրականացնելու համար:



5Ա/2-73

# ՈՂՋ ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ԱՊԱԳԱՆ

Վ. ԶԱԳԼԱԴԻՆ

Սոցիալի՞զմն է արդյոք ողջ մարդկության ապագան։

Այս հարցին մարքս-լենինյան գիտությունն ու բանվորական շարժման հեղափոխական պրակտիկան վաղուց դրական են պատասխանել։ Սակայն կոմունիստների համար այդ համոզիչ և ակներև եզրակացությունը շատ-շատերն ամենևին էլ չեն ընդունում։ Չէ՞ որ երկրագնդի բնակչության մեծ մասը դեռևս շատ հեռու է հասարակության զարգացման օրենքների և հեռանկարների գիտական ըմբռնումից։

Մեր օրերում չի կարելի դատել սոցիալիզմի մասին, լիովին վերանալով պատմական իրականությունից։ Նույնիսկ նրա ամենահամոզված թշնամիները չեն կարող անտեսել այն ակնհայտ փաստերը, որ սոցիալիզմն այսօր մարդկության մեկ երրորդ մասի ճակատագիրն է դարձել, որ երբեմնի գաղութատիրության աշխարհի մի շարք երկրների ժողովուրդներ արդեն բռնել են սոցիալիստական վերափոխումների ուղին, որ կապիտալի «կլասիկ» երկրներում ավելի մեծ թվով մարդիկ գիտակցաբար պայքարում են սոցիալիստական հեռանկարի համար։

Ուստի, հասկանալի է, որ մարդկության սոցիալիստական ապագայի վերաբերյալ վիճաբանություններն այժմ ավելի լայն ու սուր բնույթ են ստանում։ Դրանց ընթացքում մեր հակառակորդները կիրառում են բանավեճի ամենաանազնիվ մեթոդները, դիմում աղաղակող ստի ու խարդախության։ Եվ դա, բնական է. բոլորին հայտնի է, որ եթե նույնիսկ մաթեմատիկական աքսիոմները դիպչեին բուրժուազիայի դասակարգային շահերին, ապա նա անխուսափելիորեն կփորձի հերքել նույնիսկ դրանք...

Հիշեցնենք միայն մի կեղծ գործելաձև, որից կարելի է մոտավորապես հետևյալ դատողությունն անել՝ սոցիալիզմն իբր մարքսիստ թեորետիկների հնարանքն է, իսկ սոցիալիստական հեղափոխությունն իբր թե կարող է կատարվել միայն մասսաների կամքին հակառակ՝ «դավադրության» ճանապարհով... Իրողությունը խեղաթյուրող այս ձևակերպումը հաճախ է երևում հակակոմունիստական գրականության մեջ։

Իրոք, Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի և Վ. Ի. Լենինի այն եզրակացությունը, որ սոցիալիզմն ու կոմունիզմը ողջ մարդկության անխուսափելի ապագան են և դրան հասնելու ու դրա համար պայքարելու օրինաչափությունների նրանց








digitised by A.R.A.R.@

ուսմունքը գրականագետների երևակայությունը և պատգամախոսների մարգարեությունը չէ: Դա պատմության ընթացքի խիստ գիտական և օբյեկտիվ վերլուծության վրա հիմնված գիտական կանխատեսություն է:

Այո՛, մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները հաստատեցին, որ բանվորական շարժման նպատակը սոցիալիզմն է: Բայց այդ նպատակը, ինչպես ասում էին նրանք, ո՛չ թե վերացական, հորինած իդեալ է, որին պետք է համապատասխանեցնել հասարակությունը, այլ պատմական անհրաժեշտության առումով՝ սոցիալական պրոգրեսի օբյեկտիվ պահանջներից ծնված մի անհրաժեշտություն է, որը բանվորական շարժումը կոչված է գիտակցելու և օգնելու դրա կենսագործմանը:

Ելնելով հասարակական զարգացման ճանաչված օրենքներից, Կ. Մարքսը, Ֆ. Էնգելսը և Վ. Ի. Լենինը սահմանեցին սոցիալիզմի համար պայքարի հիմնական ուղղությունները ու փուլերը, բանվոր դասակարգի և նրա կուսակցության յուրաքանչյուր էտապի խնդիրները:

Մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների գիտական և քաղաքական կանխատեսություններն իրենց ռեալ մարմնավորման ճշգրտությամբ, հասարակական մտքի պատմության մեջ զարմանալի են ու ինքնատիպ:

— Հիրավի, 1844 թ. Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը առաջինը հռչակեցին, որ պրոլետարիատը կլինի նոր հասարակության ստեղծողը: Ընդամենը չորս տարի անց, 1848 թ. հեղափոխության բարիկադների վրա բանվոր դասակարգը բացահայտ կովի դուրս ելավ բուրժուազիայի դեմ: Այնուհետև 23 տարի անց, 1871 թ. Փարիզյան կոմունայի օրերին, նա առաջին անգամ փորձեց գրավել իշխանությունը, իսկ 46 տարի հետո, 1917 թ., Ռուսաստանում իրագործեց այն.

— 1847 թ. Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը եզրակացրին, որ բանվոր դասակարգի հաղթանակի համար անհրաժեշտ է ստեղծել ինքնուրույն, իրոք հեղափոխական բանվորական կուսակցություն, որի գործունեությունը պետք է հենվի գիտական սոցիալիզմի սկզբունքների վրա: Այն ժամանակ նրանք հանդես եկան որպես Կոմունիստների միության ոգեշնչողներ և կազմակերպիչներ, որպես այդպիսի կուսակցության նախատիպ, իսկ տասնյոթ տարի անց հիմնադրեցին I Ինտերնացիոնալը, որը ժամանակակից կոմունիստական շարժման հիմքը դրեց: Անց 39 տարի, 1903 թ. Վ. Ի. Լենինն ստեղծեց բոլշևիկների կուսակցությունը, իսկ հետագայում հիմնադրվեցին կոմունիստական III Ինտերնացիոնալը և լենինյան տիպի կոմունիստական ու բանվորական կուսակցությունները.

— 1847 թ. Կ. Մարքսն առաջին անգամ առաջադրեց պրոլետարիատի դիկտատուրայի անհրաժեշտության խնդիրը: 70 տարի հետո Հոկտեմբերյան հեղափոխությունը Ռուսաստանում գործնականում հիանալի ապացուցեց այդ դրույթի ճշմարտացիությունը.

— 1882 թ. Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը եզրակացրին, որ հեղափոխության շարժման կենտրոնը տեղափոխվում է Ռուսաստան, որը կդառնա նրա «առաջավոր ջոկատը» Եվրոպայում: Ընդամենը 23 տարի անց, 1905 թ. հեղափոխության բարիկադների վրա ռուսաստանյան պրոլետարիատը հաստատեց այդ եզրակացության ճշմարտացիությունը.

— 1915 թ. Վ. Ի. Լենինը ձևակերպեց սոցիալիստական հեղափոխության հաղթանակի հնարավորությունը սկզբում մի քանի կամ նույնիսկ մեկ, առանձին վերցրած կապիտալիստական երկրում: Երկու տարի անց այդ կանխատեսությունն իրականացավ.

— 1919 թ. Վ. Ի. Լենինը զարգացնելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հայացքները, եզրակացրեց, որ գաղութային և կախյալ երկրների հեղափոխական պոտենցիալը արագ աճում է, որ դրանք կարող են անհամեմատ մեծ դեր կատարել դեպի սոցիալիզմ ընթացող մարդկության զարգացման գործում, որ մասնավորապես մի շարք երկրներում հնարավոր է զարգացման ոչ կապիտալիստական ուղի: Եվ լենինյան այդ կանխատեսությունը լիովին իրականացավ.

— 1920 թ. Վ. Ի. Լենինը հաստատեց, որ Ռուսաստանում հեղափոխության հաղթանակից հետո կապիտալիստական սիստեմից հետևողականորեն կանջատվեն մյուս երկրները, այնուհետև դրանք կհամախմբվեն սոցիալիզմի առաջին երկրի շուրջը, որպես մեկ միասնական սիստեմ, որն ունակ կլինի վճռականորեն ազդելու համաշխարհային ողջ քաղաքականության վրա: Ջանցած 30 տարի այդ կանխատեսությունը լիովին մարմնացավ սոցիալիզմի համաշխարհային սիստեմում:

Ինչպես տեսնում ենք, մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների գիտական կանխատեսությունները հաստատվում են պատմության ամբողջ ընթացքով: Այս հանգամանքն արդեն համոզիչ ապացուցում է այն եզրակացության ճըշմարտացիությունը, որը սոցիալիզմը ողջ մարդկության ապագան է:

Բայց դրան կարելի է առարկել, ինչպես այդ անում են բուրժուական գիտությունն ու պրոպագանդան. որ մարքսիզմի կլասիկների ոչ բոլոր կանխատեսություններն են իրականացել այդպիսի ճշգրտությամբ: Այո՛, դա ճիշտ է: Կ. Մարքսը, Ֆ. Էնգելսը և Վ. Ի. Լենինը սրբագրել են իրենց եզրակացությունները, արել անհրաժեշտ ճշգրտումներ, որոնք հետագայում հաստատվեցին պատմությամբ: Բայց ավելի կարևոր է մի այլ բան: Սրբագրվեցին այն կանխատեսությունները, որոնք կապված են միայն հեղափոխական պրոցեսի զարգացման կոնկրետ պատմական հանգամանքների հետ. օրինակ, մարդկության սոցիալական ազատագրության ժամանակի ու տեղի հարցը: Իսկ հիմնականը, գլոբալ կանխատեսությունը՝ այդ ազատագրության անխուսափելիության մասին, փայլուն կերպով հաստատվեց:

Բուրժուական գիտությունն ու պրոպագանդան անում են այլ առարկություններ: Նրանք պնդում են, օրինակ, որ մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների կանխատեսությունները, հավանաբար, ճիշտ են հին կապիտալիզմի վերաբերյալ, բայց այժմ, երբ առաջացան պատմական նոր հանգամանքներ, դրանք իբր թե ճիշտ չեն...

Այս առումով հիշենք, որ Հոկտեմբերյան հեղափոխության առաջին տարիներին սոցիալիզմի հակառակորդները շտապեցին հայտարարել, թե նրա հաղթանակն անօրինական է ու պատահական, համարյա հակասում է հասարակության զարգացման օրենքներին: Հետագայում, երբ սովետական իշխանության հաջողությունները համոզիչ կերպով ապացուցեցին, որ նրա ծնունդն ամենևին էլ «պատմության զիգզագը» չէ, որից հետո, երբ նոր հասարակարգը հաստատվեց Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրներում, մեր հակառակորդները, այսպես ասած, փոխեցին եղանակը: Այժմ նրանք հայտարարում են, որ այդ երևույթները հնարավոր են միայն հետամնաց երկրներում:

Այսօր, սոցիալիստական համագործակցության նվաճումների լույսի ներքո, ներառյալ նաև զարգացած կապիտալի երկրները, այդ «թեորիայի» պրոպագանդումը ևս դարձավ անհարմար: Վերստին փոխվեց եղանակը. այժմ մեր հակառակորդները պնդում են, որ դա բնականաբար կարող է լինել սոցիալիզմ կառուցող երկրներում, բայց աշխարհի մյուս շրջաններում, երբեք, որովհետև «նոր հանգամանքներ են առաջացել...»:





digitised by A.R.A.R.@

Այսպիսի պատճառաբանությունները ակներև վկայում են, որ բուրժուական գաղափարախոսությունը ռեալ փաստերի ճնշման տակ աստիճանաբար նահանջում է։ Սակայն, անդրադառնանք, այսպես կոչված, «նոր հանգամանքներին»։ Ինչի՞ մասին է խոսքը։

Այն երևույթների շարքում, որոնց հատկապես հաճախ ու հաճույքով են վկայակոչում բուրժուական գաղափարախոսները, գլխավոր տեղը գրավում է պետական մոնոպոլիստական կապիտալիզմը։ Հենց այն պատկերվում է որպես սոցիալիզմի երկընտրանք կամ, հակառակ դեպքում, ինչ-որ մի բան, կասկածի տակ դնելով նրա անհրաժեշտությունը։

Հիրավի, պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը բուրժուական հասարակության կյանքում ոչ քիչ նորություններ է մուծում։ Այդ նորն ամենից առաջ այն է, որ մոնոպոլիաների ուժերի միավորումը պետության ուժերի միասնական մեխանիզմին հատկապես այն դեպքերում, երբ նրան հաջողվում է իր նպատակների համար օգտագործել գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները, բազում նոր հնարավորություններ է ընձեռում կապիտալին առավել արդյունավետ շահագործելու աշխատավորությանը, մասամբ մեղմելու սոցիալական այն հակամարտությունները, որոնք սպառնում են կապիտալիստական հասարակարգի բուն գոյությանը։ Ահա այդ իսկ նոր հնարավորություններն էլ, ըստ երևույթին, հանդիսացան տենդոտ լավատեսության աղբյուրներ, որոնք համակեցին բուրժուական շատ գիտնականների ու ժուռնալիստների։ Այսպիսով, անհույս հիվանդը փորձելով հանգստացնող նոր դեղամիջոցներ, մխիթարվում է ապաքինվելու հույսով...

Ջո՞ւր հույսեր։ Որովհետև այսօրվա բուրժուական հասարակությանը որոշակի հնարավորություններ տալով, պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը միաժամանակ նրա գոյության քայքայման ականն է դնում, որը չի կարող չպայթել վաղը։

«Հազարավոր ձևերով,— գրել է Վ. Ի. Լենինը,— ավելի ու ավելի արագ առաջ գնացող և Մարքսի մահվանից հետո անցած կես դարի ընթացքում առանձնապես ակնառու՝ խոշոր արտադրության, կապիտալիստների կարտելների, սինդիկատների ու տրեստների աճի, այլև ֆինանսական կապիտալի չափերի ու հզորության հսկայական աճի մեջ արտահայտվող աշխատանքի հանրայնացումը,— ահա սոցիալիզմի անխուսափելի վրա հասնելու գլխավոր նյութական հիմքը» (Երկեր, հ. 21, էջ 76—77)։

Բայց ի՞նչ է պետական-մոնոպոլիստական կապիտալիզմն իրեն հատուկ ազգայնացմամբ, ծրագրավորմամբ և այլն, եթե ոչ արտադրության փաստական և նույնիսկ ձևական հանրայնացում։ Այսօր Արևմուտքի երկրներում արտադրության ծավալի 8—15 տոկոսը, շրջանառության ոլորտի նշանակալի մասը, պաշտոնապես պետությանն է պատկանում, իսկ ազգային համախառն արդյունքի 30—40 տոկոսն իրացնում են պետական հաստատությունները։ Մի՞թե դա վիթխարի առաջընթաց չէ սոցիալիզմի նյութական հիմքի նախապատրաստման գործում։

Այնուհետև, պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի բազայի վրա և նրան հատուկ գործող օրինաչափությունների հետևանքով ավելի է արագանում մասնավոր կապիտալիստական արտադրության համակենտրոնացումը։ Եվ իրոք, արդեն 60-ական թվականների սկզբներին 200 ընկերությունների ձեռնարկություններ թողարկում էին կապիտալիստական աշխարհի ողջ արդյունաբերության արտադրանքի համարյա 35 տոկոսը։



Հետևաբար, այդ ճանապարհով ևս արտադրության հանրայնացումը հրակոյական տեմպերով առաջ է շարժվում, նյութական նորանոր նախադրյալներ ստեղծելով սոցիալիստական հեղափոխության անխուսափելի հաղթանակի համար, վերստին հաստատելով Լենինի եզրակացությունը. «...պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը սոցիալիզմի նյութական լիակատար նախապատրաստումն է, նրա նախադուռն է, պատմական սանդուղքի այն աստիճանն է, որի (աստիճանի) ու սոցիալիզմ կոչվող աստիճանի միջև ոչ մի միջանկյալ աստիճան չկա» (Երկեր, հ. 25, էջ 460)։

Այսպիսով, արտադրությունն ավելի է հանրայնացվում։ Իսկ յուրացո՞ւմը։

Մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները տեսան հակասությունների հիմնական աղբյուրը, որոնք կապիտալիստական մասնավոր սեփականության օրոք հասարակությանն անհրաժեշտորեն մղում են դեպի սոցիալիզմ։ Հարց է առաջանում. կարո՞ղ է արդյոք այժմ կապիտալիստական աշխարհում կատարվող փոփոխությունները հանգեցնել մասնավոր սեփականության՝ կապիտալիստական հասարակարգի այդ հիմքի մեկնակետի վերացմանը։

Դեռևս կապիտալիզմի ամենամոլի և ոչ մի պաշտպան չի հանդգնել պնդել, որ այդ պլանում ինչ-որ հեղափոխական տեղաշարժեր են եղել։ Արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը եղել ու մնում է ժամանակակից կապիտալիստական հասարակության հիմքը, անկախ նրա քաղաքական կամ իրավաբանական ձևից։

Ճիշտ է, կան և այնպիսի կարծիքներ, որ զարգացած կապիտալիստական երկրներում, այսպես կոչված, «բանվորական արժետոմսերը» թեև ձևականորեն չեն վերացրել մասնավոր սեփականության սկզբունքները, բայց «նախկին պրոլետարիատի» նշանակալի մասը դարձել է սեփականատեր, որը փաստորեն փոխում է հասարակության կառուցվածքը և շահագործվողներ ու շահագործողներ հասկացությունն իբր կորցնում է իր նշանակությունը։

Իրոք, ԳՖՀ-ում, Ֆրանսիայում և մի քանի այլ երկրներում հազարավոր բանվորներ ձևականորեն դարձել են «իրենց» ձեռնարկությունների բաժնետերեր։ Սակայն, ինչպես ցույց տվեց պրակտիկան, ձեռք բերված արժետոմսերը բանվորներին ձեռնարկատերերի կամայականությանը ենթարկելու սոսկ լրացուցիչ միջոց են։ Բաժնետերերի մոտ պատրանք ստեղծվեց, թե նրանք իբր ունեն սեփականատիրոջ իրավունքներ, կարող են սահմանել արտադրության ծրագիրը, բաշխել շահույթը և այլն։ Իրականում դրանք զգալի չափով նյութական օգուտ չտվին։ Արևմտագերմանական «Հանդելսբլատ» լրագիրը զետեղել է մի նկար, որում բանվորները «Պաստառից էլ էժան...» մակագրությամբ պատին են փակցնում արժետոմսերը։

Գլխավորն այն է, որ արժետոմսեր ունենա՛լը որևէ չափով չփոխեց կապիտալի վարձու ստրուկների՝ շահագործվող բանվորների սոցիալական դրությունը, որովհետև այդ վիճակով է որոշվում նրանց փաստական տեղը կապիտալիստական արտադրասիստեմում։

«Բանվորական արժետոմսի» օպերացիայի ձախողման մասին համոզիչ վկայում է այն փաստը, երբ նույն մոնոպոլիաները, որոնք առաջինն իրենց մոտ կիրառեցին խաբուսիկ նորույթը, այժմ հրաժարվում են դրանից։ Այսպես պատահեց, օրինակ, Արևմտյան Գերմանիայում այդ գործի պիոներ «Պրեյսսագ ԱԳ» կոնցեռնի հետ։ Ժամանակին նա պրոպագանդիստական մեծ աղմկարարությամբ իր բանվորներին «դարձրեց» «բաժնետերեր», իսկ նույն տարվա



digitised by A.R.A.R.@

ամռանը դրանք սուսուփուս վերացվեցին: Շպրինգերյան «Դի վելտը» արձանագրեց՝ «Մեռան ժողովրդական բաժնետոմսերը»:

Ժամանակակից կապիտալիստական հասարակարգում ռեալ վիճակը բնութագրում են, իհարկե, ոչ թե մոնոպոլիաների պրոպագանդիստական տրյուկները, այլ այն պրոցեսներն ու երևույթները, որոնց առկայությունը խոստովանում են նույնիսկ կապիտալիզմի ամենամոլի կողմնակիցները: Խոսքը հետևյալի մասին է:

Շարունակվում է սեփականության համակենտրոնացումը մի բուռ կապիտալիստների ձեռքը, հարստությունը կուտակվում է խոշոր տրեստ-միլիարդատերերի սեյֆերում:

ԱՄՆ-ում տասը տարվա ընթացքում (1960—1970 թթ.) մշակող արդյունաբերության մեջ միլիարդատեր-կորպորացիաների թիվը 28-ից հասավ 102-ի, բայց միաժամանակ ինդուստրիայի զուտ շահույթների բաժինը 38-ից հասավ 53 տոկոսի: ԳՖՀ-ում միայն 1964—1971 թթ. 100 մլն մարկից ավելի կապիտալ ունեցող բաժնետիրական ընկերությունների թիվը 73-ից հասավ 109-ի (որը կազմում է այդպիսի ընկերությունների 4,7 տոկոսը), բայց նրանց բաժինը ողջ կապիտալում ավելացավ 54,3—64,7 տոկոսով: Նման օրինակներ կարելի է բերել կապիտալիստական յուրաքանչյուր երկրից: Հիմնական սեփականատերերի ոլորտը մնում է չափից ավելի նեղ, իսկ հասարակական հարստության բռնացմամբ ձեռք բերած նրանց բաժինն աճում է:

Հասարակության մի բևեռում աճող հարստությունն ուղեկցվում է բնակչության սոցիալական անապահով զանգվածների հարատևող աճով, իսկ շատ դեպքերում աղքատության ուղղակի սաստկացմամբ:

Բուրժուական գիտնականները բնութագրելով կապիտալիստական երկրներում աշխատավորության վիճակը, որպես կանոն, «մոռանում են» նկատել Լատինական Ամերիկայի տասնյակ պետություններին, էլ չենք խոսում արդեն Ասիայի և Աֆրիկայի մասին: Բայց եթե նույնիսկ սահմանափակվենք զարգացած կապիտալիզմի ոլորտով, կարելի է սոցիալական անապահովվածության բազմաթիվ օրինակներ բերել: Պաշտոնական տվյալներով, այժմ ԱՄՆ-ի բնակչության 5 տոկոսը, ըստ էության, լրիվ անգործներ են: Կապիտալիստական այս հարուստ երկրում 27,1 մլն մարդ կամ բնակչության 13,3 տոկոսը չքավոր է, այսինքն՝ մարդիկ, որոնց եկամուտները Վաշինգտոնի պաշտոնական սահմանված «չքավորության մակարդակից» էլ ցածր են: Հանրապետական սենատոր Դ. Բոգսի տվյալներով, 21 մլն ամերիկացիներ (բնակչության 10 տոկոսը) կարդալ չգիտեն: ԱՄՆ-ի ազգային բժշկական ասոցիացիայի նախկին նախագահ Ժ. Հոլմանի հաղորդման համաձայն, երկրի բնակչության համարյա մեկ չորրորդը՝ 45 մլն մարդ, որոնք բուժօգնության սուր կարիք ունեն, զուրկ են դրանից: Վերջապես, պրեզիդենտ Ռ. Նիքսոնի հայտարարության համաձայն, 24 մլն ամերիկացիներ (բնակչության մոտ 12 տոկոսը) ապրում են սահմանված նորմաներին չհամապատասխանող բնակարաններում:

Այս ամենը միայն ԱՄՆ-ին չեն վերաբերում: Նույնիսկ ամենամոտավոր հաշվումներով զարգացած կապիտալիզմի երկրներում յուրաքանչյուր հարյուր բանվորից ու ծառայողից երեքը մշտական աշխատանք չունեցողներ են, վեցը չունի բավարար կրթություն, ինն ապրում է մարդուն անվայել պայմաններում, այդքանն էլ՝ հիվանդանալիս բուժվելու հնարավորություն չունի: Այս հաշվումները վերաբերում են միայն բանվորներին ու ծառայողներին: Իսկ եթե այդ առումով մոտենանք աշխատավորության ոչ-պրոլետարական շերտերի բազ-



մաթիվ ներկայացուցիչների, թոշակառուների իրավիճակին, ապա պատկերը, անկասկած, ավելի մռայլ կլինի:

Այսօրվա կապիտալիստական հասարակության վիճակը, ինչպես երբեք, վառ ապացուցում է դեռևս Կոմունիստական կուսակցության մանիֆեստում ձևակերպված մարքսիզմի այն եզրակացությունը, որ գնալով ավելի լիակատար է դառնում այդ հասարակության հակոտնյա երկու դասակարգերի՝ բուրժուազիայի և պրոլետարիատի ակնհայտ պառակտումը:

Գոյություն ունեցող հաշվարկումների համաձայն, զարգացած կապիտալիստական երկրների ինքնագործ ողջ բնակչության թվում վարձու աշխատանքի բաժինը 1900—1969 թթ. 53,3-ից հասավ 79,5 տոկոսի (ընդ որում, գյուղատնտեսության մեջ այն կրճատվեց 26,3—21,7 տոկոսով, արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և կապի բնագավառներում աճեց 78,4—90,5, առևտրում և ծառայությունների ոլորտում՝ 71,5—84,9 տոկոսով):

Այն հարցին, թե վարձու աշխատանքի մարդկանց ո՞ր տոկոսն են կազմում պրոլետարները, դրա կոնկրետ վերլուծությունը տվել են եղբայրական կուսակցությունները: Սակայն փաստական, թվական արդյունքների վերլուծությունից անկախ, տվյալները ցույց են տալիս բանվոր դասակարգի անընդհատ աճը՝ միջին խավերի կրճատման հաշվին: Զարգանում է պրոլետարիատի կազմակերպվածությունն ու գիտակցականությունը: Դա վկայում է, որ պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը հանգեցնում է ո՛չ միայն նյութական կուտակման, այլև սոցիալ-քաղաքական նախադրյալներ է ստեղծում սոցիալիստական հեղափոխության համար:

Այսպիսով, չնայած աշխատանքի հանրայնացման մշտական աճին, ժամանակակից բուրժուական հասարակությունում յուրացումը մնում է մասնավոր, իսկ սոցիալական հակադրությունները առավել սուր բնույթ են կրում (չնայած հասարակական հարստության ավելացմանը):

Ժամանակակից կապիտալիզմի զարգացման ընթացքը ո՛չ միայն կոնֆլիկտային, այլ ճգնաժամային խոր բնույթ է կրում:

Չնայած նոր հնարավորություններին և խարդավանքներին, կապիտալիզմին չի հաջողվում խույս տալ տնտեսության զարգացման կրկնվող վայրէջքներից, վալյուտային կրախից և այլն: Պատահական չեն ԱՄՆ-ի և ԳՖՀ-ի, Ֆրանսիայի և Ճապոնիայի բազմաթիվ խոշոր տնտեսագետների, այսպես կոչված, գիտական աշխատությունները՝ նվիրված հետևյալ գրավարժությանը՝ չի՞ կրկնվի արդյոք 1929 թ. «սև ուրբաթը»:

Չկա խոշոր կապիտալիզմի որևէ երկիր, որ վերջին տարիներին չցնցվի սոցիալ-քաղաքական սուր ճգնաժամերից: Նույնիսկ «ամենաբարեհաջող» պետությունները, ինչպես Սկանդինավյան երկրներն են, դասակարգային դաժան մարտերի ասպարեզ են դարձել:

Կապիտալիզմին չհաջողվեց «ներդաշնակության» հասնել նաև նախկին գաղութային աշխարհի հարաբերություններում: Փաստերը վկայում են, որ «երրորդ աշխարհի» շահագործումը «զարգացած» երկրների կողմից շարունակ ուժեղանում է, նախկին մետրոպոլիաների ու նախկին գաղութների միջև եղած հակասությունները սրվում են: Վերջապես, իմպերիալիզմը մի շարք միջազգային սուր կոնֆլիկտների հանցագործն է և արդեն բազմիցս ժողովուրդներին համաշխարհային նոր պատերազմի եզրին է կանգնեցնում, ամեն անգամ առավել վտանգավոր դառնալով:

Այդպիսին է այն ճշմարտությունը, որ հարկադրված խոստովանում են



digitised by A.R.A.R.@

բուրժուազիայի քաղաքականության և գիտության առավել օբյեկտիվ ներկայացուցիչները։ Ուստի, զարմանալի չէ, որ ժամանակակից կապիտալիզմի նավապետները ստեղծված դրությունից դուրս գալու ելք են փնտրում, բացարձակ հարց են դնում դժվարությունների հաղթահարման մեթոդների մասին, որտեղ ամբողջ խորությամբ երևում է մասնավոր սեփականության աշխարհը։ Ըստ որում, խիստ հատկանշական է, թե նրանք այդպիսի ելք ու մեթոդներ ոտեղ և ինչպես են փնտրում։

Բուրժուական գաղափարախոսության առավել հայտնի և տարածված նորությունը «կոնվերգենցիայի թեորիան» է։ Այն գոյություն ունի տարբեր փոփոխակներով, որոնցից յուրաքանչյուրը դրսևորում է, վերջին հաշվով (անկախ հեղինակների սուբյեկտիվ մտադրություններից) իր հակասոցիալիստական ուղղությունը։ Բայց բնորոշ է, որ այդ թեորիայի պրոպագանդիստները արդեն հարց չեն դնում կապիտալիզմը պահպանել արդի վիճակով, բայց հայտարարում են, որ այն պետք է բարելավվի, փոփոխվի։ Կապիտալիզմի «կատարելագործման» համար առաջարկվում է օգտագործել (հասկանալի է, իհարկե, հանուն կապիտալի շահերի) սոցիալիզմի որոշ գծեր ու հատկություններ։ Իսկ հեռանկարում, կապիտալիզմը և սոցիալիզմը իբր թե պետք է միաձուլվեն և գոյանա մի «ներդաշնակ ամբողջություն»։

Չենք ուզում անդրադառնալ այդ «թեորիայի» գիտական սնանկությանը, այն ապացուցվում է կյանքում և հասարակական երկու հակադիր սիստեմների սահմանազատմամբ։ Ներկա դեպքում կարևոր և ակնհայտ փաստ է բուրժուական գաղափարախոսության բացահայտ և հրապարակային նահանջն իր դարավոր դիրքերից, նահանջ, որը ցուցադրում է սոցիալիզմի ուժն ու հնարավորությունները։

Բայց գործը չի սահմանափակվում թեորիայի ոլորտով։ Կապիտալիզմի փորձերը ստիպում են նրան երկարաձգել իր կործանումը և հարկադրում պրակտիկայում համակերպվել պատմական նոր իրադրությանը, մշակել համակերպման այնպիսի ստրատեգիա, որի մասին խոսվեց 1969 թ. միջազգային խորհրդակցությունում։ Եվ չափազանց հատկանշական է, որ կապիտալիզմի շատ «նոր» միջոցառումներ, ըստ էության, ոչ այլ ինչ են, եթե ոչ սոցիալիզմի այս կամ այն մեթոդների փոխառնում։

Բերենք միայն մեկ օրինակ։ Ավագ սերնդի մարդիկ թերևս հիշում են, թե ինչպես 20-ական թվականներին, երբ Սովետական Միությունը մշակեց իր առաջին հնգամյա պլանը, այդ իրադարձությանն արձագանքեց կապիտալիզմը։ Արձագանքը միահամուռ էր՝ հնգամյակը զառանցանք է, ոչ մի պլանավորում հնարավոր չէ։ Իսկ այսօ՞ր։ «Ծրագրավորում» կամ «պլանավորում» տերմինն ընդունվեց ո՛չ միայն բուրժուա-տեխնիկական գրականության մեջ, այլև պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի պրակտիկայում։ Հարցն այն է, թե գործնականում ի՞նչ է տալիս այդ ծրագրավորումը, որպիսի՞ անհաղթահարելի խոչընդոտներ է հարուցում նրա համար մասնավոր սեփականության տիրապետությունը։ Բայց փաստը մնում է փաստ. այն, ինչ համարվում էր դժոխքի ծնունդ, այսօր դրախտի ուղի է։

Այստեղ տեղին է մեջբերել Ջոն Քեննետ Հելբրայտի հետ ունեցած հարցազրույցից մի հատված։ Հազիվ թե հարկ լինի ներկայացնել այդ մարդուն, որը բավականաչափ հայտնի է։ Եվ ահա նրա հայտարարությունը. «Սոցիալիզմը ճիշտ այնպես, ինչպես ազգայնացումը, Միացյալ Նահանգներում «անհարգարժան են», բայց ես կարծում եմ, որ անհրաժեշտ է դրանց արդարաց-



ներ... օրինակ, շինարարական արդյունաբերությունը, կամ բժշկական օգնությունը, կամ հասարակական տրանսպորտը։ Միացյալ Նահանգները միակ երկիրն է աշխարհում, որը, օրինակ, երկաթուղային ճանապարհները թողել է մասնավոր սեփականատերերի ձեռքը, որի հետևանքով երկաթուղու սիստեմն այժմ անկում է ապրում, հատկապես ուղևորների փոխադրման ոլորտում։ Մեր տեսակետով, այդ ճյուղերը ոչ մի հնարավորություն չունեն լուծելու իրենց խնդիրները, եթե դրանց չաջակցի պետության ուժը»։

Շարքային ամերիկացիները, ֆրանսիացիները, ճապոնացիները, անգլիացիները հաճախ են եզրակացնում, որ կապիտալիզմը մեռնող սիստեմ է...

«Ամերիկացիները գնալով ավելի խոր են գիտակցում, որ սոցիալական սիստեմի թերությունները վերացնելու իրենց փորձերը ցանկալի արդյունք չեն տալիս»,— գրում է ամերիկյան գիտնական Ջեյ Ֆորեստերը։

Ահա մյուս օրինակը։ Այս տարվա սկզբներին Ֆրանսիայի հասարակական կարծիքն ուսումնասիրող ընկերությունը ուսումնասիրեց երկրում եղած աշխատանքային պայմանները։ Հարցվողների 45 տոկոսը (21 տարեկան և բարձր) համոզմունք է հայտնել ռեֆորմների անցկացման անհրաժեշտության մասին, չդիպչելով հասարակական կառուցվածքի գլխավոր հիմքերին։ Սակայն մյուս կեսը՝ 44 տոկոսը գտնում է, որ ռեֆորմներով ոչինչի չի կարելի հասնել։

Բայց ո՞ւր, ո՞ր ուղղությամբ գնալ։ Այս հարցի պատասխանը տալիս է սոցիալիզմի օրինակը։ Սոցիալիստական աշխարհի սահմաններից դուրս բորբոքվող վեճերում քննարկվում է սոցիալիզմի փորձը, կշռադատվում այն և մանրակրկիտ ուսումնասիրվում։ Իհարկե, լիակատար, ինչպես բանիմաց դատողությունների համար միշտ բավարար նյութեր չկան։ Անշուշտ, սոցիալիզմին թշնամի պրոպագանդան ամեն կերպ ձգտում է սրբագրել այդ դատողությունը։ Բայց և այնպես իսկությունը, ճշմարտությունը ճանապարհ են հարթում դեպի մարդկանց սիրտն ու միտքը։

Իսկ ճշմարտությունն այն է, որ թեև սոցիալիզմը տակավին չի լուծել իր իսկ առաջադրած բոլոր խնդիրները, չնայած նրա ճանապարհին եղել են (կան և կլինեն) ոչ քիչ դժվարություններ (չէ՛ որ դա պատմության մեջ կատարվում է առաջին անգամ), բայց և այնպես նա կարողացավ արդեն անել այն, ինչ որ չկարողացավ կապիտալիզմը։

Սովետական Միությունը՝ սոցիալիզմի առաջին երկիրը նշեց իր միութենական պետության հիմնադրման կես դարը։ Սովետական մարդիկ ամփոփելով անցած ուղու արդյունքները, օրինական հպարտությամբ հավաստում են, որ իրենց երկրում՝

— լիակատար ոչնչացել է դասակարգային և ազգային ճնշումը.

— վերջնականապես վերացել է գործազրկությունը, սովը, աղքատությունը, անգրագիտությունը, անվստահությունը վաղվա օրվա նկատմամբ։

— յուրաքանչյուր քաղաքացի ունի աշխատանքի, հանգստի, կրթության, առողջապահության պահպանման և զրկանքից զերծ ծերության իրավունք.

— անընդհատ և անշեղորեն աճում է կյանքի նյութական մակարդակը, ազատորեն են մարդիկ տիրապետում կուլտուրայի գանձերին, որոնք անհասանելի են բուրժուական որևէ երկրում.

— յուրաքանչյուր քաղաքացի լիակատար իրավունք ունի մասնակցելու հիմնարկ-ձեռնարկությունների, շրջանների, մարզերի, հանրապետությունների, ինչպես և ողջ երկրի կյանքին վերաբերող բոլոր հարցերի քննարկմանը.



digitised by A.R.A.R.@

— կիրառվում է ամբողջ աշխարհում խաղաղության ամրապնդման քաղաքականությունը։

Իհարկե, հայտնի է, որ սովետական ժողովրդի շատ նվաճումներ վիճարկվում են և բուրժուական գաղափարախոսությունը դրանք կասկածի տակ է դնում։ Իսկ այսօր ավելի քիչ բաներ են վիճարկվում, քան երեկ, իսկ շատ բան անվերապահորեն ընդունում են նույնիսկ թշնամիները։

Հայտնի է նաև, որ սոցիալիզմի քննադատները ձգտում են նսեմացնել նրա նվաճումները, վկայակոչելով սոցիալիստական այս կամ այն երկրի սխալները։ Այո՛, սխալներ եղել են։ Բայց կարևորն ամենից առաջ այն է, որ դրանք շտկվել և շտկվում են տեղում, հենց կառավարող կուսակցությունների կողմից, և այնպես, որպեսզի կանխվեն դրանց կրկնման հնարավորությունները։

...Ընդհանրապես ուսումնասիրելով ժամանակակից հակասոցիալիստական գրականությունը, եզրակացնում ես, որ արտաքուստ նրա փաստարկումների առատությունն իրականում դրանց չգոյության արդյունքն է։ Իհարկե, կարելի է և նույնիսկ դժվար չէ նյութեր գտնել կոնկրետ թերությունների կոնկրետ քննադատության համար, դրանք կան սոցիալիստական այս կամ այն երկրում։ Ի դեպ, քննադատության նման նյութ առատորեն տալիս է այդ երկրների մամուլը, որը խոր քննադատական է, բայց ստեղծագործական։

Այլ խոսքով ասած, կարելի է գտնել բացասական նյութեր, որոնք վերաբերում են սոցիալիստական հասարակական սիստեմի հիմնարկությունների այս կամ այն օղակների գործառնությանը։ Բայց չկան նյութեր, որոնք կարողանային հերքել նախորդ բոլոր ֆորմացիաների նկատմամբ նոր հասարակության ունեցած գերազանցությունը, ռեալ գոյություն ունեցող սոցիալիզմի գերազանցությունն այսօրվա կապիտալիզմի նկատմամբ։ Սոցիալիզմը տակավին շատ բաներում պետք է ապրի իր լինելության փուլը, որը դեռևս պատված է «փայտամածով»— դա մի հասարակարգ է, որն իր առջև խնդիր է դնում բացահայտել և օգտագործել իր վիթխարի հնարավորությունները։

Ամեն օր այդ խնդրի լուծման ճանապարհին առավել աճում է սոցիալիզմի, նրա դրական օրինակի ձգողական ուժը։ Միաժամանակ կաճի և բացասական օրինակի ուժը (եթե կարելի է այդպես արտահայտվել), կապիտալիստական աշխարհից վանվող ուժը։

Այս ամենը վկայում է, թե որքան էլ զանազան ու բարդ լինեն ճանապարհները, որոնք ներկայումս ոչ-սոցիալիստական յուրաքանչյուր երկրի տանում են դեպի սոցիալիզմ, նրանց հանգեցնում է այդ իսկ և ոչ թե այլ հասարակարգի։

Սակայն սխալ կլիներ այդ եզրակացության մեջ տեսնել ճակատագրական, նախախնամական ինչ-որ մի բան։ Այո՛, սոցիալիզմի նախադրյալները հասունանում են ամենուր։ Այո՛, մեծանում է ողջ մարդկության սոցիալիզմին անցնելու անհրաժեշտությունը, պահանջը։ Բայց այն չի կարող տեղի ունենալ ինքնին, ավտոմատիկորեն։ Որովհետև հին աշխարհի ուժերը կանեն ամեն ինչ, որպեսզի պահպանեն իրենց դիրքերը, կասեցնեն և նույնիսկ ետ մղեն մարդկության զարգացումը։ Մանավանդ մեծանում է բանվորական շարժման, կոմունիստների պատասխանատվությունը։

Պատմությունը նրանց առջև մեծագույն խնդիր է դրել՝ օգնել հասարակական զարգացման օրենքների իրագործմանը, այն կենսագործել ռեալ, կենդանի իրականության մեջ։ Եվ այդ միսիան կոմունիստական շարժումը կիրագործի։

«Проблемы мира и социализма», 1972, № 12.

# ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Ս. Ս. ԱՄԻՐՅԱՆ

Զարգացած սոցիալիզմի փուլում սովետական հասարակության սոցիալական կառուցվածքի հիմնական փոփոխություններից մեկը բանվոր դասակարգի համակողմանի նշանակալից աճն է, որը, ինչպես նշեց ՍՄԿԿ XXIV համագումարը, կարևորագույն պայման է նրա առաջատար դերի իրականացման համար։ Կոմունիստական շինարարության արդի ծավալուն ու խոր պրոցեսում, որն ընթանում է գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում, առաջատար ուժ չէր կարող լինել 30—40-ական, անգամ 50-ական թվականների բանվոր դասակարգը։ «Ժամանակակից սովետական բանվոր դասակարգը, — արհմիությունների 15-րդ համագումարում նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը,— տարբերվում է ո՛չ միայն նախահեղափոխական պրոլետարիատից, այլև 30-ական թվականների բանվոր դասակարգից, երբ ձեռք բերվեց սոցիալիզմի հաղթանակը ՍՍՀՄ-ում»։

Սովետական բանվոր դասակարգի սոցիալական զարգացումը, որը հենվում է օբյեկտիվ գործոնների՝ տնտեսական ու գիտատեխնիկական առաջընթացի և սոցիալիստական հարաբերությունների կատարելագործման վրա, չի ընթանում տարերայնորեն, այլ կազմակերպվում ու ղեկավարվում է կոմունիստական կուսակցության կողմից։ Պատմական տվյալ պրոցեսում նկատելի են երկու հիմնական տենդենցներ, որոնք դրսևորվում են բանվոր դասակարգի քանակական ու որակական աճի մեջ։

Երկրում սոցիալիզմի հաղթանակից հետո սովետական բանվոր դասակարգն աճեց քանակապես. ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության ոլորտում 1940 թ. զբաղված էին 22,8 միլիոն բանվոր, իսկ երեք տասնամյակ անց, 1970 թ.՝ 62 միլիոն։

Բանվոր դասակարգի քանակական աճը մենք դիտեցինք նեղ կտրվածքով, այսինքն՝ հիմք ընդունեցինք տնտեսության մեջ աշխատող բանվորների թիվը։ Տվյալ սոցիալական երևույթը մեկնաբանվում է և լայն կտրվածքով, ըստ որի, բանվոր դասակարգի կազմի մեջ մտցվում են նաև բանվորական ընտանիքների ոչ աշխատունակ անդամները։ Սովորաբար երկրորդ կտրվածքով է վիճակագրությունը որոշում բնակչության սոցիալ-դասակարգային կազմը և այնտեղ յուրաքանչյուր հասարակական խմբի տեսակարար կշիռը։ Այս առումով, 1939 թ. մարդահամարի ժամանակ, կոլտնտեսային գյուղացիությունն ուներ



digitised by A.R.A.R.@

ամենամեծ տեսակարար կշիռը (47,2 տոկոս), իսկ բանվոր դասակարգը կազմում էր երկրի բնակչության 32,5 տոկոսը: Երկու տասնամյակում պատկերը լիովին փոխվեց. 1959 թվականին բնակչության մեջ բանվոր դասակարգի տեսակարար կշիռը հասավ 48,2 տոկոսի (100 մլն 763 հազ.), գյուղացիությանն իջավ մինչև 31,4 տոկոս (65 մլն 549 հազ.): Այդ ժամանակամիջոցում աճել էր նաև ծառայողների թիվը, հասնելով մոտ 42 միլիոնի (20,1 տոկոսի)[1]:

Սոցիալական փոփոխությունների այս տենդենցն ավելի խորացավ 60-ական թվականներին, զարգացած սոցիալիզմի փուլում. երկրի բնակչության մեջ բանվոր դասակարգի տեսակարար կշիռը 1970 թ. կազմեց 55 տոկոս (132 մլն 935 հազ.), 20 տոկոսը գյուղացիությունն էր (48 մլն 340 հազ.), իսկ 25 տոկոսը ծառայողները (50 մլն 425 հազ.)[2]:

Տեմպերի չնչին տարբերությամբ, բանվոր դասակարգը քանակապես աճեց բոլոր հանրապետություններում, երկրի գրեթե բոլոր շրջաններում: 30-ական թվականներին, երբ հաղթանակեց սոցիալիզմը, սովետական բանվոր դասակարգի ազգային ջոկատները շատ հանրապետություններում նոր էին ձևավորվել: Եվ, բնականաբար, նրանց տեսակարար կշիռը բնակչության մեջ անհամեմատ ցածր էր: Այսպես, 1939 թվականին Սովետական Հայաստանի բանվոր դասակարգը կազմում էր նրա բնակչության 17,6 տոկոսը (միութենական միջին ցուցանիշը 32,5 տոկոս էր): Հետպատերազմյան ժամանակաշրջանում, արդյունաբերության բուռն զարգացման շնորհիվ, արագորեն աճեց հանրապետության բանվոր դասակարգը: Բավական է նշել, որ երկու տասնամյակում (1950—1970 թթ.) ավելի քան 3,5 անգամ ավելացավ արդյունաբերական բանվորների թիվը (62 հազարից հասնելով 218 հազարի): Այդ նույն ժամանակամիջոցում Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ բանվոր-ծառայողների թիվը 237 հազարից հասավ 837 հազարի[3]: Ի դեպ, այստեղ բանվոր դասակարգի արագ աճին նպաստել են նաև արդյունաբերության առավել աշխատատար ճյուղերի զարգացումը և գյուղատնտեսության մեջ պետական սեկտորի խոշոր չափով ընդլայնումը: 1950 թ. հանրապետության գյուղատնտեսության ոլորտում աշխատում էին ընդամենը 6743 բանվոր, իսկ 1968 թ.՝ մոտ 80 հազար[4]:

* * *

Քանակական մեծ աճին զուգընթաց սովետական բանվոր դասակարգը կրել է նշանակալից որակական փոփոխություններ, որոնք ավելի խորացան կոմունիստական շինարարության արդի փուլում: Ընդ որում, այդ փոփոխությունները հիմնականում կատարվել են բանվոր դասակարգի սոցիալիստական բնույթի հետագա զարգացման և նրա կուլտուր-տեխնիկական մակարդակի ու պրոֆեսիոնալ որակավորման բարձրացման ոլորտում:

30-ական թվականներին, երկրում սոցիալիզմի հաղթանակին զուգընթաց, ավարտվեց սովետական բանվոր դասակարգի վերափոխման պատմական

[1] Տե՛ս Итоги всесоюзной переписи населения 1959 г., СССР, М., 1962, стр. 90—92.

[2] Տե՛ս «Народное хозяйство СССР в 1970 году», стат. сборник, М., 1971, стр. 7, 22.

[3] Տե՛ս Труд в Арм. ССР, стат. Сборник, Ереван, 1970, стр. 49, 18; «Народное хозяйство Арм. ССР в 1970 г.», стр. 31, 15.

[4] Տե՛ս նույն տեղը, էջ 64:



պրոցեսը: Անցած երեք ու կես տասնամյակում բանվոր դասակարգի մոտ ամ-
րապնդվել ու ավելի են խորացել սոցիալիստական գծերը՝ հետևողական կոլեկ-
տիվիզմը, սոցիալիստական հայրենասիրությունը, կոմունիստական ապագայի
նկատմամբ աննկուն հավատը, պրոլետարական-սոցիալիստական ինտերնա-
ցիոնալիզմը և այլն:
Արդի ժամանակաշրջանում բանվոր դասակարգի սոցիալական զարգաց-
ման համար ստեղծվել են առավել նպաստավոր պայմաններ: Ինչպես հայտնի
է, բանվոր դասակարգը քանակապես աճում է սեփական վերարտադրության,
գյուղացիության և ծառայողների հաշվին: Նրա սոցիալական զարգացման պրո-
ցեսում, որպես կանոն, միշտ բարդություններ են առաջ բերել դրսից, մյուս
հասարակական խմբերից համալրվածները, որոնց վերադաստիարակումը 30—
40-ական թվականներին ավելի մեծ ջանքեր էր պահանջում, քան այսօր: Աշ-
խատավորների հասարակական բոլոր խմբերի սոցիալիստական բնույթի զար-
գացումն ու խորացումը, բանվոր դասակարգի հետ նրանց մերձեցումը, քաղա-
քի և գյուղի էական տարբերությունների արագ հաղթահարումն առավել նպաս-
տավոր պայմաններ են ստեղծում բանվորության նոր հերթափոխի դաստիա-
րակման և ինտեգրացման խնդրի լուծման համար: Այսօր գյուղից քաղաք
եկող սերունդն իր սոցիալական էությամբ, կրթական ու կուլտուր-տեխնիկա-
կան մակարդակով շատ մոտ է կանգնած բանվոր դասակարգին և քիչ ժամա-
նակ է պահանջվում կադրային բանվորության շարքերը նրա անցման համար:
Եթե 1939 թ. գյուղական հազար բնակչից միայն 52-ն ուներ յոթնամյակից ոչ
պակաս կրթություն, ապա 1970 թ. արդեն 500-ն ուներ բարձրագույն և միջնա-
կարգ (լրիվ և թերի) կրթություն[1]: Նկատենք, որ այսօր գյուղից քաղաք է տե-
ղափոխվում հիմնականում երիտասարդությունը (16—29 տարեկան), որը
յոթնամյակից ցածր կրթություն չի ունենում:
Առանձին բարդություն չի ստեղծում նաև սոցիալիստական սեփականու-
թյան ձևերի հետ անմիջական կապվածության, այսինքն՝ աշխատավորի դա-
սակարգային պատկանելության հիմքի փոփոխումը: Որոշակի դեր է խաղում
արտադրամիջոցների նկատմամբ բանվորների և գյուղացիների վերաբերմուն-
քը. երկուսն էլ կապված են միատիպ հանրային սեփականության հետ: Ժողո-
վրդական տնտեսության երկու սեկտորներում արտադրության և բաշխման
կազմակերպման սկզբունքներն ընդհանուր են և այլն: Եվ վերջապես, սոցիա-
լիստական սեփականության երկու ձևերի մերձեցման պրոցեսը նպաստում է
գյուղացիության շրջանում համաժողովրդական սեփականության նկատմամբ
նրա հակումների զարգացմանը: Անշուշտ, բանվորների և գյուղացիների միջև
պահպանվող տարբերությունները մի շարք գծերով դեռևս իրենց զգացնել են
տալիս կոլտնտեսականների սոցիալական դրության փոփոխման ժամանակ,
բայց դրանք արդի փուլում առանձին բարդություններ չեն ստեղծում բանվոր
դասակարգի սոցիալական զարգացման պրոցեսում:
Բանվոր դասակարգի շարքերի համալրման մյուս աղբյուրը ինտելիգեն-
ցիան ու ծառայողներն են, որոնք գերազանցապես կապված են համաժողո-
վրդական սեփականության հետ և նրանց ու բանվորների միջև արտադրա-
միջոցների նկատմամբ վերաբերմունքի հարցում տարբերություն չկա: Ինտե-
լիգենցիայի մի մասն էլ ծագել է բանվոր դասակարգից և նրա հետ կապող
հարազատ գծեր ունի:

[1] Տե՛ս «Народное хозяйство СССР в 1970 году», стр. 25.



digitised by A.R.A.R.@

Սովետական բանվոր դասակարգի սոցիալական աճի հիմքը սոցիալիստական արտադրաեղանակի հետագա զարգացումն է։ Այդ տեսակետից հասուն սոցիալիզմի արդի փուլը, ուր առավել լրիվ են դրսևորվում նոր հասարակարգի սկզբունքներն ու գծերը, նպաստավոր պայմաններ է ստեղծել բանվոր դասակարգի սոցիալական զարգացման համար։ Նրա առավել ինտերնացիոնալ բնույթը հատկապես արտահայտվում է հանրապետական ջոկատների կազմի բազմազգ դառնալու պրոցեսում։ Կոմունիզմի կառուցման համար նրանց համատեղ պայքարում, փոխադարձ օգնության ու խորացող համագործակցության պայմաններում ամրապնդվում է սովետական բանվոր դասակարգի ինտերնացիոնալ միասնությունը, որի վրա է խարսխվում մարդկանց նոր պատմական հանրությունը՝ սովետական ժողովուրդը։ Սովետական բանվոր դասակարգի ինտերնացիոնալիզմի խորացմանը նպաստում են նաև համաշխարհային հեղափոխական պրոցեսում նրա առաջատար դերի մեծացումը, սոցիալիստական երկրների ամրապնդվող համագործակցությունը, նրանց ձևավորվող ինտեգրացիան՝ հասարակական կյանքի տարբեր բնագավառներում։

* * *

Սովետական բանվոր դասակարգի սոցիալիստական բնույթի զարգացումն ու խորացումը ուղեկցվում է նրա կուլտուր-տեխնիկական մակարդակի և պրոֆեսիոնալ-որակավորման բարձրացմամբ։ Ավելին, սոցիալիզմի հաղթանակից հետո բանվոր դասակարգի առաջընթացն այդ բնագավառում առավել մեծ էր. դրա հիմքը երկու կարևոր գործոններ են՝ նրա կրթական մակարդակի բարձրացումը և տեխնիկական առաջընթացի արագացումը։

Մինչև սոցիալիզմի հաղթանակը վերացվեց աշխատավորների մասսայական անգրագիտությունը ու արդեն 1939 թվականի մարդահամարի տվյալներով հազար բանվորից յոթնամյակից ոչ պակաս կրթություն ուներ 82-ը։ Բայց սա դեռևս կրթական ցածր մակարդակ էր, որը չէր համապատասխանում սոցիալիստական դասակարգի, և՛ նոր, կոմունիստական հասարակարգի կառուցման պահանջներին։ Երկու տասնամյակ անց, 1959 թվականին, յոթնամյակից ոչ պակաս կրթություն ունեցող բանվորների թիվը 8,2 տոկոսից հասավ 38,6 տոկոսի[1]։ Սա արդեն ծավալվող գիտա-տեխնիկական հեղափոխության պայմաններում և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պայքարում սովետական բանվոր դասակարգի հաջող գործունեության որոշակի հիմք էր, որն ավելի ամրապնդվեց ու ընդլայնվեց 60-ական թվականներին։ 1970 թ. երկրի բանվորների կեսից ավելին (55 տոկոսը) ուներ բարձրագույն ու միջնակարգ կրթություն[2]։ Նկատենք, որ արդյունաբերական բանվորների կրթական մակարդակն ավելի արագ է բարձրացել։ 1959 թ. յոթնամյակից ոչ պակաս կրթություն ուներ նրանց 45,1 տոկոսը, իսկ 1970-ին՝ 60 տոկոսից ավելին։

Ներկայումս, երբ երկրի արտադրաուժերը որակական նոր ու բարձր աստիճանի վրա են և լայնորեն ծավալվում է գիտատեխնիկական հեղափոխությունը, միջնակարգ կրթությունը դարձել է որակյալ բանվորական կադրերի պատրաստման անհրաժեշտ պայման, իսկ միջնակարգ դպրոցը՝ բանվոր դասակարգի շարքերի համալրման հիմնական աղբյուրներից մեկը։ 1971 թ. ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի անցան միջնակարգ դպրոցի 18 հազար շրջանավարտ, որոնց մեծ մասը ընտրեց բանվորի պրոֆեսիան։

---

1 Տե՛ս Итоги всесоюзной переписи населения 1959 г., СССР, стр. 116.
2 Տե՛ս «ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը», էջ 96։



Բանվոր դասակարգի ընդհանուր կրթական մակարդակը արագորեն բարձրանում է հանրակրթական միջնակարգ, ինչպես և բանգյուղերիտասարդության դպրոցների միջոցով։ Վերջիններիս թիվը երկրում 1970/71 ուսումնական տարում 15.731 էր, ուր սովորողներինը՝ 1950 թվականի համեմատությամբ ավելացել է 2,7 անգամ[1]։ Արտադրաուժերի զարգացման արդի փուլում որակյալ բանվորի համար կրթական անհրաժեշտ մակարդակը, առնվազն միջնակարգի չափով, մեր օրերում, փաստորեն, դարձել է նրա սոցիալական ու արտադրական ֆունկցիայի հաջող կատարման, պրոֆեսիոնալ որակավորման և հասարակական ակտիվության բարձրացման կարևոր պայման։ Կուսակցության XXIV համագումարը նշեց, որ այժմ ութամյակն ավարտող աշակերտների 80 տոկոսն ստանում է լրիվ միջնակարգ կրթություն[2]։

Այսպիսով, սոցիալիզմի հաղթանակից հետո մեծ չափով բարձրացավ սովետական բանվոր դասակարգի ընդհանուր կրթական մակարդակը, որը դարձավ նրա կուլտուր-տեխնիկական մակարդակի արագ բարձրացման և պրոֆեսիոնալ-որակական կառուցվածքում տեղի ունեցած խոշոր տեղաշարժերի կարևոր պայմաններից մեկը։

Բանվոր դասակարգի պրոֆեսիոնալ-որակական կառուցվածքի բարելավման պահանջը բխում է գիտատեխնիկական առաջընթացով պայմանավորված հասարակական արտադրության և, ամենից առաջ, արդյունաբերության կառուցվածքում տեղի ունեցող փոփոխություններով (նոր նյութերի, տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատավորում, կոմպլեքսային մեքենայացում ու ավտոմատացում և այլն)։ Հարցի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ հետպատերազմյան ժամանակաշրջանում, հատկապես վերջին տասնամյակում, սովետական բանվոր դասակարգի որակական կառուցվածքի ամենախոշոր փոփոխություններից մեկը ձեռքի ծանր ու ոչ որակյալ աշխատանքի և դրանով զբաղված բանվորների թվի աստիճանական ու արագ կրճատումն է։ 1959 թվականի մարդահամարի ժամանակ դեռևս շատ մեծ էր այդ կատեգորիայի բանվորների թիվը. երկրի արդյունաբերության մեջ ձեռքի աշխատանք էին կատարում բանվորների 47 տոկոսը[3], որն արագորեն նվազեց վերջին տասնամյակում։ Կուսակցության XXIV համագումարն անդրադարձավ ձեռքի աշխատանքի վերացման խնդրին, որի լուծմամբ մոտ ապագայում կանհետանա ոչ որակյալ բանվորների խումբը։

Բանվոր դասակարգի որակական կառուցվածքի փոփոխությունների մյուս հիմնական տենդենցը, որը գնալով ավելի է ուժեղանում, մեքենայական որակյալ աշխատանքով զբաղված բանվորների խմբի արագ աճն է։ 1925 թվականին ՍՍՀՄ արդյունաբերության մեջ որակյալ բանվորները կազմում էին 18,5, իսկ 60-ական թվականների սկզբին՝ 64,6 տոկոս[4]։ Վերջին տասնամյակում բանվորների որակի բարելավման այդ տենդենցն ավելի խորացավ։

Տեխնիկական առաջընթացի ներգործությամբ էական փոփոխություններ են կատարվել սովետական բանվոր դասակարգի պրոֆեսիոնալ կառուցվածքում։ Անհետանում են ձեռքի ծանր ֆիզիկական աշխատանքի հետ կապված հին պրոֆեսիաները, արտադրության մեքենայացմամբ ու ավտոմատացմամբ

---

1 Հաշվված է ըստ «Народное хозяйство СССР в 1970 г.» վիճակագրական ժողովածուի նյութերի, էջ 629։
2 Տե՛ս «ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը», էջ 113։
3 Տե՛ս Вестник статистики, 1962 г., № 6, стр. 66.
4 Տե՛ս «Экономическая газета», 23 октября, 1961 г.



digitised by A.R.A.R.@

կատարվող փոփոխություններին զուգընթաց առաջ են գալիս նորերը։ Բանվոր դասակարգի պրոֆեսիոնալ կառուցվածքի փոփոխությունները դիտենք Հայկական ՍՍՀ օրինակով. մեկ տասնամյակում (1959—1969 թթ.) հանրապետության արդյունաբերության տեխնիկական առաջընթացի շնորհիվ արագորեն մեծացել է մի շարք պրոֆեսիաների բանվորների թիվը։ Այսպես, ապարատավարների, գազաեռակցողների, էլեկտրազոդողների, բուլդոզերավարների, ավտոամբարձիչավարների, ավտոմատներ և հաստոցներ կարգավորողների թիվը նշված ժամանակամիջոցում ավելացել է 3—4 անգամ, լաբորանտ և հսկող-խոտանող բանվորներինը, փականագործներինը՝ 2,5, վերելակների մեքենավարներինը, մեքենաշինության ոլորտի հավաքող բանվորներինը՝ մոտ 3, վարորդներինը՝ 4,5 անգամ և այլն[1]։ Նշանակալից փոփոխություններ են կատարվել շինարարության բանվորների պրոֆեսիոնալ կազմում։ Առավել մասսայական են դարձել մեքենավարների ու մոտորիստների պրոֆեսիաները, այդ մարզում աշխատող բանվորների թիվը հիշյալ տասնամյակում ավելացել է մոտ 3 անգամ[2]։

Հասարակական արտադրության գրեթե բոլոր ճյուղերում ստեղծվել են նոր պրոֆեսիաներ, մեծացել է հիմնական պրոֆեսիաների բանվորների թիվը։ Այսպես, 1969 թ. Հայկական ՍՍՀ մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերության մոտ 80 պրոֆեսիայի 65 հազար բանվորների 47 տոկոսը որակյալ աշխատանքի հինգ պրոֆեսիայի բանվորներ էին (հավաքողներ, հսկողներ, փականագործներ, փաթաթողներ, հաստոցի բանվորներ՝ խառատներ, ֆրեզերովշիկներ և այլն)[3]։ Երևան է եկել բարդ մեքենաներն ու հաստոցները, ավտոմատ սարքերն ու ագրեգատները կառավարող, վերանորոգող ու կարգավորող բանվորների խումբ, որն արագ ընդլայնվում է։ Պետք է նշել, որ օբյեկտիվ անհրաժեշտությունից, արտադրաուժերի զարգացման պահանջից բխող սովետական բանվոր դասակարգի պրոֆեսիոնալ-որակական կառուցվածքի փոփոխությունները ինքնին չեն կատարվում։ Հասարակական արտադրության կառուցվածքի տեղաշարժերին բանվորական ուժը համապատասխանեցնելու և ավելի կատարելագործելու նպատակով պետությունը կազմակերպում և իրականացնում է բանվորների ուսուցման, նրանց որակավորման բարձրացման միջոցառումների մի ամբողջ համակարգ։ Ընդ որում, դա կատարվում է ինչպես անմիջական արտադրության պրոցեսում, այնպես էլ պրոֆտեխնիկական կրթության միջոցով։ Բանվոր դասակարգի սոցիալական զարգացման պրոցեսում, հիրավի, հսկայական դեր է խաղում պրոֆտեխնիկական կրթության սիստեմը, որը 1941—1970 թթ. տվել է 23 միլիոն որակյալ բանվորներ։ Այս տիպի կրթական հաստատությունների թիվը 1971 թվականին հասավ 5351-ի, մինչդեռ 1951-ին այն 2593 էր։ Եթե պրոֆտեխնիկական ուսումնարաններն ու դպրոցները 1960 թվականին պատրաստել են 741 հազար բանվորական կադրեր, ապա 1970 թվականին՝ մեկ միլիոն 638 հազար[4]։ Ընդ որում, նրանց 80 տոկոսը սովորել են ցերեկային ուսումնարաններում։

Հասարակական արտադրության զարգացման նոր փուլը հարուցեց պրոֆտեխնիկական կրթության ոչ միայն արագ ընդլայնման, այլև վերակառուցման ու կատարելագործման պահանջ, որն իր արտացոլումը գտավ որակյալ

[1] Տե՛ս Труд в Арм. ССР, стр. 97, 98.
[2] Տե՛ս նույն տեղը, էջ 8։
[3] Նույն տեղը, էջ 100, 101, 102։
[4] Տե՛ս «Народное хозяйство СССР в 1970 г.», стр. 527.



բանվորական կադրերի պատրաստման վերաբերյալ կուսակցության ու կառավարության բազմաթիվ որոշումներում։ Միայն վերջին 3 տարում կուսակցության Կենտկոմն ու ՍՍՀՄ Մինիստրների սովետը պրոֆտեխնիկական կրթության կատարելագործման վերաբերյալ ընդունեցին երկու մեծ որոշում (1969 թվականի ապրիլին և 1972 թվականի հունիսին)։

Ինչպես արդեն նշել ենք, 60-ական թվականների վերջերին ակնհայտ դարձավ, որ բարդ պրոֆեսիաների և, ընդհանրապես, բարձրորակ բանվորների պատրաստման համար միջնակարգ կրթությունը խիստ անհրաժեշտ պայման է։ Հաշվումները ցույց են տվել, որ 1968 թ. սև մետալուրգիայի ոլորտի մասնագիտությունների 90 տոկոսի և մեքենաշինության 80 տոկոսի համար պահանջվում էր միջնակարգ հանրակրթական պատրաստություն ունեցող բանվորներ։

Գիտատեխնիկական հեղափոխության արդի պայմաններում պրոֆեսիոնալ-տեխնիկական գիտելիքների հետ մեկտեղ անընդհատ ընդլայնվում է բանվորների գիտական գիտելիքների կիրառման բնագավառը։ Հատկապես մեծանում է մաթեմատիկայի, ֆիզիկայի, քիմիայի, կիբեռնետիկայի, բիոլոգիայի նշանակությունը, որոնցից բանվորն անհրաժեշտ գիտելիքների պաշար կարող է ձեռք բերել միայն լրիվ միջնակարգ կրթություն ստանալիս։ Մինչև վերջերս պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատությունների ելակետային բազան ութամյա հանրակրթական պատրաստությունն էր։ Իսկ միջնակարգ հանրակրթական դպրոցը շրջանավարտներին պրոֆեսիոնալ պատրաստություն չէր տալիս։ Եվ ահա, կյանքի պահանջով, կուսակցության ու կառավարության որոշմամբ 1969 թվականից ստեղծվեցին նոր տիպի պրոֆտեխնիկական ուսումնարաններ, որտեղ որակյալ բանվորների պատրաստումը զուգակցվում է միջնակարգ կրթություն ստանալու հետ։

ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց, որ «Ընդհանուր միջնակարգ կրթության իրագործման առավել հեռանկարային ուղիներից մեկը մենք համարում ենք (հանրակրթական դպրոցի առաջատար դերի պահպանմամբ հանդերձ) միջնակարգ կրթություն տվող պրոֆտեխնիկական ուսումնարանների հետագա զարգացումը»[1]։ Ինչպես վկայում է այդ տիպի պրոֆտեխնիկական ուսումնարանների առաջին փորձը, սա արդի գիտատեխնիկական առաջընթացի պահանջներին համապատասխան որակյալ բանվորական կադրերի պատրաստման, սովետական բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման ամենահեռանկարային և խոստումնալից ուղին է։

Սովետական բանվոր դասակարգի պրոֆեսիոնալ որակավորումն ու նրա կուլտուր-տեխնիկական մակարդակը մեծ չափով (մոտ 70 տոկոսով) բարձրանում է անմիջական արտադրապրոցեսում։ Այսպես, 1970 թվականին ձեռնարկություններում, հիմնարկություններում ու կազմակերպություններում նոր մասնագիտություն են սովորել 4,5 մլն բանվորներ, իրենց որակավորումը բարձրացրել են 9 մլն բանվորներ[2]։ Եթե նկատի ունենանք նաև պրոֆտեխնիկական ուսումնարանների մեկ մլն 638 հազար շրջանավարտներին, ապա կստացվի, որ սովետական բանվոր դասակարգի պրոֆեսիոնալ որակական կառուցվածքը միայն 1970 թվականին բարելավվել է ավելի քան 15 մլն մարդու չափով, որը 2,5 անգամ ավելի է, քան 1950 թվականին[3]։ Գիտատեխնիկական

[1] Տե՛ս «ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը», էջ 113։
[2] Տե՛ս «Народное хозяйство в 1970 г.», стр. 529.
[3] Տե՛ս նույն տեղը, էջ 527, 529։



digitised by A.R.A.R.@

հեղափոխության ներգործությամբ, ո՛չ միայն արագորեն բարձրանում են բանվորի կուլտուր-տեխնիկական ընդհանուր մակարդակն ու որակավորումը, այլև փոխվում է նրա արտադրական գործունեության ֆունկցիան։ Հաշվումները ցույց են տալիս, որ արտադրության կոմպլեքսային ավտոմատացման շնորհիվ նվազում է ինչպես գերազանցապես ֆիզիկական, այնպես էլ գերազանցապես մտավոր աշխատանքի բաժինը։ Կոմպլեքսային ավտոմատ սարքերի վրա աշխատող բանվորն օրգանապես զուգակցում է ֆիզիկական և մտավոր աշխատանքը։ Նման պրոֆեսիայի աշխատողների բանվորական ժամանակի բաշխման ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ, ասենք, ավտոմատ գծերի օպերատորի բանվորական ժամանակի 32 տոկոսը ծախսվում է գերազանցապես ֆիզիկական աշխատանքի ֆունկցիայի, իսկ 68 տոկոսը՝ մտավոր աշխատանքի ֆունկցիայի վրա։ Կամ՝ ավտոմատ գծերի կարգավորիչ բանվորի ժամանակի 5 տոկոսը՝ ֆիզիկական աշխատանքի, 40-ը մտավոր և ֆիզիկական աշխատանքը զուգակցող ֆունկցիայի, 55 տոկոսը՝ միայն մտավոր աշխատանքի ֆունկցիայի վրա[1]։

Արդի ժամանակաշրջանում աստիճանաբար ձևավորվում է սովետական բանվորների այն խումբը, որը զբաղված է մտավոր-ֆիզիկական խառը աշխատանքով, այսինքն՝ երևան են գալիս, այսպես կոչված՝ բանվոր-ինտելիգենտներ, որոնք ուղի են հարթում մտավոր և ֆիզիկական աշխատանքի մարդկանց միջև եղած էական տարբերությունների հաղթահարման համար։

Ուստի, սովետական բանվոր դասակարգի զարգացման մարզում, այս նոր երևույթի հետ կապված, առաջ կգա նրա բնորոշման վերանայման հարցը։ Գրականության մեջ սոցիալիստական հասարակարգի բանվոր դասակարգի բնորոշումն ընդունված է տալ այսպես. բանվոր դասակարգին են պատկանում գերազանցապես ֆիզիկական աշխատանք կատարող բոլոր այն աշխատավորները, որոնք զբաղված են ժողովրդական տնտեսության պետական սեկտորի ձեռնարկություններում ու հիմնարկություններում։ Բարձրորակ բանվորների խավի ձևավորման հետ կապված սովետական բանվոր դասակարգը աստիճանաբար կդադարի գերազանցապես ֆիզիկական աշխատանքով զբաղված աշխատավորների հասարակական խումբ լինելուց։ Առավել կրթված ու բարձրորակ բանվորների թվի ավելացումը նպաստում է սովետական բանվոր դասակարգի ստեղծագործական հնարավորությունների ընդլայնմանը, որը հատկապես դրսևորվում է երկրում ծավալվող գյուտարարական ու ռացիոնալիզատորական շարժմանը նրա ակտիվ մասնակցությամբ։

Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ գյուտարարների ու ռացիոնալիզատորների թվում բարձր որակավորում ունեցող բանվորները գրեթե այնքան են, որքան ինժեներա-տեխնիկական աշխատողները (40 տոկոս, այդ թվում կանոնավոր զբաղվող՝ 10—15 տոկոս)։

Ինչպես տեսնում ենք այս ասպարեզում նույնպես բարձրորակ բանվորները մերձենում են ինժեներատեխնիկական աշխատողներին, կրճատվում է նրանց միջև եղած տարածությունը։

Ի դեպ, միանգամայն հակառակ պատկեր է կապիտալիզմի պայմաններում։ Սովետական հայտնի ինժեներ Ն. Սմելյակովը, խորապես ուսումնասիրելով բանվոր դասակարգի վրա գիտատեխնիկական հեղափոխության ներգործության հետևանքները Ամերիկայում, իր Գործարար Ամերիկա գրքում

[1] Տե՛ս Вопросы философии. 1968 г., № 11, стр. 17.



գրում է. «Նրա որակավորումն աստիճանաբար սահմանափակ է դառնում, նրա շրջանակները նեղանում են, թեև տեխնիկան զարգանում է։ Տարածությունը ինժեներների և բանվորների որակավորման միջև ավելի ու ավելի է մեծանում։ Բարդ մեքենաների, ավտոմատների, սարքերի կարգավորումը ինժեների հոգսն է։ Բանվորին թողնվում է ուրիշի շարժումների պատճենավորողի դերը։ Նա զրկված է ստեղծագործ աշխատանք կատարելու հնարավորությունից։ Ես բազմիցս վկա եմ եղել այն բանին, որ Ամերիկայի կապիտալիստները թերահավատորեն են վերաբերվում իրենց բանվորների ստեղծագործական ունակություններին։ Վերջիններս ըստ էության ինժեների կամքի մեխանիկական կատարողներ են, ինժեներ, որը տնօրինում է, թե ում ինչ դեր հանձնարարել, որ ձեռքով ինչ անել, ինչպես բռնել դետալը և որ կոճակը սեղմել»[1]։

Նպաստավոր պայմաններ ստեղծելով գիտատեխնիկական հեղափոխության ծավալման համար, սոցիալիզմը, տեխնիկական առաջընթացին զուգընթաց, ապահովում է նաև հիմնական արտադրող ուժի՝ բանվորի զարգացումն ու կատարելագործումն այնպես, որ վերջինս ինքնուրույն և ազատորեն կարողանա կարգավորել ու կառավարել բարդացող մեխանիզմները, արտադրապրոցեսներն ու ավտոմատ գծերը, հանդես բերի ու զարգացնի իր ստեղծագործական ունակությունները։ Իսկ արտադրաուժերի զարգացման ժամանակակից պայմաններում դրան հասնելու համար միայն տեխնիկական գիտելիքները բավական չեն։ Բանվորը պետք է ստանա նաև ինժեներա-տեխնիկական պատրաստության տարրեր, որոնք մտցված են սովետական բանվոր դասակարգի պրոֆեսիոնալ-որակական կառուցվածքի բարելավման դասընթացների ծրագրերի մեջ։

Լինելով զարգացած սոցիալիստական հասարակարգում բանվոր դասակարգի առաջատար դերի իրականացման պահանջներից, այսօր դրված է նրա ստեղծագործական ուժերի ու կարողությունների համակողմանի զարգացման խնդիրը։ Սոցիալիզմի պայմաններում բանվոր դասակարգը հանդես է գալիս ո՛չ միայն որպես հիմնական արտադրաուժ, այլ նաև արտադրամիջոցների սեփականատեր։ Նա տնօրինում է երկրի տնտեսական, քաղաքական ու կուլտուրական զարգացման բախտը։ Ժամանակակից պայմաններում երկրի տնտեսության հսկայական մասշտաբները, նրա կառավարման կատարելագործումը, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման հրամայական անհրաժեշտությունը բանվոր դասակարգից պահանջում են ունենալ նաև տնտեսական գիտելիքների որոշակի պաշար։ Տնտեսագիտական պատրաստությունն արդեն դիտվելու է որպես յուրաքանչյուր բանվորի որակավորման պարտադիր կողմ։ Ահա թե ինչու վերջին տարիներս կուսակցությունը սրել է ուշադրությունը աշխատավորներին տնտեսական գիտելիքներ ուսուցանելու խնդրի վրա։ Այս գործում կարևոր դեր են խաղում կոմունիստական աշխատանքի դպրոցները, որոնք բանվոր դասակարգի համակողմանի զարգացմանը նպաստող արդյունավետ միջոց են։ Դրանք հնարավորություն են ընձեռում միլիոնավոր մարդկանց՝ ձեռք բերելու քաղաքական գիտելիքներ ու բարձր արտադրողական աշխատանքի կարողություններ, ակտիվորեն մասնակցելու արտադրության կառավարմանն ու տեխնիկական առաջընթացի խնդիրների լուծմանը։

Արդի փուլում սովետական բանվոր դասակարգի սոցիալական զարգացման պրոցեսի կարևոր տենդենցներից մեկն էլ նրա ներդասակարգային տար-

[1] Ն. Սմելյակով— «Գործարար Ամերիկա», Երևան, 1971, էջ 233։



digitised by A.R.A.R.@

բերությունների հաղթահարումն է: Գիտատեխնիկական առաջընթացի հիմքի վրա բանվոր դասակարգի բոլոր խմբերի համար աստիճանաբար ապահովվում են աշխատանքի հավասար պայմաններ և հաղթահարվում են նրանց կուլտուր-տեխնիկական ու որակավորման մակարդակների տարբերությունները: Իսկ դա, իր հերթին, բերում է նաև, բանվորների տարբեր խմբերի եկամուտների դեռևս պահպանվող մեծ տարբերությունների կրճատում, նրանց համար նյութական ու հոգևոր կյանքի հավասար պայմանների ստեղծում:

Բանվոր դասակարգի ներդասակարգային տարբերությունները պայմանավորված են ո՛չ միայն սոցիալ-արտադրական, այլև ուրիշ գործոններով, որոնց մեջ դեռևս իրեն մեծ չափով զգացնել է տալիս էկոլոգիական գործոնը, այսինքն՝ այն, թե բանվորը որտեղ է ապրում՝ գյուղում, քաղաքատիպ ավաններում, փոքր, թե զարգացած խոշոր քաղաքներում: Դրանց միջև հատկապես կուլտուր-կենցաղային տարբերությունների վերացման նպատակով վերջին տարիներին կատարված գործնական քայլերը նույնպես նպաստում են բանվոր դասակարգի ներդասակարգային տարբերությունների հաղթահարմանը:

Զարգանալով բազմազան ուղիներով, սովետական բանվոր դասակարգը միաժամանակ ներգործում է աշխատավորների մյուս հասարակական խմբերի՝ գյուղացիության և ինտելիգենցիայի զարգացման վրա, նպաստում նրանց կոմունիստական վերափոխմանն ու իր հետ ավելի մերձեցմանը:

Սովետական հասարակության սոցիալական կառուցվածքի տեղաշարժերի գլխավոր տենդենցը՝ աշխատավորների հասարակական խմբերի սոցիալ-դասակարգային տարբերությունների հաղթահարումը և նրանց ավելի ու ավելի մերձեցումը մի կողմից, այդ խմբերի ներսում գիտատեխնիկական հեղափոխության ներգործությամբ տեղի ունեցող որակական փոփոխությունները՝ մյուս կողմից, նպաստում են բանվոր դասակարգի սահմանների ընդլայնմանը: Նշված տեղաշարժերի ու փոփոխությունների վերլուծությունը ցույց է տալիս, որ տեղի է ունենում բանվոր դասակարգի հետ աշխատավորների այնպիսի խմբերի խիստ մերձեցում և միաձուլում, որոնք առաջ էականորեն տարբերվում էին նրանից և կազմում էին առանձին սոցիալական խավեր: Այսպես, օրինակ, սպասարկման բնագավառի ինդուստրացումը նպաստում է բանվոր դասակարգի մեջ նոր կառուցվածքային միավորի՝ «սպիտակ խալաթավոր բանվորների» խավի առաջացմանը, այսինքն՝ նրա հետ ոչ մասնագետ ծառայողների առանձին խմբերի միաձուլմանը:

Բացի դրանից, բանվոր դասակարգի և պրոֆեսիոնալ մտավոր աշխատողների սոցիալական խավի մերձեցման պրոցեսում աճում են երկու հանդիպակաց տենդենցներ. բանվոր դասակարգի առաջատար խավն իր որակավորմամբ և կուլտուր-տեխնիկական մակարդակով ավելի է մոտենում ինժեներա-տեխնիկական անձնակազմին, իսկ վերջինս իր մի շարք գծերով խիստ մերձենում է բանվորներին: Եվ այդ մերձեցումն այնքան է խորացել, որ շատ գիտնականների հիմք է տալիս անմիջական արտադրության մեջ զբաղված ինժեներա-տեխնիկական աշխատողներին տեսնելու բանվոր դասակարգի կազմի մեջ:

Սովետական հասարակության սոցիալական զարգացման մեջ նկատվող այս նոր երևույթները նշանավորում են նրա լիակատար միատարրության հաստատման պատմական պրոցեսը, որտեղ առաջատար ուժը բանվոր դասակարգն է:

---

# ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԳՈՐԾՈՆԸ

Ռ. Գ. ՆԱՎԱՍԱՐԴՅԱՆ

Այն, ինչն այսօրը կապում է պատմության հետ և որոշում ապագայի բնույթը, դժվար է պարզել, առանց հետադարձ ակնարկ գցելու ժողովրդի, երկրի, հայրերի սերնդի անցած ուղու վրա: Սոցիալիստական հասարակության կյանքում այդպիսի ուղենիշ էր 1922 թվականը, երբ սովետների համամիութենական I համագումարը միաձայն հաստատեց ՍՍՀՄ կազմավորման Դեկլարացիան ու Պայմանագիրը: Այդ փաստաթղթերը քաղաքական, կազմակերպական-իրավական առումով որոշեցին սովետական միութենական բազմազգ պետության կառուցման սահմանադրական հիմունքները:

Կապիտալիստական շրջապատման, փլուզման և կուլտուրական հետամնացության բացառիկ դժվարին պայմաններում, ազգային հանրապետությունների ֆեդերացիայի սկզբունքով կազմակերպված պետությունը երկրի ժողովուրդներին համախմբեց ՍՄԿԿ շուրջը, կարողացավ հաղթահարել նրանց դարավոր անհավասարությունը, ապահովեց նրանց տնտեսական ու քաղաքական բուռն վերելքը: ՍՍՀՄ կազմավորումը՝ «Հասարակությունը սոցիալիստական հիմունքներով վերակառուցելու համար բարենպաստ պայմաններ ապահովող վճռական գործոններից մեկն էր»,— ասված է ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստման մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ:

Լենինյան ազգային քաղաքականության կենսագործումը հանգեցրեց սովետական ժողովրդի ձևավորմանը՝ որպես մարդկանց պատմական նոր հանրության: Դրանով իսկ սահմանվեցին ու ամրապնդվեցին սոցիալիստական կապերը ազգերի ու ժողովուրդների միջև, որոնց կարևոր արդյունքներից մեկը անհատի պատմական նոր տիպի՝ սովետական մարդու նոր գծերի ձևավորումն էր: Այդ նոր երևույթը հետաքրքրական է սոցիոլոգիական տեսության համար, քանի որ արտացոլում է օբյեկտիվ պրոցեսները և կարող է իրականություն դառնալ այն բանի շնորհիվ, որ, ինչպես ասել է Լ. Ի. Բրեժնևը, սովետական ժողովուրդն ստեղծել է նոր, սոցիալիստական ապրելակերպ, նոր, սոցիալիստական քաղաքակրթություն:

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴ ՀԱՆՐՈՒԹՅՈՒՆԸ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅԱՆ ԱՐԳԱՍԻՔ Է

Սոցիալիզմի քննադատներն ու կանխագուշակները միշտ էլ անպակաս են. մարդիկ, ովքեր նոր հասարակարգի հաղթանակի մեջ մեծագույն վտանգ են տեսնում՝ կապիտալիստական աշխարհի շահագործողական հաստատությունների համար: Եթե սոցիալիստական հեղափոխությունը չկատարվեր Ռուսաստա-



digitised by A.R.A.R.@

նում, այն հիմա կլիներ դեմոկրատական ազգերի ընտանիքի հարգելի անդամը, պնդում է ԱՄՆ-ի Կոլումբիայի համալսարանին կից ՍՄԿԿ պատմությունն ուսումնասիրող խմբակի ղեկավարը[1]: Իսկ ուրիշները, եթե անգամ խոստովանում են դրական տարրերի առկայությունը սոցիալիստական վերափոխությունների ասպարեզում, ապա սոսկ վերապահումներով, քանի որ, եթե հավատանք այդ «մասնագետներին», «ինտերնացիոնալիստական նպատադրումը» ՍՍՀՄ-ում գերիշխել է միայն սովետական պետության գոյության առաջին ամիսներին:

Բուրժուական հասարակության հասարակաքաղաքական գրքային գուշակությունները հօդս ցնդեցին: Երկրում կառուցվող սոցիալիզմի առաջին իսկ քայլերը ցույց տվին, որ դասակարգային և ազգային կեղեքումից ազատագրված մասսաներն ի վիճակի են «պատմության մեջ առաջին անգամ ծավալելու կապիտալիզմի կողմից ճնշված միլիոնավորների գործունեության ամբողջ նախաձեռնությունը և ամբողջ էներգիան» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 220):

Ազգերի և ժողովուրդների միջև սկզբունքորեն նոր հարաբերությունները, անշուշտ, մեկեն չհաստատվեցին. հարկավոր եղավ ժամանակ, որպեսզի նոր արժեքներով լցվեր հեղափոխությունից հետո հոգևոր կյանքի մի շարք բնագավառներում գոյացած դատարկությունը, որպեսզի միասնություն հաստատվեր հասարակական և անհատական կեցության միջև, ամրապնդվեր, Լենինի խոսքերով ասած՝ «մեծագույն զգուշությամբ և համբերատարությամբ» ստեղծված դաշինքը ազգերի միջև:

Հասարակական կյանքի ոլորտների ինտերնացիոնալացման միտումը պտուղներ է տալիս, երբ բոլոր էթնիկական խմբերին վերապահվում են հավասար իրավունքներ, նրանց դաշինքը մնում է կամավոր և սնվում է այն վերածնված ժողովուրդների շահերի ընդհանրության կենարար հյութերով, որոնք միասնական են դարձել սոցիալիստական պետության կազմում: Հենց սոցիալիստական տիպի ինտերնացիոնալացման պրոցեսի խորացումն էլ հանգեցրել է պատմության մեջ իր նախատիպը չունեցող մարդկանց հանրության նոր տիպի ձևավորմանը: Դրա շնորհիվ «տարբեր ազգությունների մարդկանց մոտ,— նշված է ՍՄԿԿ ծրագրում,— գոյացել են հոգևոր կերպարի ընդհանուր գծեր, որոնք ծնունդ են առել հասարակական հարաբերությունների նոր տիպով և պարունակում են ՍՍՀՄ ժողովուրդների լավագույն ավանդույթները»:

Շահերի միասնության հիման վրա երկրում առաջացած մարդկանց հանրությունը, ինչպես նաև սովետական ժողովուրդների դաշինքն ու բարեկամությունը Արևմուտքի «սովետոլոգները» պատկերում են որպես «իրերի անբնական դրություն», որը հղի է ավելի սուր կոնֆլիկտներով, քան ռասայական ընդհարումներն են ԱՄՆ-ում: Իրականում այդ հանրությունը օբյեկտիվ հիմքեր ունի. սոցիալական հիմքը բարեկամական հարաբերություններն են դասակարգերի միջև, քաղաքականը՝ սոցիալիստական դեմոկրատիան ու ազգերի հավասարությունն են, գաղափարականը՝ մարքսիստական-լենինյան գաղափարախոսությունն է: Այդ հանրության սիստեմի տարբեր մակարդակներում սոցիալական կապերը հանդես են գալիս որպես հասարակության և անհատի ակտիվ ուժերի ուղիներ, որոնք այժմ բաժանված չեն օտարացող գործոններով, այլ փոխադարձաբար ճարտարում են միմյանց:

Սոցիալական կապերի նոր որակը կարող էր առաջ գալ միայն նոր տիպի անհատների գործունեությամբ: Ինչ տեսանկյունով էլ դիտելու լինենք այդ

[1] A. Meyer, Leninism. Cambridge, 1957· p. 262



փաստը, պետք է անպայման հաշվի առնել, որ սովետական պետության ստեղծումը, սովետական ժողովրդի ձևավորումը՝ որպես հանրության նոր տիպ, նշանավորում է նոր քաղաքակրթության լինելության սկիզբը, և դրա համար էլ կարելի է խոսել բուրժուական քաղաքակրթությունից «լիովին խզվելու մասին», ինչն իրավացիորեն նշվել է դեռևս 1918 թվականին ընդունված «Աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիայում»:

## ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԱՑՈՒՄԸ ԵՎ ՆՐԱ ԻՆՏԵՐՆԱԼԱՑՈՒՄԸ ԱՆՀԱՏԻ ԿՈՂՄԻՑ

Մարդու և հասարակության գործունեության ու դերի, բնույթի ու իմաստի վերաբերյալ հարցերի ամբողջականությունն ահա երկու հարյուր տարի է, ինչ եվրոպական գիտությունը միավորում է «կուլտուրա» և «քաղաքակրթություն» հասկացությունների մեջ, թեև դրանց նկատմամբ խստիվ մոտեցումը չի կարող դրանք չզատել միմյանցից, քանի որ «կուլտուրան», «քաղաքակրթությունը» սոսկ որոշակի սիստեմներ են, ստեղծված՝ մարդու, մարդկանց հանրությունների գործունեության կոմպոնենտներից: Բայց եթե հենց գործունեությունն է ստեղծում ամեն մի կուլտուրայի կոմպոնենտները, ապա պարզ է, թե որքան մեծ է պայմանների նշանակությունը, որոնց մեջ ընթանում է բուն գործունեությունը, ուրեմն նաև մարդու ինքնաիրականացումը որպես գիտակից, գործունակ էակի: Գործունեության ընթացքում մարդը չպետք է անջատված լինի իր իսկ ստեղծածից, քանի որ, այդպիսով, նա օտարվում է աշխատանքի արգասիքից, հետևաբար նաև իր էությունից, ինչը աշխատանքի իրականացման ընթացքում նա փոխանցել է իր արտադրած արգասիքին: Օտարման հետևանքով մարդը, տիրանալու փոխարեն, զրկվում է հասարակության մեջ ստեղծվող արժեքների ողջ հարստությունից: Օտարումը նրան զրկում է մարդկային «ես»-ի իմաստից, մինչդեռ, ստեղծարար, չօտարված աշխատանքում նա պետք է հայթայթի իր ինքնահաստատման միջոցները:

Քաղաքակրթության գոյության երկար դարերն իրենց վրա կրել են օտարման կնիքը: Քաղաքակրթության օտարումը, գիտակցության միջոցով, ընդգրկում է նաև կուլտուրական-վերափոխիչ գործունեության բնագավառը: Սակայն անտագոնիստական հասարակության մեջ գործունեությունն ընթացել է դասակարգային շահերի նեղ հունով, ենթարկվել դրանց: Կոնֆորմիզմը դառնում է այդպիսի օտարված գոյության արտաքին արտահայտությունը:

Քաղաքակրթությունը, ինչպիսին էլ լինի այն, ստեղծում է գործունեության այնպիսի եղանակներ, ինչպիսիք վերջինս պարունակում է իր ընդերքում, ու դրա համար էլ մարդկանց պատկերացումներում մշտապես ապրում է աշխարհի չափ հին այն ճշմարտությունը, որ մարդը նման է իր միջավայրին: Գ. Ֆլոբերի և Ե. Ռեմարկի, Ի. Տուրգենևի և Րաֆֆու, Լ. Տոլստոյի և Ա. Սիլլիթոուի ստեղծած կերպարները դիմանկարների հոյակապ պատկերասրահ են, որոնք այնքան տիպական են իրենց սոցիալական պայմանների համար: Եթե այդ պայմաններն անտեսվում են, ապա միայն քաղաքական նպատակներով:

Մարդու՝ որպես հասարակական բոլոր հարաբերությունների ամբողջականության, սոցիալական կապերի եզակի կեցության վերաբերյալ Մարքսի հայտնի բնորոշումը, մատնացույց է անում ո՛չ միայն հասարակության կանխորոշող դերն անհատի ձևավորման ոլորտում, այլև նրա կառուցվածքի, հատկությունների, գծերի, հատկանիշների նկատմամբ, որոնք մշակվում են սո-



digitised by A.R.A.R.@

ցիալական փորձի յուրացման, իր էությունը սոցիալական բովանդակությամբ տոգորելու ընթացքում։

Սոցիալիստական հասարակությունը, որպես միջավայր, որտեղ կատարվում է մարդու հոգևոր աշխարհը սոցիալականով «տոգորելու» պրոցեսը, իր առանձնահատկություններն ունի։ Ճիշտ է, կուտակված նյութի տեսական վերլուծությունը դեռ նոր է սկսվում և անհատի միասնական սոցիալական տիպի ձևավորման մեջ հոգևոր հարստության էության ու դերի հարցը դեռևս լիակատար արտացոլում չի գտել մեր գրականության մեջ, սակայն պարզ է, որ հարաբերությունների ու կապերի տիպերը բոլոր ոլորտներում՝ արտադրական, միջանհատական, միջդասակարգային, ազգամիջյան՝ սկզբից ևեթ ամենևին էլ չեն գոյացել որպես էթնիկական։ Սոցիալիստական հասարակությունը ստեղծել են այն մարդիկ, որոնց ծնել ու դաստիարակել է կապիտալիզմը, որը փչացրել և այլասերել է նրանց, բայց և կոփել պայքարում. Լենինն ասում է. «Ընդհանրապես, եթե խոսքը վերաբերում է պրոլետարիատին, ապա նա ունակ է՝ պայքարելով սոցիալիզմի համար, դրա հետ միասին պայքարել իր սեփական թերությունների դեմ» (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 246)։ Բայց հենց սկզբից հետապնդվել է հետևյալ նպատակը՝ յուրաքանչյուրին հնարավորություն ընձեռել բազմակողմանիորեն և ներդաշնակորեն զարգացնելու իր ունակությունները։ Սակայն նոր տիպի անհատի մասսայական դաստիարակությունը հնարավոր է իրականացնել այնպիսի պայմաններում, երբ մասսաները, ազգերը և առանձին անհատներ վերածված են հասարակական հարաբերությունների ակտիվ սուբյեկտի, իսկ ստրուկտուրային առումով նոր պետությունը հաղթահարում է ազգային անվստահությունը. այն իր վրա է վերցնում ողջ հասարակության կառավարման ֆունկցիաները՝ հաշվի առնելով ազգային հանրապետությունների տնտեսական և կուլտուրական առանձնահատկությունները։ Այլ խոսքով՝ այդ ողջ ձևափոխման դետերմինանտը կարող էր դառնալ սոցիալիստական հիմք։ Հետադարձ ակնարկ գցելով անցյալին, մենք համոզվում ենք, որ սոցիալիստական հասարակության կառուցման և զարգացման փուլերը նոր տիպի հանրության՝ սովետական ժողովրդի ձևավորման ու ամրապնդման փուլերն են։

Այդ հանրությունը ուրիշ տենդենցներ, զարգացման այլ օրենքներ ունի։ Այսպես, արդյունաբերական արտադրանքի ծավալը մեր երկրում, ամբողջությամբ վերցրած, 99 անգամ գերազանցում է նախապատերազմյան մակարդակը, իսկ, օրինակ, Հայաստանում՝ 201 անգամ։ Այսպիսի վերելքն անհնար կլիներ առանց եղբայրական հանրապետությունների հետ համագործակցության և փոխադարձ օգնության։ Տեղի է ունենում հանրապետությունների ազգային կազմի անմիատարրացման ուժգին պրոցես. օրինակ, 1959 թվականից մինչև 1970 թվականի հունվարը, Միության մյուս հանրապետություններից մոտ մեկ միլիոն 200 հազար մարդ է փոխադրվել Ղազախստան ու Միջին Ասիա։ Երկրում կան իրենց կազմով ինտերնացիոնալ բնույթ ունեցող քաղաքներ, շրջաններ, համաժողովրդական կառույցներ։ Բրատսկ հիդրոէլեկտրակայանի շինարարությանը մասնակցում էին երկրի 50 ազգության ներկայացուցիչներ։ Եվ դա միակ օրինակը չէ։ Նման պայմաններում ամեն մի աշխատանքային կոլեկտիվ, արտադրական կենտրոն, տնտեսական շրջան դառնում է ինտերնացիոնալ դաստիարակության յուրօրինակ դպրոց՝ առօրյա կյանքում հաստատելով բազմազգ էթնիկական խմբերի սերտ համախմբման, միասնական հանրության— սովետական միաձույլ ժողովրդի ուժն ու մարդասիրությունը։



Դասակարգերի նյութական կյանքի պայմաններում, արտադրահարաբերություններում տեղի ունեցած փոփոխությունները (քաղաքում և գյուղում) հնարավորություն ընձեռեցին, որ հասարակությունը մշակի հոգեբանության և բարոյականության սոցիալիստական միասնական գծեր այն բոլոր ժողովուրդների մեջ, որոնք իրենց վրա զգացել են միջազգայինի և ազգայինի միասնության բարերար ներգործությունը։

Բարգավաճումը և, միաժամանակ, մերձեցումը, որպես փոխադարձաբար կապակցված երկու տենդենցների միասնություն, հավասարապես տարբերացնում է ինչպես նյութական, այնպես և հոգևոր ոլորտի զարգացումը, թեև այդ բանն արտահայտվում է յուրօրինակ ձևով։ Բայց հենց այդ գործոնի շնորհիվ է հոգևոր կուլտուրան օժտվել ընդհանուր սովետական գծերով։ Ամեն մի առանձին ժողովրդի կուլտուրա սկսել է ընկալվել որպես ընդհանուր սեփականություն, որովհետև այդ կուլտուրաներից յուրաքանչյուրի մեջ «սովետականը» արդեն իսկ արտահայտում է իր սոցիալիստական էությունը, դրանց ընդհանուր հատկանիշը։

Ուստի, «սովետական ժողովուրդ» հասկացությունը սկսել է արտահայտել վերդասակարգային և ինտերնացիոնալ հանրությունը սոցիալիզմի շնորհիվ վերափոխված դասակարգերի, ազգերի և ժողովուրդների, որոնք վերածվել են հասարակական հարաբերությունների կոլեկտիվ սուբյեկտների և բնութագրվում են տնտեսական, քաղաքական ու հոգևոր շահերի միասնությամբ, այդ հանրությանը պատկանելու գիտակցությամբ։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը իր ելույթներից մեկում ընդգծեց, որ սոցիալիստական հասարակության մեջ «հայրենասիրության զգացմունքը դուրս է գալիս ազգային պատկանելության սահմաններից, տոգորվում նոր բովանդակությամբ։ Մենք բոլորս, ո՛ր հանրապետությունում էլ ապրելիս լինենք, սովետական հայրենասերներ ենք, մեկ սոցիալիստական հայրենիքի զավակներ» (Լենինյան կուրսով, էջ 457, հ. 3)։

Ի հակադրություն կապիտալիստական աշխարհի, որտեղ իրերի արժեքի մեծանալուն զուգընթաց արժեզրկվում է մարդը, սոցիալիստական հասարակության մեջ նյութական ողջ հարստությունը, տեխնիկայի, գիտության և կուլտուրայի նվաճումներն ի սպաս են դրվում մարդուն, որի պատիվը, արժանապատվությունը և շահերը, պաշտպանվում են օրենքով՝ անկախ նրա ազգային կամ ռասայական պատկանելության, սեռի, կոչումի և այլն։ Այդ արժանապատվությունը յուրաքանչյուրին վերապահված իրավունքների ու ազատությունների արտահայտությունն է, որոնք վավերացված են քաղաքական, սոցիալական ու բարոյական նորմերով, որոնց ինտերնալացումն էլ (այսինքն՝ յուրացումը, ներքին համոզմունքի վերածումը) բնորոշում է անհատի սոցիալիստական նպատակասլացությունը, հետևաբար և պրոգրեսը նոր մարդու ձևավորման գործում։

## ՆՈՐ ՀԱՆՐՈՒԹՅՈՒՆԸ ՈՐՈՇՈՒՄ Է ԱՆՀԱՏԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՆՊԱՏԱԿԱՍԼԱՑՈՒԹՅՈՒՆԸ

Վաղուց հաստատված է, որ մարդը, վերափոխելով աշխարհը, ինքն էլ է փոխվում։ Ուստի և մարդու նոր անելիքների ու հատկությունների մշակման գործում մեծ դեր է խաղում այն, թե նա որքան ակտիվ է ներգրավվում ստեղծարար աշխատանքի մեջ, յուրացնում հասարակական պրոգրեսիվ զարգացման նպատակները։ Պնդել, ինչպես այդ անում է ֆրանսիական հայտնի գրող Վեր-



digitised by A.R.A.R.@

կորը, որ «յուրաքանչյուր մարդ ամենից առաջ մարդ է, իսկ այնուհետև միայն Պլատոնի, Քրիստոսի կամ Մարքսի հետևորդ», նշանակում է ժխտել վարքագծի բարոյական նորմերի դասակարգայնությունը հասարակության մեջ։ Մարդու գաղափարական հասունությունը և աշխարհայացքային կոփվածությունը մեր կուսակցության գլխավոր խնդիրներից մեկն է, այդ են ապացուցում նաև բոլոր համագումարների նյութերը։ Այդ հարցը չի կարելի անտեսել, եթե հասարակությունը շահագրգռված է իր առաջընթացով։

Հասարակությունը բարդ կազմություն է. բաղկացած՝ տարբեր խավերից, խմբերից, ազգերից, դասակարգերից, որոնց շրջանակներում ծագում և նորից անհետանում են տարբեր մասշտաբի ենթասիստեմներ հանձին դիֆերենցված սոցիալական կազմավորումների։ Դրանցով միջնորդվում է «հասարակություն-անհատ» կապը, ուրեմն և հասարակական արժեքների յուրացումը յուրաքանչյուր առանձին անհատի կողմից։

Հասարակական օրգանիզմի կառուցվածքում հարաբերությունների հիերարխիան չի կարող գիտականորեն նկարագրվել՝ առանց ընդհանուրի, առանձնահատուկի և եզակիի սահմանման։ Ամեն մի կոլեկտիվ իր մեջ մարմնավորում է այդ, թվում է, թե, վերացական կատեգորիաները, քանի որ չի կարող իր վրա չկրել հասարակական ամբողջ կնիքը, բայց միշտ հանդես է գալիս որպես անհատական կապերի անկրկնելի զուգորդություն։ Իսկ կոլեկտիվը, որպես անհատի անմիջական միջավայր, իր մեջ բեկում է հասարակական նորմերը, գաղափարները, պահանջները, արդեն վերափոխված ձևով դրսևորում դրանք իր անդամների վարքագծում, հայացքներում։ Խնդիրն այն է, որ «կոլեկտիվ-անհատ» կապի մեխանիզմը լինի հասարակական ամբողջի պահանջմունքների ներգործության տակ։ Բացի դրանից, շատ կարևոր է, որ կոլեկտիվն ամեն կերպ օժանդակի, որպեսզի իր անդամները լայն կապեր հաստատեն ուրիշ կոլեկտիվների հետ, նպաստի սոցիալական փորձի ավելի լայն յուրացմանը՝ մարդկանց ակտիվությունը չսահմանափակելով աղանդավորական կամ կորպորատիվ պահանջներով։ Դա ոչ ցանկություն է և ոչ էլ լոզունգ, այլ անհատի զարգացումը որոշող օրենք, քանի որ անհատի հարստությունը, բազմակողմանիությունը կախում ունի տարբեր խմբերի կամ կոլեկտիվների միջոցով հասարակության հետ նրա ունեցած կապերից (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 36)։ Այդ բանում համոզվելու համար բավական է նայել անհատական շահի պրիզմայի միջով, զգալ այս կամ այն կոլեկտիվի ոգին, նկատի առնել այս կամ այն միջավայրում գոյություն ունեցող ավանդույթները։ Սոցիոլոգիական գիտությունը վերջին տարիներս մեծ նվաճումների է հասել նման կապերի և հարաբերությունների խայտաբղետությունն ըմբռնելու առումով։

Գիտությունը շատ ավելի մեծ դժվարությունների է հանդիպում սոցիալական փորձի ինտերնալացման պրոցեսը վերլուծելիս։ Այդ հարցը հոգեբանության համար դրված է անհատի ինքնավար գործունեության և նրա գիտակցության միջև կապի հարցի ձևով, իսկ սոցիոլոգիայում փորձում են այն լուծել դիրքորոշման կոնցեպցիան սոցիոլոգիական տեսության լեզվի փոխադրելու միջոցով։ Դիրքորոշումը (հոգեբանի աչքերով) դրսևորում է անհատի և միջավայրի փոխներգործությունը ինչպես այդ փոխներգործության օբյեկտիվ, արտաքին պայմանավորվածության, այնպես էլ անհատի «ներքին» աշխարհի տեսանկյունով։ Դիրքորոշումների սիստեմը ձևավորում է արժեքային կողմնորոշումը (այսինքն՝ նախատրամադրությունը արժեքներ ընտրելիս համապա-



տասխան է անհատական պահանջմունքներին, շահերին, հակումներին), իսկ արժեքային կողմնորոշումը անհատի տիպի ձևավորման պրոցեսի հիմքն է։

Ինչպես տեսնում ենք, գիտական տարբեր դիսցիպլիններից կազմված հասկացությունների մի ամբողջ շղթա է օգտագործվում, որպեսզի փորձի ինտերնալացման և անհատական հատկությունների ձևավորման ակտի միջոցով հայտնաբերենք անհատի որոշ միջավայրի (խավի, դասակարգի, ազգի, հասարակության) համար տիպական գծերի ձևավորման օրինաչափությունները։ Եվ դա գիտության համար արդարացված քայլ է, եթե հաշվի առնենք, որ, առանց զանազան անհատական գծերի տիպականացման, հնարավոր չէ սահմանել այն օրենքները, որոնք, ամենայն հավանականությամբ, պետք է կազմեն մեր հասարակության համար այնքան պիտանի անհատի սոցիոլոգիական տեսության բովանդակությունը։ Ճիշտ է, անհատի ուսումնասիրության այդ նոր եղանակը զերծ չէ կուրյոզներից։ Հեղինակներից ոմանք շտապում են ամեն մի հոգեկան արտահայտության մեջ տեսնել անհատի տիպի մարմնավորումը, և դրա համար էլ պարզվում է, որ սոցիալիստական անհատի տիպը, բացի երեք տարբերակներից (մեր հասարակության սոցիալական կառուցվածքին համապատասխան), իր մեջ պարփակում է նաև... հակահասարակական վարքագծի տիպեր։ Բայց դա նշանակո՞ւմ է արդյոք, որ հանրային սեփականությունը գիտակցաբար հափշտակող, սոցիալիստական համակեցության նորմերը խախտող, ինտերնացիոնալ սկզբունքների դեմ հանդես եկող անհատներին մենք պետք է անվանենք սոցիալիստական տիպեր (տե՛ս Л. Г. Смирнов, Советский человек, М., 1971, стр. 58, 258, 277)։

Չպետք է մոռանալ, որ յուրաքանչյուր ոք այնքան է մոտ անհատի սոցիալական տիպին, որքան նա իր մեջ տիպական է պարունակում տվյալ հասարակության համար, այն, ինչը բնութագրում է տվյալ հասարակությանը՝ պրոգրեսի նկատմամբ ունեցած նրա տենդենցի և նպատակասլացության առումով։ Անհատների ռեալ գոյությունը մեզ մոտ չեն ժխտում անգամ բուրժուական սոցիոլոգները, որոնք սովետական մարդու մեջ տեսնում են «ոչ թե արտաքուստ» (հարկադրաբար), այլ «ներքուստ» (անձնական համոզմունքներով) «կողմնորոշված անհատ», որն իր հատկությունները նյութականացնում է հոյակապ կառույցների շինարարության մեջ, այն հարաբերություններում, որ նա հաստատում է հասարակության կամ իրեն նմանների հետ[1]։

* * *

Հասարակության սոցիալիստական վերափոխությունը ծնել է մարդ-անհատի նոր տիպ, որն իր մեջ մարմնավորում է այն ամեն լավագույնը, որով աչքի են ընկել սոցիալիզմի համար մարտնչողները։ Հայրենասիրության ինտերնացիոնալ պարտքի, առաջավոր գաղափարախոսության հավատարմության միաձուլումը դարձել են նրա սեփականությունը։ Կուլտուրային հայտնի անհատների բոլոր պատմական տիպերից նա տարբերվում է հասարակական բարձր ակտիվությամբ, շահագործման նկատմամբ անհաշտելիությամբ, այն բանով, որ նրան խորթ են ռասայական նախապաշարմունքները։ Մարդկանց հանրություն-սովետական ժողովուրդը նախապատրաստել է այն մարդու ծնունդը, որն այսօր արդեն մտնում է կոմունիստական հասարակարգի շեմքը։

---

[1] Տե՛ս D. Riesman, Culture and Sosial character N. Y., 1961.

digitised by A.R.A.R.@

աշխարհում գիտատեխնիկական հեղափոխություն է կատարվել, որ արդի պայմաններում մաթեմատիկայի դերն անհամեմատ մեծացել է, որ մաթեմատիկան դարձել է հետազոտության ու առաջընթացի հզոր զենք:

Իհարկե, ՍՍՀՄ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության կողմից պարբերաբար վերանայվում է բարձրագույն մաթեմատիկայի դասընթացի ծրագիրը, ճշգրտվում, ավելացվում են լրացուցիչ գլուխներ, որոնց ուսումնասիրությունը պարտադիր է ինժեներական առանձին մասնագիտությունների համար: Ծրագրի նշված փոփոխությունները, անշուշտ, որոշակի դրական դեր են խաղում, բայց չեն վերացնում ապագա ինժեներների մաթեմատիկական գիտելիքների մակարդակի և գիտա-տեխնիկական առաջընթացի միջև եղած խոր անջրպետը: Ուստի, այն վերացնելու համար անհրաժեշտ է արմատապես վերանայել բարձրագույն մաթեմատիկայի դասընթացի ողջ ծրագիրը, այլ խոսքով՝ արդիականացնել այն: Մեր կարծիքով, արդիականացրած ծրագրում, բարձրագույն մաթեմատիկայի սովորական դասընթացի և հավանականությունների տեսության հետ մեկտեղ, անհրաժեշտ է, ըստ մասնագիտական խմբերի, ավանդել բազմությունների տեսության և մաթեմատիկական տրամաբանության, ֆունկցիոնալ անալիզի, խմբերի և վերջավոր դաշտերի, ուղղող կոդերի, խաղերի տեսությունների, օպերացիայի հետազոտության և կիրառական այլ առարկաների տարրեր, ինչպես և հաշվողական մաթեմատիկայի հիմունքները: Թերևս ավելի նպատակահարմար է մաթեմատիկական անալիզի դասընթացին զուգահեռ վերոհիշյալ բաժինները անցնել հաստատված պարտադիր ծրագրի համաձայն՝ «վերջավոր մաթեմատիկայի» դասընթաց անվամբ:

Բնականաբար, բարձրագույն մաթեմատիկայի այդպիսի ամբողջական դասընթացի ծրագիրը կպահանջի ավելացնել մաթեմատիկայի ուսումնասիրությանը հատկացված ժամերը: Որտեղի՞ց վերցնել լրացուցիչ ժամեր: Այդ հարցին կուզեինք պատասխանել հետևյալ կերպ: Տեխնիկական բուհերի մասնագիտությունների թըվում կա ինժեներ-մաթեմատիկոսի մասնագիտություն: Այդ մասնագիտության առումով մաթեմատիկային հատկացվում է 1300—1400 ժամ, այսինքն՝ երեք անգամ ավելի, քան ինժեներական մյուս մասնագիտություններին: Իսկ դրա համար որտեղի՞ց են վերցնում այդքան ժամեր: Հավանաբար, գլխավորն այստեղ տվյալ մասնագիտության մաթեմատիզացման կարևորության գիտակցումն է: Եթե ելնենք ինժեներական մի շարք մասնագիտությունների մաթեմատիզացման անհրաժեշտությունից, ապա, մեր կարծիքով, մաթեմատիկային հատկացվելիք լրացուցիչ ժամերի հարցը կլուծվի:

Տեխնիկական առարկաների, ինժեներական գիտությունների մաթեմատիզացիան, ապագա ինժեների մաթեմատիկական մտահորիզոնի ընդլայնումը, նրա մաթեմատիկական կրթության որակի բարձրացումը մեր ժամանակի անհրաժեշտ պահանջն են, ուստի, պահպանողականությունն այս հարցում կարող է միայն վնաս հասցնել մեր առաջընթացին:

Բարձրագույն մաթեմատիկայի նոր, ամբողջական ծրագրի մշակումը և ժամանակակից դասագրքերի ստեղծումը դժվարին, պատասխանատու գործ է, որը հաջողությամբ կարող է պսակվել մաթեմատիկայի տեսության ու կիրառության բնագավառում աշխատող գիտնականների և ինժեներա-տեխնիկական մտքի ներկայացուցիչների համատեղ ջանքերով:

## ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՄԱԹԵՄԱՏԻԿԱՅԻ ՈՒՍՈՒՑՄԱՆ ՄԵԹՈԴՈԼՈԳԻԱԿԱՆ ՀԱՐՑԵՐԸ

Ինժեներական կադրերի մաթեմատիկական կրթության որակի բարելավման խնդիրը սերտ կապված է ուսումնական պրոցեսը լավագույն ձևով կազմակերպելու, բարձրագույն մաթեմատիկայի դասավանդման մեթոդոլոգիական մի շարք հարցերի հետ:

Մեր ժամանակի բնորոշ առանձնահատկություններից մեկը ուսուցման պրոցեսի վիթխարի մասշտաբներն են: Ուսումնառության և ուսուցման պրոցեսները դարձել են մարդկային գործունեության կարևորագույն բնագավառներ: Մենք ապրում ենք այնպիսի ժամանակաշրջանում, որ անհրաժեշտ է սովորել ողջ կյանքում. այդ է պահանջում արդի գիտատեխնիկական հառաջընթացը:

Ներկայումս ՍՍՀՄ-ում ուսանում է մոտ 80 միլիոն մարդ, այսինքն՝ բնակչության մեկ երրորդը: Ավանդում են դպրոցների, ուսումնարանների, տեխնիկումների և բուհերի մոտ 3 միլիոն ուսուցիչներ: Ուսուցման նշված մասշտաբները կապված են վիթխարի ջանքերի ու նյութական ծախսերի հետ: Ուսուցման պրոցեսի, մանկավարժական աշխատանքի արդյունավետության բարձրացման համար անհրաժեշտ է օգտագործել ո՛չ միայն հումանիտար գիտությունների նվաճումները, այլև կիբեռնետիկայի ու հենց մաթեմատիկայի լայն հնարավորությունները:

Ներկայումս, ինչպես մեր երկրում, նույնպես և արտասահմանում, ինտենսիվ կերպով հետազոտվում են արագագործ թվային էլեկտրոնային մեքենաները ուսուցման պրոցեսում օգտագործելու հնարավորությունները: Մեր աչքի առաջ ծնվել, զարգանում է մի նոր գիտություն՝ կիբեռնետիկական մանկավարժությունը: Սակայն դա միայն սկիզբն է: Համոզված ենք, որ վրա կհասնի ուսուցանող էլեկտրոնային մեքենաների լայն կիրառման շրջանը, մեքենաներ, որոնք կապահովեն խմբային և անհատական, ստացիոնար և հեռակա ուսուցումը:

Կիբեռնետիկական մանկավարժության զարգացումը կհանգեցնի՞ արդյոք այն բանին, որ մեքենա-մանկավարժը ուսուցման պրոցեսից դուրս մղի մարդ-մանկավարժին: Մեր կարծիքով, նման բան տեղի չի ունենա. կիբեռնետիկական մեթոդների ու միջոցների արմատավորմամբ կթեթևանա և ավելի արդյունավետ կդառնա նրա աշխատանքը:

Ուսուցման ներկա պրոցեսն իր տեխնիկական միջոցներով չափազանց հոգնեցուցիչ է թե՛ դասախոսի, թե՛ ուսանողի համար: Ուսանողն ամեն օր միջին հաշվով 4 ժամ, լարված, դասախոսություն է գրառում: Մեր կարծիքով, ավելի արդյունավետ կլիներ, եթե դասընթացի տվյալ բաժնի վերաբերյալ դասախոսության կոնսպեկտը նախօրոք տրվեր ուսանողին: Ծանոթ լինելով առաջիկա դասախոսության բովանդակությանը, դասախոսության ժամանակ, ազատ լինելով գրելուց, նա ավելի ուշադիր կհետևեր դասախոսի մտքերին, նրա հետ միասին ստեղծագործաբար կխորհեր, իսկ դասախոսը շատ ժամանակ կունենար թեմայի էությունը կազմող հանգուցային, գլխավոր հարցերն առավել հանգամանորեն լուսաբանելու:

Այժմ բարձրագույն դպրոցում մաթեմատիկայի ավանդման մեթոդիկայի հարցերը ևս վիթխարի նշանակություն ունեն: Ոմանք կարծում են, թե բարձրագույն մաթեմատիկայի մեթոդիկան, իբր, գիտելիքների ինքնուրույն բնագավառ չէ, թե այն ավելորդ է: Այդ, անշուշտ, ճիշտ չէ, քանի որ թերություններ շատ կան բարձրագույն մաթեմատիկայի ավանդման ասպարեզում: Բուհի ուսանողների մաթեմատիկական գիտելիքները շատ հաճախ խիստ անկայուն են լինում, նրանց առաջադիմությունը՝ անբավարար: Փաստերի սերտումը հաճախ գերակշռում է բարձրագույն մաթեմատիկայի մեթոդների յուրացմանն ու դրանք պրակտիկայում կիրառելու կարողությանը: Անբավարար է զարգանում ինքնուրույն տրամաբանական մըտածողությունը: Ձեռք բերված գիտելիքներն արագ մոռացվում են: Ուստի և անհրաժեշտ է, ինչպես հարկն է, զբաղվել բարձրագույն մաթեմատիկայի ավանդման մեթոդիկայով, որի կարևոր սկզբունքներից մեկը պետք է լինի մեր ինժեներական կադրերի մաթեմատիկական գիտելիքների մեջ եղած ֆորմալիզմի վերացումը: Մաթեմատիկայի ոչ-խոր յուրացման դեպքում հիմնական ուշադրությունը բևեռվում է գիտելիքների արտաքին, ձևական կողմի և ոչ դրանց բուն էության վրա: Հաճախ է պատահում, որ ուսանողը ճիշտ է ապացուցում թեորեմը և արտածում բանաձևը, բայց նույնը չի կարողանում անել գծագրի մի այլ դասավորության դեպքում: Մաթեմատիկայի ոչ-խոր յուրացումը հաճախ նյութի մակերեսային, ձևական շարադրման հետևանք է: Իհարկե, մաթեմատիկայի ավանդումը պահանջում է որոշ ֆորմալիզմ, որը պետք է սովորեցնի մաթեմատիկական ճշգրտություն, տրամաբանական մտածողություն:

Այսպիսով, բարձրագույն մաթեմատիկայի մակերեսային շարադրանքը չի կարող ապահովել մաթեմատիկայի խոր ըմբռնումը: Ուսուցման ընթացքում ուսանողը պետք է պարզորոշ տեսնի ու համոզվի, որ բարձրագույն մաթեմատիկայի վերացական հասկացությունները կիրառվում են պրակտիկայում:

Ցածր կուրսերում բարձրագույն մաթեմատիկայի ողջ ծրագրի անցման ավանդական պրակտիկան, մեր կարծիքով, ճիշտ չէ, այն հանգեցնում է ֆորմալիզմի, մաթեմատիկայի ու պրակտիկայի խզման: Եվ, իրոք, ուսանողները համեմատաբար կարճ ժամանակամիջոցում, առաջին երկու տարվա ընթացքում ստանում են մաթեմատիկական խիստ ծավալուն գիտելիքներ, բարձր կուրսերում մասնագիտական առարկաների դասախոսները չեն օգտագործում նրանց այդ գիտելիքները, որի հետևանքով դրանք հետզհետե մոռացվում են: Ի վերջո ուսանողները հանգում են այն թյուր կարծիքին, թե բարձրագույն մաթեմատիկան այնքան էլ պետք չէ գործնականում, թե կարելի է առանց դրա էլ յոլա գնալ:

Ինչպե՞ս պայքարել այս չարիքի դեմ: Մեր կարծիքով, անհրաժեշտ է, նախ՝ ցածր կուրսերում, հատկապես առաջինում, բանիմացորեն կրճատել ուսումնասիրվող նյութի ծավալը և համապատասխանաբար, բարձր կուրսերում շարունակել բարձրագույն մաթեմատիկայի ավանդումը, երկրորդ՝ բարձր կուրսերում ավանդել ֆակուլտետային կիրառական մաթեմատիկական առարկաներ, որոնք անհրաժեշտ են որպես բազա մասնագիտական մի շարք առարկաների համար. երրորդ՝ ուժեղացնել մաթեմատիկական և տեխնիկական ամբիոնների դասատուների գիտական ու գործարար կապերը, որպեսզի մասնագիտական առարկաներն ավանդելիս լայնորեն օգտագործվի մաթեմատիկական ապարատը:

Դասավանդման պրոցեսում մաթեմատիկայի կապը պրակտիկայի հետ անհրաժեշտ պայման է մաթեմատիկական վերացական տեսությունների խոր յուրացման համար: «Կենդանի հայեցողությունից դեպի վերացական մտածողությունը և դրանից դեպի պրակտիկան,— ասում



digitised by A.R.A.R.@

է Լենինը,— այս է ճշմարտության իմացման, օբյեկտիվ ռեալության իմացության դիալեկտիկական ուղին» (Երկեր, հ. 38, էջ 205):

Բարձրագույն մաթեմատիկայի ավանդման գիտական մեթոդիկայի մշակումն անհրաժեշտ է մեր ինժեներական կադրերի մաթեմատիկական գիտելիքներում եղած ֆորմալիզմը և այլ էական թերություններ վերացնելու համար:

Լավ է ասել ռուս մեծ գրող-հրապարակախոս, հեղափոխական-դեմոկրատ Ա. Ի. Գերցենը (կրթությամբ մաթեմատիկոս, աստղագետ) իր Եղելություններ և խոհեր մեծարժեք գրքում. «Դժվար գիտություններ չկան, կա միայն դժվարին, այսինքն՝ «անմարսելի» շարադրանք»: Եվ ապա՝ «Մանկավարժության ողջ խնդիրն էլ հենց այդ է— գիտությունը դարձնել այնքան հասկանալի ու դյուրըմբռնելի, որ ստիպի նրան խոսել պարզ, սովորական լեզվով»:

### ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԴՐՎԱԾՔԸ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲՈՒՀԵՐԻ ԱՄԲԻՈՆՆԵՐՈՒՄ

Լուրջ դժվարություններ կան տեխնիկական բուհերի մաթեմատիկայի ամբիոններում գիտական աշխատանքի կազմակերպման ասպարեզում: Դասախոսների մի մասն այն կարծիքին է, թե մաթեմատիկայի ամբիոնի գործունեության հիմնական նպատակն է ուսանողներին տալ մաթեմատիկական գիտելիքներ, իսկ գիտահետազոտական աշխատանքը երկրորդական նշանակություն ունի: Գիտական աշխատանքի նկատմամբ նման վերաբերմունքը սխալ է: Մաթեմատիկայի ամբիոնն ուսանողներին մաթեմատիկա ուսուցանելու իր հիմնական խնդիրը հաջողությամբ կարող է լուծել միայն այն դեպքում, եթե պատշաճ կազմակերպվի հետազոտական աշխատանքը, իսկ դա, ամենից առաջ, դասավանդման մակարդակի բարձրացման, հետևապես՝ ինժեներական կադրերի պատրաստումը կատարելագործելու ուղիներից մեկն է:

Տեխնիկական բուհերի մաթեմատիկական ամբիոններում գիտական աշխատանքի դրվածքը բարելավելու համար անհրաժեշտ է.

1. մաթեմատիկայի ամբիոններն աստիճանաբար համալրել համալսարանների կիրառական մաթեմատիկայի և մեխանիկա-մաթեմատիկական ֆակուլտետներն ավարտած ընդունակ երիտասարդներով. աշխատանքի ներգրավել մաթեմատիկայի բնագավառում խոր գիտելիքներ ունեցող ընդունակ երիտասարդ ինժեներ-կիբեռնետիկների, որոնք հետագայում կդառնան լավ մաթեմատիկոսներ և կկարողանան մաթեմատիկան կիրառել տեխնիկայի բնագավառում.

2. Պրոֆեսորները՝ ամբիոնի առավել որակյալ մասնագետները, պետք է կազմակերպեն գիտության մեկ կամ մի քանի ուղղությունների վերաբերյալ մշտապես գործող գիտահետազոտական սեմինարներ, դրանց մասնակից դարձնեն ամբիոնի դասախոսներին և, հատկապես՝ երիտասարդներին: Սեմինարներին կարելի է հրավիրել նաև տեխնիկական ամբիոնների այն մասնագետներին, որոնք ակտիվ գիտական աշխատանք են կատարում, ունեն մաթեմատիկական հակումներ:

3. Տեխնիկական բուհերի մաթեմատիկոս-դասախոսներն անպայման պետք է մասնակցեն տնտեսական-պայմանագրային այն աշխատանքներին, որոնցում կարևոր դեր է խաղում մաթեմատիկական ապարատը:

4. Գիտահետազոտական սեմինարներին զուգահեռ անհրաժեշտ է կազմակերպել նաև գիտա-մեթոդական սեմինար, որը, մի կողմից՝ կնպաստի դասավանդման որակի բարձրացմանը, մյուս կողմից՝ հետաքրքրություն կհարուցի բարձրագույն մաթեմատիկայի ավանդման մեթոդիկայի գիտական պրոբլեմների մշակման նկատմամբ:

5. Հարկ է, որ ամբիոնի դասախոսները մշտապես ղեկավարեն ուսանողների գիտական աշխատանքը, մասնակցեն ուսանողական գիտատեխնիկական կոնֆերանսների կազմակերպմանն ու անցկացմանը:

Արդի գիտատեխնիկական հեղափոխությունը մարդկության առջև լայն հեռանկարներ է բացում բնության վերափոխման, նյութական հարստությունների ստեղծման, մարդու ստեղծագործական ունակությունների բազմապատկման համար:

Արդի գիտատեխնիկական առաջընթացում կարևոր դեր ունեն մաթեմատիկան ու կիբեռնետիկան: Ահա թե ինչու ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում խնդիր է դրվում. «Նոր հնգամյակում ապահովել... տեսական ու կիրառական մաթեմատիկայի և կիբեռնետիկայի պրոբլեմների հետագա մշակումը՝ մաթեմատիկական մեթոդներն ու էլեկտրոնային-հաշվիչ տեխնիկան ժողովրդական տնտեսության մեջ ավելի լայնորեն կիրառելու, արտադրության պրոցեսներն ավտոմատացնելու և կառավարումը կատարելագործելու համար...»:

---



## ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՄԱՆ ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿԻ ՀԱՄԱՐ

ՍՄԿԿ XXIV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Մեծ գործը՝ կոմունիզմի կառուցումը, անկարելի է առաջ մղել առանց մարդկանց բազմակողմանի զարգացման: Առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցության, ներքին հասունության բարձր մակարդակի կոմունիզմն անհնարին է, ինչպես որ այն անհնարին է առանց նյութատեխնիկական համապատասխան բազայի...

Կուսակցության գաղափարա-դաստիարակչական ողջ աշխատանքի միջուկը աշխատավորության հոծ կանգվածների կոմունիստական աշխարհայացքի ձևավորումն է, նրանց դաստիարակումը մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 3, էջ 387, Երևան, 1972):

Խմբագրության աշխատակցի այն հարցին, թե կուսակցության համագումարի վերոհիշյալ դրույթների կենսագործման առումով ինչպե՞ս է գործում մայրաքաղաքի գիտա-հետազոտական հիմնարկությունների կուսուսուցման ցանցը, ի՞նչ է արվում գիտա-տեխնիկական ինտելիգենցիայի գաղափարական դաստիարակության բնագավառում, ՀԿԿ Երևանի քաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ Գ. Խ. Մարտիրոսյանը պատմեց հետևյալը.

*Երևանի գիտա-հետազոտական հիմնարկություններում ներկայումս աշխատում է 4963 կոմունիստ կամ մայրաքաղաքի կոմունիստների մոտ ինը տոկոսը: Այդ ջոկատը, որն իր ավանդն է մուծում ո՛չ միայն քաղաքի, այլև հանրապետության գիտական և տեխնիկական մտքի զարգացման գործում, իր հերթին, քաղաքական-գաղափարական կոփվածքի կատարելագործման կարիք ունի: Մանավանդ, եթե հաշվի առնենք, որ մեր գիտական և նախագծային ինստիտուտների աշխատողների 50 տոկոսի տարիքը չի անցնում 30-ից և նրանց թվում կա մոտ 5000 կոմերիտական: Նրանք դեռևս իրենց խոսքն ունեն ասելու գիտության և տեխնիկայի առաջընթացի ասպարեզում:*

*Գիտնականների, գիտա-տեխնիկական մտավորականության շրջանում տարվող քաղաքական-գաղափարական աշխատանքը պետք է լինի շերտավորված ու բազմաբնույթ: Ընդ որում, հնարավորության սահմաններում հարկավոր է հաշվի առնել նրանց տարիքային և մյուս առանձնահատկությունները: Այդ պահանջների կատարման համար քաղաքի կուսկազմակերպություններն*



digitised by A.R.A.R.@

օգտվում են քաղաքական ուսուցման տարբեր ձևերից։ Դրանցից առավել արդյունավետ են քաղաքային լեկտորիումը, քաղկոմին կից գործող տնտեսագիտական համալսարանը, աշխատանքի գիտական կազմակերպման երկամյա ինստիտուտը, որն անցյալ տարի տվեց իր առաջին շրջանավարտները։ Քաղկոմը և շրջկոմները, գիտա-հետազոտական և նախագծային հիմնարկությունների կուսկազմակերպությունների քարտուղարներին օգնելու նպատակով, հրավիրել են սեմինար-պարապմունքներ, ուր կատարվել է քաղաքական աշխատանքի դրական փորձի փոխանակում, ընդհանրացվել է ուսանելին ու լավը։ Քաղկոմի և շրջկոմների բյուրոների նիստերում քննարկվել են վերոհիշյալ հիմնարկությունների գործունեությանը վերաբերող բազմաթիվ հարցեր։ Կուսակցության քաղկոմը, օրինակ, հանգամանորեն ուսումնասիրել և վերլուծել է գիտա-հետազոտական հիմնարկություններում տարվող գաղափարական-քաղաքական աշխատանքի փորձը։ Այդ քննարկումները նպաստել են ո՛չ միայն նրանց գործունեության բարելավմանը, այլև կոմունիստների և անկուսակցականների քաղաքական դաստիարակության ուժեղացմանը։

Քաղաքի ութ կազմակերպություններում անցկացված մասնակի սոցիոլոգիական հարցումները ցույց տվեցին, որ կուսակցական ուսուցման ցանցում իրենց քաղաքական գիտելիքները բարձրացնելու ցանկություն է հայտնել կոմունիստների գերակշռող մասը։ Քաղաքական կրթության ներկա սիստեմից գոհ էր հարցմանը մասնակցողների 93 տոկոսը։ «Ուսուցման սիստեմը կյանքում կամ աշխատանքում ձեզ օգնո՞ւմ է» հարցին դրական պատասխան են տվել նրանց 87 տոկոսը, իսկ 13 տոկոսը պատասխանել է՝ «մասամբ»։ Այն հարցին, թե «Ո՞ւմ կցանկանայիք տեսնել պրոպագանդիստի դերում», 73 տոկոսն առաջնությունը տվել է հիմնարկության ղեկավարին։ Ուսումնասիրությունները կուսկազմակերպություններին որոշակի ելակետային տվյալներ են հուշում և նրանց ճիշտ կողմնորոշում քաղաքական ուսուցման գործը կազմակերպելիս։

Կյանքը հաստատել է, որ քաղաքական դաստիարակության հիմնական և փորձված ձևը, մարդկանց մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման կարևոր միջոցը կուսակցական քաղաքական ուսուցման սիստեմն է։ Գիտա-հետազոտական ինստիտուտներում և նախագծային հիմնարկություններում կուսակցական ուսուցման մեջ ընդգրկված է 5.600 մարդ, որից 4350-ը՝ կոմունիստներ, կոմերիտական ուսուցման մեջ՝ ավելի քան 2000 մարդ։ Անհատական պլանով և մարքսիզմ-լենինիզմի համալսարանում սովորում է 320 մարդ։ Այսպիսով, ստեղծագործական աշխատողների մոտ 50 տոկոսն ընդգրկված է քաղաքական ուսուցման օղակներում։

Քաղաքական ուսուցման մեջ հիմնական ուշադրությունը նվիրվում է սեմինարային ձևին. կուսակցական ուսուցման սիստեմում գործում է 178 տեսական սեմինար, կոմերիտական ուսուցման սիստեմում՝ 82։ Մեծ կարևորություն է տրվում թեմատիկայի ճիշտ ընտրությանը։ Ուսումնասիրության հիմնական թեման են դարձել տնտեսագիտության պրոբլեմները, տվյալ մասնագիտության, փիլիսոփայության հարցերը, ինչպես և՝ գիտա-հետազոտական աշխատանքի մեթոդոլոգիական խնդիրները։

Տնտեսագիտական ուսմունքը կուսակցությունը համարում է գիտա-տեխնիկական մտավորականության գիտական աշխարհայացքի ձևավորման կարևորագույն միջոցներից մեկը։ ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Աշխատավորների տնտեսագիտական կրթությունը բարելավելու մասին» որոշումից հետո կուսկազմա-



կերպությունները վերակառուցեցին կուսակցական քաղաքական ուսուցման սիստեմը, կազմակերպեցին տնտեսագիտական սեմինարներ, խմբակներ և դպրոցներ։ Եթե նախորդ ուսումնական տարում քաղուսուցման մեջ ընդգրկվածների 23 տոկոսն էր ուսումնասիրում տնտեսագիտության և գիտա-տեխնիկական հեղափոխության պրոբլեմները, ապա նոր ուսումնական տարում՝ 52 տոկոսը։ Տեսական սեմինարներից 50-ի ունկնդիրներն ուսումնասիրում են գիտության տարբեր բնագավառների տնտեսագիտական, փիլիսոփայական, մեթոդոլոգիական հարցերը, իսկ 21-ը՝ ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը։ Ընդ որում, օգտագործվում են ուսումնասիրման ավելի ակտիվ ձևեր. ունկնդիրները նախապատրաստում են ռեֆերատներ, ծանոթանում լավագույն ձեռնարկությունների գործունեությանը, կատարում կոնկրետ հանձնարարություններ։

Հատկապես մեծ ուշադրություն է նվիրվում քաղուսուցման ամբողջ սիստեմի, մասսայական պրոպագանդայի կազմակերպման միջոցով համագումարի նյութերի և որոշումների ուսումնասիրությանն ու կենսագործմանը։ 15 կազմակերպություններում (պետպլանի հաշվողական կենտրոն, տնտեսագիտության, արվեստի, փիլիսոփայության և իրավունքի, գրականության, լեզվի, «Հայհիդրոնախագիծ» ինստիտուտներ) անցկացվել են տեսական, գիտապրակտիկ արդյունավետ կոնֆերանսներ։ Առանձնապես արժե հիշատակել Շահումյանի շրջանում գիտա-հետազոտական ինստիտուտների աշխատողների համար կազմակերպված գիտապրակտիկ կոնֆերանսը։

Քաղաքական-գաղափարական աշխատանքի կազմակերպման դրական շատ օրինակներ կան։ Պարապմունքները բարձր մակարդակով են անցնում գիտությունների ակադեմիայի ֆիզիկայի ինստիտուտում։ Այստեղ գործող տեսական սեմինարում ունկնդիրներն ուսումնասիրում են ժամանակակից ֆիզիկայի փիլիսոփայական պրոբլեմները՝ Վ. Ի. Լենինի Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ աշխատության լույսի տակ։ Սեմինարի ղեկավարն է ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Գր. Ղարիբյանը, որը փորձառու պրոպագանդիստ է։ Թեմայի հարցերը նա բաժանում է ունկնդիրների միջև, հանձնարարում համապատասխան գրականություն։ Վերջիններս պատրաստում են ռեֆերատներ, և պարապմունքի ժամանակ տեղի է ունենում աշխույժ բանավեճ։ Բովանդակալից պարապմունքն ունկնդիրների մեջ առաջացնում է մեծ հետաքրքրասիրություն ուսումնասիրվող թեմայի հանդեպ։ Հատկանշական է ունկնդիրների կազմը. նրանցից 24-ը ունեն գիտական կոչում և աստիճան։ Նրանք հայտնի ֆիզիկոսներ են. Յու. Օրլովը, Հ. Վարդապետյանը՝ Հայաստանի ԳԱ թղթակից-անդամներ են, Ա. Ալիխանյանը՝ ՍՍՀՄ ԳԱ թղթակից-անդամ, Ս. Մատինյանը, Գ. Խարիտոնովը և մյուսները՝ դոկտորներ։

Տեսական բարձր մակարդակով են անցնում պարապմունքները մաթեմատիկական հաշվիչ մեքենաների գիտա-հետազոտական ինստիտուտում։ Այստեղ տեխնիկական գիտությունների թեկնածու Ա. Բաբաջանյանի ղեկավարած արտադրության էկոնոմիկայի հարցերն ուսումնասիրող սեմինարի պարապմունքներին ունկնդիրները մասնակցում են ակտիվորեն, հանձնարարված նյութը լավ յուրացրած։ Բովանդակալից են անցկացնում սեմինարի պարապմունքները նաև պրոպագանդիստներ Կ. Հակոբյանը և Մ. Երեմյանը։ Տնտեսագիտությունն իրենց արտադրության հետ կապելու հարցերին մեծ ուշադրություն են նվիրում կոմպլեքսային էլեկտրասարքավորումների համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտի պրոպագանդիստները։ Այստեղ 13 սեմինարներից 10-ը ուսումնասիրում են գիտա-տեխնիկական առաջընթացի, 2-ը՝ արտադրու-



digitised by A.R.A.R.@

*թյան գիտական կազմակերպման հարցերը: Պրոպագանդիստական արդյունա-
վետ աշխատանքով աչքի է ընկնում ինստիտուտի լաբորատորիայի վարիչ
Գ. Դավթյանը: Էներգետիկայի ինստիտուտի դիրեկտոր, ՀՍՍՀ ԳԱ թղթակից-
անդամ Հ. Ադոնցի ղեկավարած էներգետիկայի տնտեսագիտական հարցերին
նվիրված սեմինարի ունկնդիրներից շատերն իրենց ռեֆերատներում թեմայից
բխող տեսական, ինչպես նաև գործնական վերլուծություններ են անում: Ար-
դյունավետ պարապմունքներ են անցկացնում ԳԱ լեզվի ինստիտուտի դիրեկ-
տոր, ՀՍՍՀ ԳԱ թղթակից-անդամ Գ. Ջահուկյանը, ուսուցիչների կատարելա-
գործման ինստիտուտի դիրեկտոր, դոցենտ Մ. Շախուլյանը, մանկաբարձու-
թյան և գինեկոլոգիայի ինստիտուտի լաբորատորիայի վարիչ Թ. Հակոբյանը:
Հաջող է գործում էլեկտրավակուումային ապակու մասնաճյուղի փիլիսոփայու-
թյան պրոբլեմներն ուսումնասիրող սեմինարը, որը ղեկավարում է մասնա-
ճյուղի դիրեկտոր, տեխնիկական գիտությունների դոկտոր Կ. Կոստանյանը:
Միկրոբիոլոգիայի, փիլիսոփայության և իրավունքի, կուրորտոլոգիայի և ֆի-
զիոթերապիայի, մաթեմատիկայի, «Հայարդնախագիծ», բուսաբանական ինս-
տիտուտների կուսակցական ուսուցման մեթոդոլոգիական և պրոբլեմային սե-
մինարները գիտական աշխատողների գաղափարական կոփման իսկական
միջոցներ են: Այստեղ գովելին այն է, որ դրանք հիմնականում ղեկավարում
են կոլեկտիվների ղեկավարները:*

*Սակայն գիտա-տեխնիկական մտավորականության շրջանում տարվող
քաղաքական-գաղափարական աշխատանքի վերլուծությունը ցույց է տալիս,
որ առանձին հիմնարկությունների կուսկազմակերպություններ դեռևս անհրա-
ժեշտ հետևողականությամբ չեն զբաղվում այդ գործով, համապատասխան
միջոցներ չեն ձեռնարկում եղած թերությունները վերացնելու համար: Կազմա-
կերպությունների մեծ մասը չունի գաղափարական աշխատանքի կազմակերպ-
ման հեռանկարային, նպատակային պլաններ: Ունկնդիրների տեսական գիտե-
լիքների ուսուցումը որոշ տեղերում չի կապվում արտադրական խնդիրներին:
Կազմակերպությունների մի մասում ունկնդիրները կանոնավոր կերպով չեն
մշակում հանձնարարված գրականությունը, իսկ որոշ մասում գրականության
վրա աշխատում են միայն նրանք, ովքեր հաջորդ պարապմունքում ռեֆերատ
ընթերցելու հանձնարարություն են ստանում: Մի շարք կազմակերպություննե-
րում (սիլիկատների, օրգանական քիմիայի, մետաղահատ հաստոցների, «Հայ-
հիդրոնախագիծ» ինստիտուտներ, տեխնոլոգիական սարքավորումների կոնս-
տրուկտորական բյուրո և այլն) ունկնդիրները չեն մշակում գրականությունը,
սեմինարները կրում են հայեցողական զրույցի բնույթ: Արվեստի ինստիտուտի,
«Էլեկտրանախագիծ» ինստիտուտի հայկական բաժանմունքի, կաբելային ար-
դյունաբերության գիտահետազոտական ինստիտուտի Երևանի մասնաճյուղի և
այլ կազմակերպություններում կարդացած ընթացիկ դասախոսությունները
համարում են սեմինար պարապմունքներ:*

*Մի՞թե ուսուցման նկատմամբ ձևական մոտեցում չէ, երբ առանձին պրո-
պագանդիստներ և ունկնդիրներ, հրապուրվելով արտաքին քաղաքական ին-
ֆորմացիայով (որը թերևս կարելի է մասսայական ինֆորմացիայի այլ աղ-
բյուրներով լրացնել), այն համարում են տեսական պատրաստականության
միակ հնարավոր ձևը և չեն ուսումնասիրում իրենց հետազոտած գիտության
փիլիսոփայական, մեթոդոլոգիական հարցերը:*

*Տնտեսագիտական կրթությունը և ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերի ու-
սումնասիրությունը զուգահեռ միևնույն կազմակերպությունում կարելի է*



*ստեղծել արտաքին քաղաքականությունն ուսումնասիրող սեմինարներ, սա-
կայն դրանք դարձյալ պետք է ունենան որոշակի թեմատիկ պլան և գրակա-
նության հանձնարարական: Արտաքին քաղաքականության հարցերի ուսումնա-
սիրությանը չպետք է տալ սովորական քաղաքական ագիտացիայի կամ ինֆոր-
մացիայի բնույթ, ինչպես հաճախ դա արվում է:*

*Ուսուցման նկատմամբ ձևական ամեն մի մոտեցում վնասում է գործին:
Նոր ուսումնական տարում էլ որոշ տեղերում սահմանվածից ավելի ունկնդիր-
ներ են ընդգրկում միևնույն սեմինարում, որը նվազեցնում է ուսուցման ար-
դյունավետությունը: Արդյոք կարո՞ղ է տեսական նյութի բավարար ուսուցման
մասին խոսք լինել, երբ մի շարք ինստիտուտների տեսական սեմինարներում
ընդգրկված է 40—50-ական մարդ:*

*Կուսակցական ուսուցման հաջողության համար լուրջ նշանակություն ունի
պրոպագանդիստների ճիշտ ընտրությունը: Գիտա-հետազոտական հիմնարկու-
թյունների կուսկազմակերպությունները լուրջ ուշադրություն են նվիրել այդ
գործին: Պրոպագանդիստների 70 տոկոսն ունի գիտական կոչում և աստիճան.
նրանցից 13-ը հանրապետության գիտությունների ակադեմիայի անդամներ և
թղթակից-անդամներ են, 22-ը՝ դոկտորներ և պրոֆեսորներ, մյուսները՝ գիտու-
թյան թեկնածուներ և դոցենտներ: Ընթացիկ ուսումնական տարում պրոպա-
գանդիստների կազմում կատարվել են որոշ փոփոխություններ: Նրանցից 25-ին
առաջին անգամ է հանձնարարվել այդ գործը: Պրոպագանդիստների 50 տո-
կոսը գիտական և նախագծային հիմնարկությունների ղեկավարներն են: Այս
իրողությունը բխում է ՍՄԿԿ Կենտկոմի 1972 թ. «Ղեկավար աշխատողների
մասնակցությունը աշխատավորական կոլեկտիվների քաղաքական դաստիա-
րակությանը» որոշումից:*

*Ճիշտ է, պրոպագանդիստների մեծ մասը գիտաշխատողներ են, սակայն
կարիք ունեն տեսական-մեթոդական պատրաստության: Ուսումնասիրությունը
ցույց է տալիս, որ նրանցից ոմանք չեն մտահոգվում իրենց քաղաքական-
տեսական աճով, կարծում են, թե իրենց գիտելիքները բավարար են տեսա-
կան սեմինար ղեկավարելու համար: Դրա պատճառով պարապմունքներն անց-
նում են տաղտուկ, ունկնդիրները պասիվ են մասնակցում նյութի քննարկ-
մանը: Զարմանալի չէ, որ ունկնդիրներից ոմանք պատճառաբանում են, որ
պրոպագանդիստը շատ ընդհանուր է խոսում, ասում է այն, ինչ իրենց հայտնի
է բուհերից: Երբեմն էլ հաշվի չի առնվում ունկնդիրների պատրաստականու-
թյան մակարդակը: Առանձին հիմնարկություններում ղեկավար աշխատողնե-
րից ոմանք ցուցակագրվում են որպես ունկնդիրներ, սակայն սեմինար պա-
րապմունքներին չեն ներկայանում: Ոմանք էլ համարվում են անհատական
պլանով ուսումնասիրողներ, բայց իրականում ոչինչ չեն անում:*

*Կոմունիստների և անկուսակցականների գաղափարական դաստիարակու-
թյունը և տեսական պատրաստականությունը չեն սահմանափակվում միայն
քաղաքական ուսուցմամբ: Նրանցից շատերն ընդգրկված են ուսուցման այլ
ձևերում: Կուսկազմակերպությունների պարտքն է նրանց համար ստեղծել լա-
վագույն պայմաններ, հետևել քաղաքական կրթությանը: Մինչդեռ այս ասպա-
րեզում էլ նկատվում են լուրջ թերություններ: Այսպես, առանձին կուսկազ-
մակերպություններ (ֆիզիկայի ինստիտուտ, Սարատովի նախագծային ինստի-
տուտի Երևանի բաժանմունք և այլն) չեն հետևում մարքսիզմ-լենինիզմի հա-
մալսարան գործուղած կոմունիստների ուսուցմանը: Կուսակցական ու կոմե-
րիտական որոշ կազմակերպություններ չեն զբաղվում երեկոյան և հեռակա*



digitised by A.R.A.R.@

ուսումնական հաստատություններում սովորող իրենց աշխատակիցների առաջադիմության հարցերով։ Գիտա-հետազոտական և նախագծային ինստիտուտների 1700 սովորողներից մոտ 300-ը կոմունիստներ են, հատկապես մեծ է անասնաբուծական և անասնաբուժական, ընդհանուր և անօրգանական քիմիայի, պոլիմերների գիտահետազոտական ինստիտուտների ուսանողների թիվը, սակայն նրանց կուսակցական բյուրոները չեն քննարկել իրենց սովորողների ուսման, հատկապես հասարակագիտական առարկաների առաջադիմության հարցերը։ Անտարբերության հետևանք է նաև այն, որ աշխատող 123 կոմունիստների (հատկապես «Հայհիդրոնախագիծ», նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտներ և այլն) տարիքի կամ հիվանդության պատրվակով ազատել են քաղաքական ուսուցման պարապմունքներից։ Մինչդեռ կոմունիստներն աշխատանքին զուգընթաց պարտավոր են զբաղվել նաև իրենց գաղափարական մակարդակի բարձրացմամբ։

Գիտա-հետազոտական հիմնարկությունների կուսկազմակերպությունները գաղափարական-քաղաքական աշխատանքի ոլորտից դուրս են թողել անկուսակցական աշխատողների ճնշող մասին։ Միայն դրանով կարելի է բացատրել, որ սրտաբանության և կուրորտոլոգիայի, «Հայտրանսնախագիծ», բիոքիմիայի, «Էներգոցանցնախագիծ», մետաղահատ հաստոցների փորձնական գիտա-հետազոտական ինստիտուտների շատ աշխատողներ չեն ընդգրկվել քաղաքական ուսուցման և մասսայական պրոպագանդայի ձևերում։ Նրանց որոշ մասը միայն մասնակցում է ինստիտուտում երբեմն կազմակերպվող դասախոսություններին։ 200 և ավելի աշխատողներ ունեցող 22 կազմակերպությունից յուրաքանչյուրում, հատուկենտ սեմինարներից ու լեկտորիումներից բացի, սիստեմատիկ գաղափարական աշխատանք չի տարվում, չեն կազմակերպվում թեմատիկ միջոցառումներ։ Մի շարք տեղերում ստեղծված ժողովրդական համալսարանները կրում են ձևական բնույթ, չունեն թեմատիկ ուղղություն։ Անբավարար է դասախոսական պրոպագանդայի կազմակերպումը. գիտական և նախագծային 27 կազմակերպություններում տարվա ընթացքում կարդացվել է ընդամենը 2—3 դասախոսություն։ Կազմակերպությունների ճնշող մասում չի կազմվում կարդացվելիք դասախոսությունների թեմատիկան, մեծ մասամբ բավարարվում են միայն «Գիտելիք» ընկերության առաջարկած առանձին թեմաներով։

Բավարար չէ քաղաքական ինֆորմացիայի դրվածքը։ Քաղաքի միայն ինը գիտա-հետազոտական և նախագծային հիմնարկություններում են աշխատում քաղինֆորմատորները, այն էլ ոչ կանոնավոր։ 50 կազմակերպությունում քաղինֆորմացիա չի անցկացվում։ Կազմակերպություններից 26-ում շարունակում են կիրառել ագիտացիայի հին ձևը։ Ռադիոսարքերի կոնստրուկտորական բյուրոների բաժիններում բարձրագույն կրթություն ունեցողների համար նշանակված են ագիտատորներ, այդ կարգով դեռևս ագիտացիոն աշխատանք են կազմակերպում նաև մանկաբարձության և գինեկոլոգիայի, ջրային պրոբլեմների և հիդրոտեխնիկայի ինստիտուտների, կոմպլեքսային էլեկտրասարքավորումների համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտի հատուկ կոնստրուկտորական բյուրոյի և մի շարք այլ կուսկազմակերպություններ։

Քաղաքական կրթությամբ զբաղվելը, մարքս-լենինյան տեսության ուսումնասիրումը կոմունիստների յուրահատուկ հաշվետվությունն է կազմակերպության առջև։ Քաղաքական աշխատանքը պետք է նպաստի կոմունիստների ակտիվության զարգացմանը, աշխատանքի որակի բարելավմանը, ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների անթերի իրագործմանը։

---



# ԿՈՒՍԿՈՄԻՏԵՆ ԵՎ ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ՌԵԺԻՄԸ

Ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյակի ծրագիրը հաջողությամբ իրականացնելու համար անհրաժեշտ է ո՛չ միայն նշանակալիորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, այլև հետևողականորեն կիրառել խնայողության ռեժիմը, ամրապնդել աշխատանքային կարգապահությունը, վերացնել բոլոր տեսակի պարապուրդներն ու ժամանակի կորուստները։ ՍՄԿԿ XXIV համագումարը խնայողության ռեժիմը համարեց հանրային արտադրության արդյունավետության բարձրացման ուղիներից մեկը։ Համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց, որ արտադրության արդյունավետության բարձրացման աշխատանքը պետք է տարվի մի քանի ուղղություններով։ Դրանցից մեկը նյութատարության իջեցումն է, հումքի և նյութերի խնայողությունը։ «Երկրում թողարկվող արտադրանքի նյութատարության միայն մեկ տոկոսի իջեցումը,— ասաց նա, — համասարազոր է ազգային եկամտի 3—4 միլիարդ ռուբլի լրացուցիչ աճին» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 77)։

ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրների լուծմանն է ուղղված «1973 թվականի ժողովրդատնտեսական պլանը ժամկետից շուտ կատարելու համար արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը։ Այդ որոշմամբ պահանջվում է 1973 թվականին սոցիալիստական մրցությունն անցկացնել ավելի պակաս ծախսումներով ավելի շատ ու լավորակ արտադրանք տալու լոզունգով, մրցողների ջանքերն ուղղել աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման, արտադրության և աշխատանքի կազմակերպումը կատարելագործելու, գործող սարքավորումներն առավել լիակատար չափով օգտագործելու, հումքը, նյութերը, էլեկտրաէներգիան, վառելիքն ըստ ամենայնի խնայելու և դրա հաշվին արտապլանային արտադրանք թողարկելու նպատակին։

Այս որոշման լույսի տակ հետադարձ հայացք նետելով էլեկտրալամպերի գործարանի արտադրական կոլեկտիվի ու կուսկազմակերպության գործունեությանը՝ կարող ենք ասել, որ խնայողության ռեժիմը միշտ գտնվել է ուշադրության կենտրոնում։ Մեր ձեռնարկության համար աշխատանքային ու նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումն ունի վճռական նշանակություն։



digitised by A.R.A.R.@

Այն մեզ մոտ ևս արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր ցուցանիշ է։

Կուսկոմիտեն և արտադրամասային սկզբնական կուսկազմակերպությունները պարբերաբար ուսումնասիրում և իրենց նիստերում ու ժողովներում քննարկում են խնայողության ռեժիմին նվիրված զանազան հարցեր, ինչպես օրինակ, նյութերի և կիսաֆաբրիկատների օգտագործումը, խնայողության ռեժիմի կիրառման գործում վարպետի դերը, նյութերի օգտագործման ասպարեզում եղած առաջավոր փորձի մասսայականացումը, տնտեսական հաշվարկի կիրառումը գործարանում։

Կուսկոմիտեն ու կուսբյուրոները հետևողականություն են ցուցաբերում խնայողության ռեժիմի վերաբերյալ ընդունված որոշումների կատարման նկատմամբ։ Միայն ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի՝ «Արտադրության ռեզերվների օգտագործումը բարելավելու և ժողովրդական տնտեսության մեջ խնայողության ռեժիմն ուժեղացնելու մասին» նամակի առթիվ ընդունված որոշման կատարման ընթացքին անդրադարձել ենք երեք անգամ։ Հաջողությամբ ենք կատարում խնայողության ռեժիմի ամրապնդման նպատակով մշակված կոմպլեքս միջոցառումների պլանը։

Անցած տարի հունվարին կուսկոմիտեն հանդես եկավ աշխատաժամանակի առավել արդյունավետ օգտագործման և աշխատանքի արտադրողականության բարձրացման նախաձեռնությամբ։ Դա ծնվեց նյութական միջոցների արդյունավետ օգտագործման մրցույթի 1971 թ. արդյունքները կուսկոմիտեի նիստում քննարկելիս։ Այս նախաձեռնությունը նոր մրցույթի կազմակերպման առիթ ծառայեց։ Դրա պայմանների մշակմանն ակտիվորեն մասնակցեց կոմունիստ Ա. Արզումանյանը։ Այս խնդիրների լուծումը մեզ մոտ հույժ անհրաժեշտություն է, որովհետև աշխատանքի արտադրողականության մեկ տոկոսի բարձրացմամբ ձեռնարկությունը տարեկան կտնտեսի 270 հազար ռուբլի, իսկ մեկ րոպե աշխատաժամանակի կորուստը հավասար է 111 ռուբլու արտադրանքի։

Կուսկոմիտեն մշտապես մոբիլիզացնում է կոլեկտիվի անդամներին, բարձրացնում կուսակցական ու հասարակական կազմակերպությունների պատասխանատվությունը՝ հումքի, նյութերի ու կիսաֆաբրիկատների խնայողաբար օգտագործման և պահպանման համար, բացահայտում այդ ասպարեզում եղած թերությունները, միջոցներ ձեռնարկում վերացնելու դրանք։ Այսպես, երկար ժամանակ պարույրների արտադրամասը տալիս էր վոլֆրամի լարերի գերածախս, թողարկում ցածրորակ արտադրանք, վատ էր կատարում հավաքման արտադրամասերի սպասարկումը, չէր ապահովում նրանց համաչափ աշխատանքը։ Կուսկոմիտեն քննարկեց այդ հարցը և արտադրամասի կուսկազմակերպության ու կոլեկտիվի ուշադրությունը բևեռեց խնայողության ռեժիմի անշեղ կիրառման, եղած ռեզերվների արդյունավետ օգտագործման վրա։

Կուսկոմիտեի որոշումից հետո արտադրամասի կուսկազմակերպությունը, ադմինիստրացիայի և հասարակական կազմակերպությունների հետ միասին, վճռական պայքար մղեցին տեխնոլոգիական պրոցեսներում առաջացած կորուստների դեմ։ Ստեղծվեց ավելի մատչելի հաշվառման ձև, որից երևում է, թե որտեղ է առաջացել խոտանը և ինչպես պետք է կանխել այն։ Բարձրացվեց յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվությունն իր գործի ճիշտ կատարման համար։ Արտադրամասում ներդրվեցին պարույրների կտրման մեքենա-



ներ, որոնք հնարավորություն տվեցին ապահովել հավաքման արտադրամա-
սերի համաչափ աշխատանքը։ Կորուստներ լինում էին նաև պարույրների
քայքայման տեղամասում։ Այստեղ նույնպես մշակվեց հաշվառման նոր ձև՝
կապված հավելյալ վարձատրության հետ, միաժամանակ կազմակերպվեց մեկ
հերթափոխային աշխատանք, որը տվեց իր դրական արդյունքը։ Ներկայումս
այդ արտադրամասը գործարանի լավագույն օղակն է, տնտեսում է նյութերը,
ապահովում հավաքման արտադրամասերի անխափան, անընդմեջ աշխատան-
քը՝ թողարկում բարձրորակ արտադրանք։ Այդ արտադրամասի էլեկտրոդների
տեղամասը գործարանում առաջավոր է, բազմիցս հանդես է եկել նյութերի
խնայողաբար օգտագործման նախաձեռնությամբ։ Սկսած 1970 թ. դրա կոլեկ-
տիվը յուրաքանչյուր տարի 2 օր աշխատում է խնայված նյութերի հաշվին՝
նվիրելով այն կուսակցության ու ժողովրդի կյանքում տեղի ունեցող ամենա-
նշանակալի իրադարձություններին, տարելիցներին։
Հումքի և նյութերի խնայողության մասին կուսկոմիտեի համանման որո-
շումից անհրաժեշտ հետևություն են արել նաև ցոկոլների արտադրամասի
կուսկազմակերպությունն ու ադմինիստրացիան։ Պատահական չէ, որ 1971 թ.
արվեց 23 նորարարական առաջարկություն, որոնցից 14-ը ներդրվեց արտա-
դրության մեջ և գործարանին տվեց 35.960 ռուբլու պայմանական օգուտ։ Նոր
տեխնիկայի ներդրումը դարձավ կոլեկտիվի առաջնակարգ խնդիրներից մեկը,
արտադրամասն անցավ տնտհաշվարկին։ Այստեղ ինժեներա-տեխնիկական
անձնակազմի պարգև-հավելումը կապվեց նյութերի ծախսի հետ, բարձրացվեց
կոլեկտիվի անդամների պատասխանատվությունը։ Այս միջոցառումները հնա-
րավորություն ընձեռեցին կոլեկտիվին ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի պատ-
վին ստանձնել բարձր պարտավորություն. խնայված նյութերի հաշվին ավտո-
եռակցման և ավտոմատների տեղամասերն աշխատեցին երկու օր։ Արտադր-
մասի ղեկավարությունը դիմեց գործարանի ղեկավարությանը՝ իջեցնել նյու-
թերի ծախսի նորմաները։
Կուսկոմիտեի և կուսբյուրոների հետևողական գործունեության շնորհիվ
խնայողության ասպարեզում ավելի բարձր ցուցանիշներ են նվաճել նորմալ լուսա-
վորման, լյումինեսցենտային, հատուկ լամպերի հավաքման և ապակու ար-
տադրամասերի կոլեկտիվները։ Նորմալ լուսավորման լամպերի հավաքման
արտադրամասն ինքնարժեքի իջեցման հաշվին, նախորդ տարվա ինն ամսվա
համեմատությամբ, 1972 թ. նույն ժամանակամիջոցում խնայել է 16 հազար
ռուբլի և մեկ ռուբլու ապրանքային արտադրանքի վրա կատարվող ծախսերը
կրճատել 1,5 կոպեկով։ 1972 թ. հունվարից սկսած 1000 լամպի համար օգ-
տագործվող ապակյա կիսաֆաբրիկատների նորման պակասեցվել է 20 հատով։
1971 թ. առաջին ինն ամիսների համեմատությամբ, հաջորդ տարի նյութերի
ու կիսաֆաբրիկատների խնայողությունից ստացվեց 11 հազար ռուբլու օգուտ։
Արտադրամասում խնայողաբար են աշխատում և նյութերն ու կիսաֆաբրի-
կատները ռացիոնալ են օգտագործում կոմունիստներ Ա. Դալաքյանի, Պ. Քա-
լաշյանի, Հ. Գարաչյանի, Ա. Դիլոյանի և Հ. Խեչումյանի և անկուսակցական-
ներ Վ. Միքայելյանի, Լ. Մարգարյանի, Գ. Գալստյանի ղեկավարած բրիգա-
դները։ «Ա» հերթափոխության Պ. Քալաշյանի ղեկավարած բրիգադայի
խնայողությունը կազմում է 2509, «Մ» հերթափոխության Լ. Մարգարյանի
բրիգադայինը՝ 2110 ռուբլի։ Այս բրիգադաների մեծ մասը յուրաքանչյուր
ամսվա մեկ օրն աշխատում է խնայված կիսաֆաբրիկատների հաշվին։ Ար-



digitised by A.R.A.R.@

տադրամասում 15 կարգավորողներ անցել են բազմահաստոցային սպասարկման, որից արտադրամասը տարեկան տնտեսում է 16.200 ռուբլի։

Ըստ գործարանի հիմնական նախազգուշական նորոգման (ՊՊՐ) գրաֆիկի՝ յուրաքանչյուր հոսքային գիծ պետք է տարեկան մեկ անգամ ենթարկվի հիմնական նորոգման։ Բայց արտադրամասի մի շարք կարգավորողների կողմից մեքենաների լավ շահագործման ու խնամքի շնորհիվ՝ հիմնական նորոգումներն առանձին գծերում (№ № 1, 2, 12, 14, 18 և այլն) կատարվում են երկու տարին մեկ անգամ։ Միայն այդ գծերի նորոգումներից խնայված գումարը կազմում է մոտավորապես 45 հազար ռուբլի։

Հատուկ լամպերի հավաքման արտադրամասի կուսկազմակերպությունն ու ադմինիստրացիան մշակել են մի շարք միջոցառումներ խնայողության ռեժիմի իրագործման համար։ Դրանցից ամենանշանակալին բրիգադների ստացած նյութերի ու կիսաֆաբրիկատների ծախսի նկատմամբ հսկողության սահմանումն է. յուրաքանչյուր բրիգադա պահեստից ստանում է իր նախորդ օրվա տված արտադրանքին համապատասխան նյութեր։ Եթե բրիգադան ստացած կիսաֆաբրիկատի դիմաց գործարանային նորմաներին համապատասխան արտադրանք չի տալիս, ապա դա դառնում է քննարկման առարկա, պարզվում է գերածախսով աշխատելու պատճառը, հետևաբար, և վերացվում է այն։ Այդ միջոցառումը շատ արդյունավետ եղավ. յուրաքանչյուր ամիս արտադրամասը զգալիորեն տնտեսում է նյութերը և կիսաֆաբրիկատները։ 1972 թ. 9 ամսում այն հասավ 12 հազար ռուբլու, իսկ ինքնարժեքն իջավ 13,5 տոկոսով։

Խնայողության խստագույն ռեժիմ կիրառելու շնորհիվ նյութերը մշտապես տնտեսում են ստարտյորների տեղամասի կոմունիստներ Ս. Մեծոյանի, Ս. Սմբատյանի, Վ. Հովհաննիսյանի և ուրիշների ղեկավարած բրիգադները։

Լյումինեսցենտային արտադրամասում կուսկազմակերպության և ադմինիստրացիայի նախաձեռնությամբ, խնայողության ռեժիմի ուժեղացման նպատակով, ստեղծվել է հանձնաժողով, որը քննարկում է բանվոր-ծառայողներից ստացվող առաջարկությունները, ընթացք տալիս դրանց։ Արտադրամասի կոլեկտիվը մեկ ռուբլու ապրանքային արտադրանքին ընկնող ծախքերը 1972 թ. առաջին 10 ամսում պակասեցրել էր 3,2 կոպեկով։ Խնայողության նպատակով այստեղ կիրառում են տարբեր միջոցներ։ Այսպես, մեծ հզորության լամպերի խոտանված խողովակները վերականգնվում և օգտագործվում են ավելի փոքր հզորության լամպերի համար։ Միայն այս միջոցառման ներդրումից նույն ժամանակամիջոցում տնտեսվել է ԴՍ—20 տիպի 850 հազար խողովակ՝ 30 հազար ռուբլի գումարով։ Առանձնապես նշանակալի հաջողությունների են հասել «Ա» հերթափոխի՝ կոմերիտական Գ. Ղազարյանի և «Մ» հերթափոխի՝ կոմունիստ Ռ. Հարսաթյանի ղեկավարած բրիգադները։ Նրանք 1972 թ. առաջին երեք եռամսյակում, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, համապատասխանորեն ավելի են արտադրել 198,3 և 182,8 հազար լամպ և 1000 լամպի վրա կիսաֆաբրիկատների փաստացի ծախսը կրճատել 20—30 տոկոսով։

Խնայողության ռեժիմի կիրառման նկատմամբ վերահսկողությունն իրականացնելուց զատ, մեր արտադրամասային կազմակերպությունները հանդես են գալիս լավ նախաձեռնություններով։ Կազմակերպվեց «Արտադրության ռեզերվների արդյունավետ օգտագործման և խնայողության ռեժիմի ուժեղացման» ստուգատես-մրցույթ, որն ընթացավ այդ առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի նամակի պահանջ-



ների անշեղորեն կատարելու նշանաբանով։ Մրցույթը նպաստեց արտադրամասերում ու տեղամասերում ներքին ռեզերվների հայտնաբերմանն ու օգտագործմանը, նյութերի ու էլեկտրաէներգիայի տնտեսմանը։

«Հայէլեկտրալույս» միավորման մասշտաբով անցկացված այս մրցույթստուգատեսի ընթացքում հատկապես լավ արդյունքի հասավ էլեկտրալամպերի գործարանը։ Ստուգատեսին մասնակցում էր աշխատողների 95,8 տոկոսը։ Նրանք հանդես եկան ավելի քան 550 առաջարկությամբ, որոնց ներդրումից յուրաքանչյուր 100 բանվորի տված օգուտը կազմեց 19 հազար ռուբլի։ Մեր գործարանում առավել նշանակալի հաջողության հասավ պարույրների արտադրամասի կոլեկտիվը։ Այստեղ յուրաքանչյուր 100 մարդուն ընկնում է 20 առաջարկություն, որոնցից արտադրության մեջ ներդրվել է 18-ը, ընդհանուր տնտեսական օգուտը կազմում է 37 հազար ռուբլի։ Ցոկոլների արտադրամասում ստուգատեսին մասնակցել է աշխատողների 96 տոկոսը։ Յուրաքանչյուր 100 աշխատողի տված տնտեսական օգուտը կազմում է 25,6 հազար ռուբլի։ Լավ արդյունք տվեց նաև ներգործարանային ստուգատես-մրցույթը։

Գործարանում հայտարարվեց նաև նոր տեխնիկայի ներդրման, աշխատաժամանակի արդյունավետ օգտագործման և աշխատանքի արտադրողականության բարձրացման ստուգատես-մրցույթ՝ նվիրված ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին։ Գործարանը մասնակցել է էլեկտրաէներգիայի տնտեսման գծով հանրապետության ձեռնարկությունների միջև ծավալված սոցիալիստական մրցությանը և արժանացել երկրորդ կարգի դրամական մրցանակին։ Դրա շնորհիվ 1972 թ. ինն ամսում տնտեսվել է 864 հազար կվտ/ժամ էլեկտրաէներգիա և 3.128 տոննա պայմանական վառելիք։

Կուսկոմիտեն մեծ ուշադրություն է նվիրում կազմտեխմիջոցառումների ժամանակին իրականացմանը։ Ինչպես կուսկոմիտեում, այնպես էլ արտադրամասային կուսկազմակերպություններում եռամսյակը մեկ անգամ ամփոփվում են նոր տեխնիկայի ներդրման ստուգատես-մրցույթի արդյունքները։ Այս մըրցույթը ևս խնայողության լավագույն աղբյուր է։ Նորույթների ներդրման միջոցով զգալի չափով նվազել են խոտանը, նյութական կորուստները, արտադրողականության բարձրացմամբ վերացել է լրացուցիչ կարողությունների գործարկման անհրաժեշտությունը։

Նոր տեխնիկայի ներդրման գործում վճռական դեր է խաղում նաև մեր հատուկ կոնստրուկտորական բյուրոյի կոլեկտիվը։ Կարելի է վստահ ասել, որ այսօր մեր պայմաններում առանց գիտության ու տեխնիկայի և արտադրության փոխադարձ կապի չի կարելի հասնել որոշակի հաջողությունների։ Բյուրոն մի շարք հարցեր է վճռում մեր հանրապետության ու Միության առաջավոր 12 գիտահետազոտական և ուսումնական ինստիտուտների, ինչպես նաև հատուկ կոնստրուկտորական բյուրոների հետ։ Արտադրության մեջ նորույթների արմատավորումը հիմնականում կնպաստի խնայողության ռեժիմի կիրառմանը։

Տեխնիկա-տնտեսական խնդիրների լուծման, այդ թվում խնայողության ռեժիմի արդյունավետ կիրառման գործում կարևոր նշանակություն ունեն կադրերի ուսուցումն ու որակավորման բարձրացումը։ Կուսկոմիտեն, արտադրամասային կուսկազմակերպությունները խստորեն առաջնորդվել և առաջնորդվում են կադրերի քաղաքական, մասնագիտական ու հանրակրթական գիտելիքների բարձրացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշմամբ։ Մեր գործարանում ստեղծվել են քաղաքական, մասսայական ուսուցման բազմա-



digitised by A.R.A.R.@

թիվ ձևեր։ Ըստ խմբավորումների գործող դասընթացներում ուսուցանվում է նախատեսված ծրագիրը և տարածվում առաջավոր փորձը։ 1971—1972 թթ. պլանով նախատեսված 1178-ի փոխարեն, պատրաստվել է 1254 նոր բանվոր։ Նույն ժամանակամիջոցում, նախատեսված 1278-ի փոխարեն, իրենց որակավորումը բարձրացրել են 1416-ը։ Երկրորդ մասնագիտությանն են տիրապետել 225-ը։ Վեց հիմնական արտադրամասերում գործող առաջավոր փորձի դպրոցներում սովորել և իրենց որակավորումը բարձրացրել են 362 բանվորներ։ Այս դպրոցները լավն ու ուսանելին տարածելու, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման լավագույն միջոց են։ Հավաքման արտադրամասում Ռ. Մարտիրոսյանի ղեկավարած հոսքային գիծը մեկ հերթափոխում արտադրում էր 8000—8500 լամպ, իսկ նույն արտադրամասի առաջավոր բրիգադավար Պ. Քալաշյանի հոսքային գիծը՝ շուրջ 11 հազար։ Արտադրամասային դպրոցում 2—3 ամսվա ընթացքում ուսումնասիրելով Պ. Քալաշյանի աշխատանքային փորձը՝ Մարտիրոսյանի բրիգադան հոսքային գծի միջին ելքը հասցրեց 10.500—11.000 լամպի։ Իսկ այժմ այդ արտադրամասի բրիգադավարներ Վ. Միքայելյանի, Ի. Ումրշատյանի, Պ. Քալաշյանի և մյուսների հոսքային գծերից յուրաքանչյուրը մեկ հերթափոխում արտադրում է ավելի քան 13 հազար լամպ։ Նման բազմաթիվ օրինակներ կարելի է բերել նաև գործարանի մյուս արտադրամասերի աշխատանքային փորձից։

1966 թ. հոկտեմբեր ամսից, գործարանի դիրեկցիայի և կուսկոմիտեի նախաձեռնությամբ, կազմակերպվեց հասարակական հիմունքներով երկամյա ժողովրդական համալսարան՝ հինգ ֆակուլտետներով։ Համալսարանի ստեղծումը սերտորեն առնչված էր արտադրության պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցնելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի որոշման հետ։ Համալսարանի ուսումնական ծրագրում զգալի տեղ է հատկացված ըստ մասնագիտությունների խնայողության ռեժիմի ուժեղացմանը, այդ ասպարեզում կատարված առաջավոր փորձի ուսումնասիրմանը։ Համալսարանում կարդացվել են այդ խնդիրը շոշափող մի շարք դասախոսություններ։ Անցած տարիներին համալսարանի տնտեսագիտական ֆակուլտետը տվել է 258, իսկ մյուս՝ լուսատեխնիկայի և լույսի աղբյուրների, ապակու և սիլիկատների, էներգետիկայի և մետաղագիտության ֆակուլտետները՝ 460 շրջանավարտ։

Ինժեներա-տեխնիկական միջին անձնակազմի համար գործարանում կազմակերպվել են կարճատև դասընթացներ՝ նրանց տեխնիկական գիտելիքները հարստացնելու և որակավորումը բարձրացնելու նպատակով։ 1972 թ. տեղամասային 104 վարպետներ ու տեխնոլոգներ արտադրությունից կտրված 120-ժամյա ծրագրով իրենց որակավորումը բարձրացրել են ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության՝ ղեկավար աշխատողների և մասնագետների որակավորման բարձրացման ինստիտուտի Երևանի մասնաճյուղում։

Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիային կից Երևանի տնտեսագիտական ինստիտուտի դիրեկցիայի և մեր գործարանի ժողովրդական համալսարանի ռեկտորատի համատեղ ջանքերով մեզ մոտ անցկացվել է գիտական կոնֆերանս, որը շոշափել է նաև խնայողության ռեժիմի հարցը։ Մոսկվայի Պլեխանովի անվան տնտեսագիտական ինստիտուտի դիրեկցիայի հետ միասին անցկացրել ենք սեմինար պարապմունք՝ նվիրված արտադրության արդյունավետության բարձրացման խնդիրներին։



Նոր ուսումնական տարում է՛լ ավելի ենք բարելավել աշխատավորների տնտեսագիտական կրթության գործը։ Կոմպլեկտավորել ենք տնտեսագիտական ուսուցման 17 նոր խմբեր, որոնցում ընդգրկվել են 360 բանվորներ և ինժեներա-տեխնիկական աշխատողներ։ Հարյուրավոր բանվորներ ներգրավվել են կոմունիստական աշխատանքի դպրոցներում։ Բանվորներին ու ինժեներա-տեխնիկական աշխատողներին տնտեսական գիտելիքներով զինելը կնպաստի խնայողության ռեժիմի անշեղ կիրառմանը։

Գործարանի կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունները և դիրեկցիան որոշ փորձ են կուտակել նաև աշխատավորների արտադրական ու քաղաքական ակտիվությունը բարձրացնելու նպատակով նյութական և բարոյական խթանների ճիշտ օգտագործման ասպարեզում։ Մշակել ենք դրամական պարգևատրման սիստեմ՝ արտադրական նորմաները կատարելու և գերակատարելու, բարձրորակ արտադրանք տալու և խոտանը վերացնելու, թանկարժեք և դժվար հայթայթվող նյութերը խնայելու համար։ Աշխատանքի նյութական և բարոյական խթանման նման միջոցների կիրառումը տվել է իր դրական արդյունքը. մարդիկ աշխատում են մեծ ոգևորությամբ, պայքարում ձեռնարկության մակնիշի, աշխատանքի արտադրողականության բարձրացման, եղած ռեսուրսների խնայողաբար օգտագործման համար։

Կուսկոմիտեն և սկզբնական կուսկազմակերպությունները մեծ աշխատանք են կատարում կոլեկտիվի անդամներին նյութական և աշխատանքային ռեսուրսների խնայողաբար ծախսման ու պահպանման ոգով դաստիարակելու համար։ Գործարանում ստեղծված է ցուցադրական ագիտացիայի համակարգ. ըստ արտադրամասերի ցուցադրում ենք հումքի ու էլեկտրաէներգիայի տնտեսման, աշխատաժամանակի կորուստների կրճատման վերաբերյալ տվյալները, նշում առաջիկա պայքարի ուղիները։

Գնահատելով մեր կոլեկտիվի ձեռք բերած արդյունքները՝ հարկավոր է ասել, որ մենք դեռևս լուծման կարևոր լուրջ խնդիրներ ունենք ներտնտեսական ռեզերվների օգտագործման, արտադրական գործունեության բոլոր ասպարեզներում։ Բավական է ասել, որ գործարանում աշխատանքային ու նյութական ծախսումների 0,5 տոկոսով կրճատումը տալիս է 690 հազար ռուբլու օգուտ, մեկ րոպեում կարելի է արտադրել 616 հատ էլեկտրալամպ և ստարտյոր, 775 սրվակ ու խողովակ և այլն։ Ձեռնարկության կոլեկտիվը սոցիալիստական մրցությամբ խոստացել է ընթացիկ տարում խնայողությունների հաշվին ստանալ 350 հազար ռուբլու արտապլանային օգուտ։

Ելնելով կուսակցության և կառավարության նոր պահանջներից և իններորդ հնգամյակում արտադրական կոլեկտիվի առջև ծառացած բարդ խնդիրներից՝ կուսկոմիտեն և սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոներն այսուհետև ավելի մեծ ուշադրություն կնվիրեն խնայողության ռեժիմի ուժեղացմանը։ Այժմ մեզ մոտ ծավալված քաղաքական-կազմակերպական և բացատրական ամբողջ աշխատանքն ուղղված է մի գլխավոր նպատակի՝ կոլեկտիվի բոլոր անդամներին դաստիարակել յուրաքանչյուր րոպեն թանկ գնահատելու սովորությամբ, պայքար ծավալել նյութական և աշխատանքային կորուստների վերացման համար։

Ա. Գ. ԳՈՒՐՈՒՆՅԱՆ
Երևանի էլեկտրալամպերի գործարանի
կուսկոմիտեի քարտուղար

# ՄԵՐ ԿԱՐԵՎՈՐ ԽՆԴԻՐԸ

*Հանրապետության մյուս բուհերի հետ, ընթացիկ հնգամյակում զգալի վերելք կապրի նաև Հայկական գյուղատնտեսական ինստիտուտը, որը ներկայումս գյուղատնտեսության համար 11 մասնագիտության կադրեր է պատրաստում: Նրա ֆակուլտետներում սովորում է 3719 ուսանող: Ինստիտուտն իր գոյության 42 տարիների ընթացքում տվել է ավելի քան 10 հազար շրջանավարտ, որոնց զգալի մասն արտադրության հմուտ կազմակերպիչներ են և անբասիր աշխատանքի համար արժանացել են կառավարական շքանշանների ու մեդալների: Նրանցից 12-ին շնորհվել է սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում:*

*Օր-օրի մեծանում է գյուղատնտեսական մասնագետների դերը հանրային արտադրության գիտական կազմակերպման, նրա արդյունավետության բարձրացման գործում: Նրանք դառնում են գյուղատնտեսության վերելքի, գյուղի սոցիալ-կուլտուրական վերափոխման առաջամարտիկներ: Սովետական գյուղի առջև այժմ ծառացել են հրատապ և բարդ խնդիրներ: Կոմպլեքսային մեքենայացման, նոր, բարձր բերքատու սորտերի, նոր կերատեսակների արմատավորման, սոցիալ-կուլտուրական ծրագրի կենսագործման շահերը պահանջում են սովետական գյուղին տալ բազմակողմանի զարգացած, մասնագիտական ու քաղաքական բարձր պատրաստակամությամբ օժտված կադրեր: Անկասկած է, որ այժմյան գյուղը լավ իմացող, կոլտնտեսային ու սովխոզային արտադրությանը քաջածանոթ երիտասարդներն առավել օգտակար կլինեն մեր սոցիալիստական գյուղատնտեսությանը: Այդ պատճառով կուսկոմիտեն և ռեկտորատը կարևոր ուշադրություն են նվիրում ինստիտուտը գյուղական երիտասարդներով համալրմանը:*

*Երիտասարդության գյուղատնտեսական կրթության համար տարեցտարի ստեղծում ենք նոր, լայն հնարավորություններ: Վերջին տարիների ընթացքում ինստիտուտում կազմակերպվել են նոր ֆակուլտետներ և ամբիոններ, ավելացել են լսարանները, ստեղծվել նոր լաբորատորիաներ ու կաբինետներ, որոնք կահավորված են ժամանակակից տեխնիկական միջոցներով: Ինստիտուտի 36 ամբիոններում այժմ աշխատում են գիտության 19 դոկտորներ, պրոֆեսորներ և 125 թեկնածուներ, դոցենտներ: Նրանցից շատերն ունեն մանկավարժի ու դաստիարակի մեծ վաստակ, փորձ ու հմտություն:*

*Բարդ ու բազմակողմանի են մեր ինստիտուտի, նրա պրոֆեսորա-դասախոսական անձնակազմի առջև ծառացած խնդիրները: Դրանց լուծումը սերտորեն առնչվում է կոմունիստների, կոլեկտիվի անդամների քաղաքական*



*դաստիարակության հետ, պայմանավորված է դրա պատշաճ կազմակերպմամբ: Ահա թե ինչու քաղաքական, գաղափարական հարցերը մշտապես գտնվում են ինստիտուտի կուսկոմիտեի և ֆակուլտետային սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում:*

*Դասախոսների գաղափարական պատրաստականությունը բարձրացնելու գործում կուսկոմիտեն առանձնահատուկ նշանակություն է տալիս նրանց քաղաքական ուսուցման հաջող կազմակերպմանը: Չէ՛ որ ՍՄԿԿ XXIV համագումարը կոմունիստների գաղափարական կոփումը համարեց կուսակցության շարքերի մարտունակության բարձրացման անհրաժեշտ պայմանը և այդ գործում ընդգծեց քաղաքական ուսուցման հույժ կարևորությունը: Քաղաքական ուսուցումը հարկավոր է, որպեսզի, ինչպես ընդգծեց ընկ. Բրեժնևը համագումարում. «...կոմունիստները հաստատակամորեն տիրապետեն մարքսիզմ-լենինիզմի տեսությանը, հասարակական զարգացման օրենքների իմացությանը, կարողանան վստահորեն կողմնորոշվել կյանքի նոր երևույթների մեջ, ճիշտ գնահատական տան դրանց և գործնական ճիշտ հետևություններ անեն» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 138):*

*Կուսակցական լուսավորության ցանցի անցած ուսումնական տարում ինստիտուտում գործել են ՍՄԿԿ պատմության, քաղաքատնտեսության, փիլիսոփայության և գիտական կոմունիզմի, գյուղատնտեսության էկոնոմիկայի 10 տեսական սեմինարներ, որոնցում ընդգրկված էին 280 կոմունիստներ:*

*Յուրաքանչյուր կուսկազմակերպության գլխավոր հոգսերից մեկը պետք է լինի երիտասարդ կոմունիստների գաղափարական դաստիարակությունը, որի համար կարելի է կիրառել զանազան ձևեր ու մեթոդներ: Մեզ մոտ իրեն արդարացրած ձևերից է երիտասարդ կոմունիստի դպրոցը: Այստեղ 65 կոմունիստներ ուսումնասիրում են մեր կուսակցության ծրագիրը, լսում հետաքրքրական դասախոսություններ Սովետական Միության արտաքին և ներքին քաղաքականության հարցերի, միջազգային կարևոր իրադարձությունների մասին, պարզաբանվում են ժամանակակից կապիտալիզմի զարգացման տենդենցներն ու նոր երևույթները, հակասությունների խորացման պատճառները, ցույց է տրվում, թե ինչպիսի բարերար ազդեցություն է գործում համաշխարհային սոցիալիստական սիստեմը մարդկության ընդհանուր առաջընթացի վրա:*

*Երիտասարդ կոմունիստների դպրոցի ունկնդիրների գերակշռող մասը ուսանողներ են: Դպրոցը ոչ միայն օգնում է ունկնդիրների գաղափարական մակարդակի աճին, այլև նրանց ակտիվության զարգացմանը, օրինակելի վարքի ապահովմանը և ուսման առաջադիմության բարձրացմանը: Կոմունիստ ուսանողներն ապահովում են իրենց ավանգարդային դերը ուսման մեջ: Բավական է ընդգծել, որ տարեվերջի սեսիոն քննություններին մասնակցած 56 ուսանող կոմունիստներից ոչ մեկը չի ստացել «անբավարար» գնահատական: Նրանցից 18-ը գերազանցիկներ են: Կոմունիստ ուսանողները կուրսերում օրինակ են ծառայում մյուսներին:*

*Դասախոսական կոլեկտիվի և ուսանողության գեղագիտական դաստիարակության կարևոր միջոց է կուլտուրայի համալսարանը, որը ութերորդ տարին է, ինչ հաջողությամբ գործում է:*

*Ուսանողների կոմունիստական դաստիարակությանն է ծառայում կուրսերում ու խմբերում անցկացվող քաղաքական ինֆորմացիան: Այդ գործում ներգրավված են 54 քաղինֆորմատորներ, որոնք հիմնականում հասարակա-*



digitised by A.R.A.R.@

գիտական և մասնագիտական ամբիոնների դասախոսներ են: Ամիսը 2 անգամ նրանք կուրսերում հանդես են գալիս հետաքրքրական գիտական հաղորդումներով:

Գաղափարական աշխատանքի կարևորագույն օղակներից է դասախոսական պրոպագանդան: Անցած ուսումնական տարում ինստիտուտում կազմակերպվել է զանազան թեմաներով 63 դասախոսություն: Առանձնակի տեղ ենք տվել ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների նշանակության, իններորդ հնգամյակի տնտեսական խնդիրների, Սովետական Միության արտաքին քաղաքականության, միջազգային կոմունիստական շարժման հարցերի խոր պարզաբանմանը:

Ինստիտուտի կուսակցական, կոմերիտական ու արհմիութենական կազմակերպությունները միշտ իրենց գլխավոր խնդիրն են համարել ուսանողության հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների լենինյան բարեկամության ոգով դաստիարակելը: Մեր միջոցառումներում հատուկ տեղ ենք հատկացնում հայ, ռուս և անդրկովկասյան ժողովուրդների դարավոր բարեկամության ու եղբայրության հարցերին: Փոխադարձ պայմանավորվածության համաձայն պարբերաբար հրավիրվում են Անդրկովկասյան երեք հանրապետությունների գյուղատնտեսական ինստիտուտների միացյալ գիտական սեսիաներ, ինչպես նաև ուսանողական գիտական ընկերությունների կոնֆերանսներ: Այս տարվա ապրիլին հրավիրված ուսանողական գիտական կոնֆերանսը, որը նվիրված էր ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին, վերածվեց ժողովուրդների բարեկամության վառ ցույցի: Կոնֆերանսում զեկուցումներով հանդես եկան Լատվիայի, Լիտվայի, Էստոնիայի, Ուզբեկստանի, Մոլդավիայի, Ադրբեջանի և Վրաստանի գյուղատնտեսական ինստիտուտների ուսանողները: Բարեկամության սերտ հարաբերություններ ենք հաստատել Մոսկվայի Տիմիրյազևի և Ուկրաինայի գյուղատնտեսական ակադեմիաների, ինչպես նաև ԳԴՀ-ի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի և Լեհաստանի գյուղատնտեսական ինստիտուտների հետ:

Ուսանող երիտասարդության կոմունիստական և ռազմա-հայրենասիրական դաստիարակությանը մեծապես նպաստում է նաև գյուղատնտեսության առաջավորների, ինստիտուտի շրջանավարտների, հանրապետության գիտության և մշակույթի անվանի մարդկանց, հայրենական պատերազմի մասնակիցների ու հերոսների, ինչպես նաև մեր կուսակցության հնագույն անդամների հետ հանդիպման երեկոների կազմակերպումը: Մենք պարբերաբար անցկացնում ենք այդպիսի երեկոներ, երիտասարդությանը դաստիարակում լավագույն ավանդույթներով:

ՍՄԿԿ XXIV համագումարը կուսկազմակերպությունների պարտքը համարեց սովետական մարդկանց դաստիարակել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով: Այս կարևոր պահանջը վերաբերում է նաև բուհական կազմակերպություններին: Մեր կուսկոմիտեն և ֆակուլտետային սկզբնական կուսկազմակերպությունները մշտական ուշադրություն են նվիրում ուսանողների աշխատանքային դաստիարակությանը: Պատահական չէ, որ ուսանողները միշտ սիրով ու խանդավառությամբ են մասնակցում կազմակերպված շաբաթօրյակներին: Նրանք վաղ գարնանից մինչև ուշ աշուն ակտիվորեն օգնում են էջմիածնի շրջանի «Ոսկեհատ» ուսումնափորձնական տնտեսության աշխատանքներին: Արդեն հինգերորդ տարին է, ինչ մեր ուսանողական շինարարական ջոկատները (տարեկան 300 ուսանող) հայրենանվեր



մեծ գործ են կատարում Ղազախական ՍՍՀ, Արխանգելսկի մարզի և մեր
հանրապետության Ազիզբեկովի շրջանի շինարարական կառույցներում: Շի-
նարարական երկու ջոկատների լավագույն գործերի համար անցյալ տարի
ինստիտուտը պարգևատրվեց Ղազախական ՍՍՀ Գերագույն սովետի պատվո-
գրով: Բազմաթիվ շինարար ուսանողների տրվել են մեդալներ, ՀամԼԿԵՄ
Կենտկոմի և ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրեր:
Ինստիտուտի կյանքում նոր, կարևոր իրադարձություն է հանրապետու-
թյունում առաջին և առայժմ եզակի հասարակական մասնագիտությունների
ֆակուլտետի ստեղծումը: Այդ ֆակուլտետում, ուսման 2—3 տարվա տևողու-
թյամբ, իրենց հիմնական պարապմունքներից ազատ ժամերին, սովորում են
շուրջ 450 ուսանողներ: Նորաստեղծ ֆակուլտետի շնորհիվ ինստիտուտի շըր-
ջանավարտներն ստանում են երկրորդ դիպլոմը՝ կինոռեժիսորի կամ պրոպա-
գանդիստի, լրագրողի կամ ակումբավարի, գեղարվեստական ինքնագործ
խմբակի խմբակավարի կամ սպորտային հրահանգչի և այլ մասնագիտու-
թյամբ: Ֆակուլտետն արդեն տվել է իր երկրորդ շրջանավարտները: Սա չա-
փազանց կարևոր միջոցառում է, որի նպատակն է երկրին տալ բազմակող-
մանիորեն զարգացած, բարձր կուլտուրայով օժտված մասնագետներ:
Բուհերում իսկական աշխատանքային ու բարոյական դաստիարակու-
թյունը տարվում է, առաջին հերթին, դասավանդման պրոցեսում: Այստեղ
կարևոր դեր է խաղում դասախոսի անձնական օրինակը, նրա վարքագիծը:
Լավ դասախոսը ուսանողի մոտ սեր է առաջացնում տվյալ առարկայի, մաս-
նագիտության հանդեպ: Բովանդակալից, հիմնավորված և անթերի դասախո-
սությունը ամրապնդում է նրա համոզմունքն ու հավատը ապագայի, մեր ընդ-
հանուր առաջընթացի նկատմամբ, զարգացնում նրա ակտիվությունն ու նա-
խաձեռնությունը: Մեծ է օրինակի ուժը. ուսանողը, սիրելով դասախոսին ու
նրա առարկան, ջանում է նմանվել նրան, խորությամբ յուրացնել նրա դա-
սավանդած առարկան: Դասախոսի խոսքն ու գործը կարող են բախտորոշ
նշանակություն ունենալ ուսանողի ողջ գիտակցական կյանքում:
Մեր ինստիտուտում շատ է այն դասախոսների թիվը, որոնք իրենց անձ-
նական օրինակով լավագույն դաստիարակներ են ուսանողների համար: Բե-
րենք միայն մեկ օրինակ: Բուսաբուծության ամբիոնի վարիչ, հանրապետու-
թյան գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ, գիտության վաստակա-
վոր գործիչ, պրոֆեսոր Ա. Մաթևոսյանն իր աշխատասիրությամբ, բարե-
խղճությամբ, հասարակական կյանքին մասնակցելու ակտիվությամբ համա-
կում է ոչ միայն իր շրջապատի ընկերներին, դասախոսներին ու ասպիրանտ-
ներին, այլև ուսանողներին: Ուսանողները կլանված են լսում նրա դասախո-
սությունները, այն զրույցները, որ նա անցկացնում է իր կուրսում, ուսանո-
ղական հանրակացարաններում: Չկա մի շրջանավարտ, որը, եթե լսել ու գործ
է ունեցել պրոֆեսորի հետ, մոռանա նրան, չհիշի նրա տված հայրական խոր-
հուրդները: Պրոֆեսոր Մաթևոսյանը կապված է հայ գյուղի աշխատավորու-
թյան, մասնավորապես իր նախկին սաների, արտադրության ներկայիս կազ-
մակերպիչների, մասնագետների հետ: Նրա գիտական ղեկավարությամբ, իր
նախկին ուսանողներից 26-ը պաշտպանել են թեկնածուական դիսերտացիա-
ներ: Նրանց մի մասն այժմ աշխատում է պրոֆեսորի գլխավորած ամբիոնում,
գիտահետազոտական ինստիտուտներում, իսկ մյուսը՝ կոլտնտեսություննե-
րում, սովխոզներում և գյուղատնտեսական ղեկավար մարմիններում:



digitised by A.R.A.R.@

Կուսկոմիտեն և ռեկտորատն առանձնակի ուշադրություն են նվիրում դասախոսների պատասխանատվության, նրանց մասնագիտական որակավորման, դասախոսությունների ու գործնական-լաբորատոր պարապմունքների որակի բարձրացմանը։ Վերջին երեք ուսումնական տարիներին 45 դասախոսներ 3—5 ամիս ժամանակով որակավորվել են երկրի առաջատար բարձրագույն ուսումնական հաստատություններում։ Երիտասարդ դասախոսների ու ասպիրանտների մասնագիտական և հատկապես մանկավարժական որակավորումը բարձրացնելու նպատակով՝ ինստիտուտում գործում է երկամյա դասընթաց, որտեղ դասախոսություններով հանդես են գալիս մանկավարժական աշխատանքի մեծ փորձ ունեցող պրոֆեսորներ ու դոցենտներ։ Հատկապես շոշափելի գործ է արվել հասարակագիտական առարկաների դասավանդման որակի բարձրացման ասպարեզում։ Դրան մեծապես նպաստում է հասարակագիտական ամբիոնների գիտական խորհուրդը։ Նախօրոք ստեղծված հանձնաժողովներն ունկնդրում են դասախոսություններն ու սեմինար պարապմունքները, արդյունքների մասին զեկուցում խորհրդի նիստում, օգնում դասախոսներին՝ տեղ գտած թերությունները շտկելու համար։ Հասարակագիտական խորհրդի նիստերում պարբերաբար քննարկվում են նաև մեթոդական բնույթի հարցեր։ Պատահական չէ, որ ուսանողների մոտ զգալիորեն մեծացել է հետաքրքրությունը հասարակագիտական առարկաների նկատմամբ։ Դրա վկայությունը կուսակցության պատմության, մարքս-լենինյան փիլիսոփայության, գիտական կոմունիզմի հիմունքների և քաղաքատնտեսության առարկաների քննությունների բարձր արդյունքներն են։

Դասախոսների և ուսանողների կապի ամրապնդման, ուսանողների անհատական դաստիարակության նպատակով՝ շատ ամբիոններ (բուսաբուծության, երկրագործության, ընդհանուր քիմիայի, ավտոմոբիլների, գյուղատնտեսության մելիորացիայի, արտադրության կազմակերպման ու պլանավորման) հաճախ ուսանողներին մասնակից են դարձնում իրենց նիստերին, որտեղ քննարկվում են ուսումնական պրոցեսի, ուսանողների ինքնուրույն աշխատանքի կազմակերպման և դաստիարակչական բնույթի հարցեր։

Կոմունիստների, ուսանողության կոմունիստական դաստիարակության ասպարեզում, ճիշտ է, մեր ձեռք բերած հաջողությունները որոշակի են, սակայն կուսկազմակերպության դաստիարակչական աշխատանքում դեռևս կան թերություններ, չլուծված հարցեր։ Խոսքն առաջին հերթին վերաբերում է պատրաստվող կադրերի որակի բարձրացմանը։ Ուսանողների որոշ մասը չի ցուցաբերում աշխատասիրություն, չունի ձգտում բարձր առաջադիմությամբ սովորելու համար։ Բուհերում, այդ թվում և մեր ինստիտուտում, հաճախ, տարվելով ընդհանուր ինստիտուտային, ֆակուլտետային միջոցառումներ կազմակերպելով, մոռացվում է կուրսը, խումբը։ Ուսանողների մի մասը դուրս է մնում մեր տեսադաշտից, թուլանում է ազդեցությունը նրանց նկատմամբ, աչքաթող է արվում նրանց հետ տարվող անհատական դաստիարակչական աշխատանքը։

Կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները կազմակերպվող միջոցառումների մեծ մասը պետք է տեղափոխեն կուրս, խումբ, ստորին օղակներ, անհաշտ վերաբերմունք ունենան պասիվության, անտարբերության և անհոգության նկատմամբ։



Բարձրորակ մասնագետների պատրաստման համար կարևոր նշանակություն ունի նորագույն մեքենաներով ու սարքավորումներով կահավորված լաբորատորիաների առկայությունը։ Մինչդեռ այսպիսիք մեզ մոտ դեռևս քիչ են։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի «Երկրում բարձրագույն կրթության հետագա բարելավման միջոցառումների մասին» որոշման մեջ այդ առթիվ ընդգծված է, որ ճյուղային մինիստրությունները և գերատեսչությունները պետք է միջոցներ ձեռնարկեն՝ բուհերը ժամանակին զինելու գիտական ու ուսումնական սարքավորումներով, ամրապնդելու նրանց նյութական բազան։ Ժամանակն է, որ ուսումնական պրոցեսում արմատավորվեն կինոն, ռադիոն և հեռուստատեսությունը, բարձրագույն ուսումնական հաստատություններն ապահովվեն նորագույն սարքերով, էլեկտրոնային հաշվողական տեխնիկայով։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշմամբ բուհերի կուսկազմակերպություններից պահանջվում է գիտամանկավարժական կոլեկտիվների գործունեությունը նպատակամղել ապագա մասնագետների պատրաստման և կոմունիստական դաստիարակության հետագա բարելավմանը, ամրապնդել կուսակցական ազդեցությունը բարձրագույն ուսումնական հաստատությունների բոլոր օղակներում։ Կուսկազմակերպություններից պահանջվում է ուսանողության մեջ դաստիարակել կազմակերպվածություն, անհաշտվողականություն հակահասարակական երևույթների հանդեպ, բարոյական վսեմ հատկություններ, առանձնակի ուշադրություն դարձնել ուսանող երիտասարդության հասարակական-քաղաքական ակտիվության զարգացմանը, նրանց պատվաստել կազմակերպչական ու դաստիարակչական աշխատանքի հմտություն։

Կուսկոմիտեն և ռեկտորատը, ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի և Մինիստրների սովետի որոշումից, մշակել են կոնկրետ միջոցառումներ՝ ուսանողության կոմունիստական դաստիարակության գործը արմատապես բարելավելու, գյուղատնտեսությանը ավելի բարձրորակ մասնագետներ տալու համար։

Գ. Վ. ԴԱՎԹՅԱՆ
Գյուղատնտեսական ինստիտուտի
կուսկոմիտեի քարտուղար



digitised by A.R.A.R.@

## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

# ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՄԻՋՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ՄԻԳՐԱՑԻԱՆ

*Բնակչության միգրացիան կամ մարդկանց բնակեցման տերիտորիալ տեղափոխությունները միշտ կարևոր դեր են խաղացել աշխարհի տարբեր երկրների բնակչության բնակեցման, նրանց կազմավորման գործում։ Հասարակության զարգացման, հաղորդակցության միջոցների կատարելագործման և աշխարհագրական գիտելիքների հարստացման հետ մեկտեղ, միաժամանակ ակտիվացել են նաև տարբեր երկրների միջև տեղի ունեցող բնակչության տեղափոխությունները։*

*Բնակչության մեխանիկական շարժումները հատուկ են նաև սոցիալիստական երկրներին, քանի որ այն հնարավորություն է ընձեռում ավելի ռացիոնալ օգտագործել բնական և աշխատանքային ռեսուրսները, նպաստել ժողովրդի բարեկեցության մակարդակի հետագա բարձրացմանը։ Այդ խնդիրների լուծման մի մասը կապված է մարդկանց մշտական բնակավայրերի փոփոխման հետ, մյուսները՝ ժամանակավոր են և ունեն սեզոնային բնույթ, որ կարող է տևել մինչև մի քանի ամիս։*

*Բնակչության մշտական և ժամանակավոր տեղափոխությունները միաժամանակ նպաստում են քաղաքի և գյուղի միջև եղած էական տարբերությունների հաղթահարմանը։ Այդ իմաստով, չնայած ստեղծված սոցիալ-տնտեսական նոր պայմաններին, իր նշանակությունը չի կորցրել Վ. Ի. Լենինի հետևյալ ասույթը. «Առանց բնակչության շարժականության ստեղծման անկարելի կլիներ նաև նրա զարգացումը, և միամտություն կլիներ մտածել, թե որևէ գյուղական դպրոց կարող է տալ այն, ինչ մարդկանց տալիս է ինքնուրույն ծանոթությունը զանազան հարաբերությունների ու կարգերի հետ՝ թե՛ հարավում և թե՛ հյուսիսում, թե՛ հողագործության և թե՛ արդյունաբերության մեջ, թե՛ մայրաքաղաքում և թե՛ ետ ընկած խուլ վայրում» (Երկեր, հ. 3, էջ 305)։*

*Վիճակագրական տվյալները ցույց են տալիս, որ ինչպես ՍՍՀՄ-ում, այնպես էլ Սովետական Հայաստանում տարեցտարի մեծանում են բնակչության միգրացիայի մասշտաբները։*

*Բնակչության միգրացիան տնտեսական, սոցիոլոգիական, էթնիկական գործոնների չափազանց բարդ զուգակցման արդյունք է, սոցիալական կարևոր երևույթ, այն տեղի է ունենում պատմական կոնկրետ պայմաններում, հասարակական տնտեսական մի շարք ազդակների անմիջական ազդեցությամբ։*

*Միգրացիայի օրինաչափությունների իմացությունը հնարավորություն է ընձեռում կարգավորել բնակչության մեխանիկական շարժումները ցանկալի ուղղությամբ, որպեսզի ավելի խելացի կատարվի աշխատանքային ռեսուրսների տերիտորիալ տեղաբաշխումն ու նրանց արդյունավետ օգտագործումը հանրային արտադրության մեջ։ Միգրացիայի ուսումնասիրությունը կարևոր է նաև բնակչության աշխատունակ մասի աճի, ժողովրդական տնտեսության մեջ նրանց ներգրավումը պլանավորելու և օգտագործելու համար։*

*Ուստի, բնակչության միգրացիայի, նրա չափերի, կառուցվածքի, հոսանքների, ուղղությունների ինտենսիվության ուսումնասիրությունն ունի գիտական և գործնական մեծ նշանակություն։*

*Կապիտալիստական արտադրաեղանակի պայմաններում կատարվող միգրացիայի հիմնական առիթը տնտեսական գործոնն է։ Տեղում աշխատանք չճարելու պատճառով աշխատունակ բնակչությունը, հատկապես, տղամարդկանց զգալի մասը հաճախ վարում է ստանդական կյանք, թափառում երկրից-երկիր մի կտոր հաց վաստակելու, իր ընտանիքի գոյությունը պահելու համար։ Այսպես էր վիճակը նաև Հայաստանում մինչև հեղափոխությունը։ Ագրարային գերբնակչությամբ տառապող Երևանի նահանգը առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին տարեկան տալիս էր մոտ 27 հազար արտագնաց, որից 2 հազարը գնում էր արտասահման (տե՛ս Սովետական Հայաստանի տնտեսական զարգացումը 1920—1960 թթ., Երևան, 1960, էջ 378)։*

*Արտագնացությունը մեծ էր հատկապես սակավահող լեռնային շրջաններում. միայն 1884 թ. 10 ամսում Զանգեզուրից արտագնացել են 2925 մարդ։*

*Սոցիալիզմը վերացնելով կապիտալիստական արտադրաեղանակը, կանխեց նաև ագրարային գերբնակչության վտանգը, փոխեց միգրացիայի բնույթն ու ուղղությունը։ ՍՍՀՄ կատարվող միգրացիան ամբողջապես տեղի է ունենում երկրի ներսում և կապված է զարգացող արդյունաբերությունն ու շինարարությունը բանվորական ուժով ապահովելու, երկրի բնական ռեսուրսները ռացիոնալ օգտագործելու, վերաբնակվողներին և ամբողջ բնակչության բարեկեցության մակարդակը բարձրացնելու հետ։*

*Տնտեսական տեսակետից բնակչության միգրացիայի գլխավոր նպատակն է՝ ապահովել տարբեր մասնագիտություն և որակավորում ունեցող բանվորական ուժի առաջարկի և պահանջի միջև եղած քանակական և որակական համապատասխանությունը, այսինքն՝ տերիտորիալ բաշխված արտադրամիջոցների հետ անհրաժեշտ քանակությամբ բանվորական ուժի միացումը և նրանց համատեղ գործողությունը արտադրապրոցեսում։*

*Արտադրության և միգրացիոն պրոցեսների միջև ստեղծված փոխադարձ կապը, որ նկատելի է ամենուր, անկախ նրա ծավալից ու մասշտաբներից, օրինաչափ է. բայց միգրացիոն հոսանքների ուղղությունները և չափերը ոչ բոլոր դեպքերում է, որ համապատասխանում են ժողովրդական տնտեսության խնդիրներին։*

*Միգրացիոն պրոցեսների վրա էական ազդեցություն ունեն՝ ա) բնակչության վերարտադրության տեմպերը, բ) տնտեսության ճյուղային կառուցվածքը, գ) արտադրության տեխնիկական հագեցվածությունը, դ) բնակչության նյութական և կուլտուրական կյանքի մակարդակը, ե) բնական պայմանները (աշխարհագրական միջավայրը)։ Սակայն միգրացիայի չափերի ու ուղղությունների վրա այս գործոնները միատեսակ չեն ազդում։ Այսպես, եթե արդյունաբերության զարգացմանը հաջորդում է բնակեցման բնույթի փոփոխու-*



digitised by A.R.A.R.@

մը, նրա զբաղեցրած տերիտորիայի ընդարձակումը, ավելանում է քաղաքային բնակչությունը, փոխվում է զբաղվածության կառուցվածքը, ապա նույնը չի կարելի ասել գյուղատնտեսության մասին։ Գյուղատնտեսական տեխնիկայի սիստեմատիկ հարստացմամբ մեծանում է ազատ աշխատուժի թիվը, ակտիվանում է քաղաք գնացող գյուղական բնակչության արտահոսքը, նվազում գյուղական բնակչությունը։

Բնակչության միգրացիայի բազմազան ուղղությունները (միջհանրապետական, ներհանրապետական, միջշրջանային, միջմարզային, միջքաղաքային և այլն) ունեն սոցիալ-տնտեսական որոշակի նպատակ՝ ելնելով յուրաքանչյուր հանրապետության առանձնահատկություններից, նրա տնտեսության զարգացման մակարդակից։

Ժողովրդական տնտեսության բուռն վերելքը ո՛չ միայն վերացրեց Հայաստանի ահռելի չափերի հասնող նախահեղափոխական բնակչության արտահոսքը, այլ նպաստավոր պայմաններ ստեղծեց ներհոսքի համար։ Եթե մինչև հեղափոխությունը Հայաստանի արտաքին միգրացիայի հաշվեկշիռը բացասական էր, ապա սոցիալիստական կարգերում վիճակն արմատապես փոխվեց, ուժեղացավ միութենական հանրապետություններից Սովետական Հայաստան կատարված բնակչության ներհոսքը։

Սովետական Հայաստանի միջհանրապետական միգրացիան սկսեց ակտիվանալ ինդուստրացման և կոլեկտիվացման տարիներին, երբ միութենական հանրապետություններից, մասնավորապես, ՌՍՖՍՀ-ից տարբեր մասնագետներ և որակյալ բանվորներ էին գալիս։

Հետպատերազմյան տարիներին արդյունաբերության արագ զարգացման, շինարարության լայն ծավալման շնորհիվ մեծացավ աշխատուժի պահանջը, որը լրացվեց հանրապետության գյուղական բնակչության և դրսի ներհոսքի հաշվին։ Վերջինիս ակտիվացմանը նպաստեց Միության տարբեր մասերում ապրող հայերի Հայաստան գալու ցանկությունը։

1950—1959 թթ. Սովետական Հայաստանի բնակչությունն ավելացել է 415,8 հազարով, այդ թվում բնական աճով 396,8, մեխանիկականով՝ 19 հազարով, իսկ վերջին մարդահամարի (1959—1970 թթ.) ժամանակ՝ 729 հազարով, դրա 20 տոկոսը՝ 146 հազարը, կազմել է մեխանիկական աճը[1]։ Այսպիսով, անցած 20 տարում հանրապետության բնակչության հավելաճի 14,5 տոկոսը լրացվել է դրսի ներհոսքի միջոցով։

Առաջին 10 տարում բնակչության ցածր մեխանիկական աճը պայմանավորված է արտադրության զարգացման ոչ բարձր մակարդակով, սեփական աշխատանքային ռեսուրսների գերհագեցվածությամբ, ավելին, այն նույնիսկ ի վիճակի չէր լրիվ ապահովելու աշխատանքի տարիք ունեցող բնակչության զբաղվածությունը։ 1959 թ. առանձին քաղաքներում աշխատանքի տարիք ունեցող կանանց մոտ 35—40 տոկոսը զբաղված էր անձնական, օժանդակ և տնային տնտեսությամբ, այսինքն՝ դուրս էր մնացել հանրային արտադրության ոլորտից, հետևապես չկար և դրսից աշխատուժի ներգրավման մեծ պահանջ։ Վերջին տասնամյակում վիճակը փոխվեց, երբ բուռն թափով զարգացան արտադրաուժերը, մեծացավ և աշխատուժի պահանջը։ Դրա մի մասը լրացրեցին աշխատանքի տարիք ունեցող ներսի բնակիչները, իսկ մի մասն էլ եկավ մյուս

1 Բնակչության բնական և մեխանիկական աճի այս և հաջորդ թվական տվյալները վերցված են ՀՍՍՀ ՊԿՍ և Հայկական ՍՍՀ վիճակագրական վարչությունից։



միութենական հանրապետություններից. այդ կապակցությամբ խիստ ավե-
միութենական հանրապետություններից. այդ կապակցությամբ խիստ ավելացավ Հայաստանի բնակչության մեխանիկական աճը։ Այսպես, 1959 թ.
ցավ Հայաստանի բնակչության
Հայաստանում էին ապրում ՍՍՀՄ եղած հայերի 55,7, 1970 թ.՝ 62 տոկոսը[1]։

Բնակչության ներհոսքում և արտահոսքում միատեսակ չեն և հանրապետությունների մասնակցության չափերը։ Հայաստանի միգրացիան ակտիվ է ընթացել Անդրկովկասի հանրապետությունների և ՌՍՖՍՀ հետ։ 1960—1970 թթ. տարեկան, միջին հաշվով, Հայաստան են եկել ՌՍՖՍՀ-ից՝ 4,4 հազար մարդ, Վրաստանից՝ 2,9, Ադրբեջանից՝ 3 հազար և ՌՍՖՍՀ են գնացել 3,8, Վրաստան՝ 1,2, Ադրբեջան՝ 1,4 հազար մարդ։ Վրաստանի, Ադրբեջանի և ՌՍՖՍՀ հետ Հայաստանի բնակչության մեխանիկական շարժման ակտիվ կապերը էթնիկական հատկանիշների արդյունք են։ Այդ հանրապետություններում ապրող հայերը ձգտում են մշտական բնակություն հաստատել վերածնված Հայաստանում։

Ըստ կատարած հետազոտումների, 1968 թ. մյուս հանրապետություններից Երևան եկածների 81,5, գնացածների՝ 70,4 տոկոսը հայեր են։ Ավելին, հայեր են եղել Վրաստանից եկածների 93,9, Ադրբեջանից՝ 96,5, ՌՍՖՍՀ-ից՝ 48,9 տոկոսը, իսկ Հայաստանից գնացողների մեջ հայերի տեսակարար կշիռը համապատասխանաբար կազմել է՝ 82,6, 82,1 և 50 տոկոս։

Ամեն տարի միայն սովորելու նպատակով հանրապետության բուհերում, տեխնիկումներում, ուսումնարաններում և ուսուցման այլ ձևերում ընդունվելու են գալիս մեծ թվով հայ երիտասարդներ[2]։ Ավարտելուց հետո նրանց ճնշող մասն աշխատանքի է ընդունվում հանրապետության ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում։ Այս բնական և օրինաչափ երևույթը կշարունակվի նաև ապագայում։

Բնակչության արտաքին միգրացիայից բացի, Սովետական Հայաստանին հատուկ է նաև ներքին միգրացիան։

Ի տարբերություն կապիտալիզմի, սոցիալիզմը վերացրեց ագրարային գերբնակչության վտանգը, կանխեց գյուղից քաղաք գնացող բնակչության տարերային հոսքը։ Կարգավորվեց բնակչության միգրացիան՝ ելնելով ժողովրդական տնտեսության զարգացման և պլանավորման օբյեկտիվ օրենքներից։ Դրանց հիմքում ընկած են քաղաքի և գյուղի էկոնոմիկայի զարգացումը, արդյունաբերության, շինարարության հուժկու թափը, գյուղատնտեսության արտադրապրոցեսների մեքենայացման մակարդակի սիստեմատիկ բարձրացումը։ Գյուղատնտեսական տեխնիկայի անընդհատ զարգացման շնորհիվ մեծ թվով աշխատունակ բնակչություն գյուղից կազմակերպված տեղափոխվեց քաղաք՝ արդյունաբերության, շինարարության մեջ մշտական աշխատելու։ Բացի այդ, քաղաք են գալիս նաև մեծ թվով երիտասարդներ բարձրագույն և մասնագիտական կրթություն ստանալու համար։ Քաղաքն էլ, իր հերթին, գյուղ է ուղարկել մասնագետ կադրեր՝ գյուղատնտեսներ, զոոտեխնիկներ, ագրոնոմներ, անասնաբույժներ, մեխանիզատորներ, ուսուցիչներ, բժիշկներ, կուլտուրայի բնագավառի այլ աշխատողներ։

1 1959 թ. Վրաստանում ապրում էին 443 հազար հայ, Ադրբեջանում՝ 442, ՌՍՖՍՀ-ում՝ 256 հազար։ 1970 թ. համապատասխանաբար՝ 452, 484 և 299 հազար։ Իսկ սփյուռքում այժմ ապրում են մոտավորապես 1,5 մլն։

2 1967—1968 թթ. ուս. տարում Երևանի ուսումնական հաստատություններում մյուս հանրապետություններից սովորելու են եկել 7000 երիտասարդներ, այդ թվում՝ Վրաստանից և Ադրբեջանից՝ 6000։ Материалы всесоюзной научной конференции по проблемам народонаселения Закавказья. Ереван, 1968, стр. 224։



digitised by A.R.A.R.@

Չնայած անընդհատ ընդարձակվող փոխադարձ կապերին, այնուհանդերձ, գյուղից եկածների թիվը անհամեմատ ավելի մեծ է, քան քաղաքից գնացածներինը: 1926—1939 թթ. հանրապետության քաղաքային բնակչությունն ի հաշիվ գյուղականի լրացվել է 70, 1950—1959 թթ.՝ 65,1, 1960—70 թթ. 79,4 հազարով: Ճիշտ է, քաղաքի և գյուղի բնակչության միջև եղած նյութական կյանքի և կուլտուրական մակարդակների տարբերությունների աստիճանական նվազեցումը մասամբ կթուլացնի այդ տեղաշարժերի ինտենսիվությունը, սակայն գյուղատնտեսական արտադրության հետագա մեքենայացումն ու ինտենսիվացումը կավելացնի աշխատող ձեռքերի թիվը, որոնք կտեղափոխվեն այնտեղ, որտեղ կա դրա կարիքը՝ բանվորական ուժի պակասը լրացնելու համար:

Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ բնակչության արտահոսքը համեմատաբար բարձր է լեռնային շրջաններում: Վատ յուրացված, նորաբնակ վայրերից բնակչությունն անընդհատ արտահոսել է լավ յուրացված խիտ բնակավայրերը: 1968 թ. Երևան քաղաքի ներհոսքի ավելի քան մեկ հինգերորդը Սևանի տնտեսական շրջանից է: Վերջին երկու մարդահամարների ընթացքում 8,3 տոկոսով նվազել է Քաջարանի, իսկ 4,4—43,4 տոկոսով Դաստակերտի, Քոլագերանի, Լուսակերտի, Պեմզաշենի, Թումանյանի, Շամլուղի բնակչության թիվը: Եվ, ընդհակառակը, ավելացել է Երևանի, Կիրովականի, մասամբ էլ Լենինականի բնակչության մեխանիկական աճը:

Միգրացիան միաժամանակ ազդել է գյուղական բնակչության կազմի վրա, փոխել նրանց սեռա-հասակային կառուցվածքը: Այսպես, 1968—1969 թթ. Հայկական ՍՍՀ քաղաքային բնակավայրերը եկածների և մեկնածների տարիքային խմբերի վերլուծումը ցույց է տալիս, որ միգրացվածների 60—65 տոկոսը երիտասարդներ են (16—30 տարեկան), իսկ Երևանում նրանց տեսակարար կշիռը հասել է 75—80 տոկոսի: Զբաղված բնակչության մեջ 16—30 տարեկան աշխատողների տեսակարար կշիռը, եթե արդյունաբերության մեջ կազմել է 54 տոկոս, շինարարությունում՝ 54,4, ապա գյուղատնտեսության մեջ այն եղել է 48 տոկոս կամ 6-ով պակաս:

Ի՞նչն է միգրացիայի մեջ երիտասարդության, մասնավորապես գյուղականի, բարձր տեսակարար կշռի պատճառը: Գյուղի երիտասարդության մի մասի քաղաք տեղափոխվելու և մշտական բնակություն հաստատելու ձգտումը պետք է բացատրել ոչ թե այն բանով, որ նրանց հատուկ են փոփոխությունները, նոր վայրերում ապրելու հակումը կամ հրապուրվում են քաղաքի հարմարավետությամբ, որոնք կարևոր ազդակներ են, իհարկե, դրանք անտեսել չի կարելի, քանի որ նրանք կարող են արագացնել կամ դանդաղեցնել բնակչության միգրացիան, բայց գյուղական բնակչության միգրացիայի մեծ չափերն օբյեկտիվորեն պայմանավորված երևույթներ են: Դրանց հիմքը արտադրաուժերի հուժկու վերելքն է և ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխությունը, որոնք փաստորեն փոխելով գյուղատնտեսական աշխատանքի բնույթը, պայմանավորում են գյուղական բնակչության, առաջին հերթին, երիտասարդության բարձր պրոֆեսիոնալ ու սոցիալական շարժունակությունը:

Միգրացիոն պրոցեսները վերլուծելիս պետք է նկատի ունենալ նաև տվյալ ժամանակաշրջանում գյուղերը քաղաքների վերափոխվելու, առանձին քաղաքների շրջագծի մեջ որոշ գյուղեր ընդգրկելու հանգամանքը: Եթե հաշվի առնենք այդ փոփոխությունները և դրանց ինքնուրույն առանձնացումը որպես մեխանիկական հավելաճի տարատեսակը քաղաքում և գյուղի արտահոսքը, ապա կստանանք միգրացիայի վերջնական արդյունքը:



ՀՍՍՀ քաղաքային բնակչության հավելաճի աղբյուրները 1950—1970 թթ.

| | 1950—1959 | | 1959—1970 | | 1950—1970 | |
|---|---|---|---|---|---|---|
| | հազար մարդ | ընդհանուր աճի նկատմամբ (տոկոս) | հազար մարդ | ընդհանուր աճի նկատմամբ (տոկոս) | հազար մարդ | ընդհանուր աճի նկատմամբ (տոկոս) |
| Բնակչության ընդհանուր հավելաճը | 315,5 | 100 | 600,0[1] | 100 | 915,5 | 100 |
| Բնական հավելաճը | 154,4 | 49,0 | 277,5 | 46,3 | 431,9 | 47,2 |
| Գյուղերը քաղաքների վերափոխելու և առանձին քաղաքների շրջագծում նոր գյուղեր ընդգրկելու միջոցով | 85,3 | 27,0 | 107,3 | 17,9 | 192,6 | 21,1 |
| Մեխանիկական հավելաճը | 75,8 | 24,0 | 215,2 | 35,8 | 291,0 | 31,7 |
| Այդ թվում՝ | | | | | | |
| ՀՍՍՀ գյուղական բնակչության հաշվին | 65,1 | 20,6 | 79,4 | 13,2 | 144,5 | 15,7 |
| Միութենական հանրապետություններից եկածների հաշվին (ներառյալ հայրենադարձությունը | 10,7 | 3,4 | 135,8 | 22,6 | 146,5 | 16,0 |

Քաղաքային բնակչության աճի աղբյուրներից երևում է, որ հավելաճի մեկ երրորդը միութենական հանրապետություններից և Հայաստանի գյուղերից եկածներն են: 1960—1970 թթ. միութենական հանրապետություններից եկածների մոտ 40 տոկոսը բնակվել է Երևանում: Վերջին 20 տարվա ընթացքում մայրաքաղաքի բնակչությունն ավելացել է մոտ 190 հազարով՝ ներհոսքի և նրա շրջագծի մեջ նոր բնակավայրեր մտցնելու հաշվին:

Հանրապետության քաղաքներից և գյուղերից Երևան տեղափոխված բնակչության այդպիսի մեծ ծավալը բացատրվում է արտադրաուժերի ոչ ճիշտ տեղաբաշխմամբ, Երևանում արդյունաբերության կենտրոնացմամբ, շրջանների բնատնտեսական պայմանների ոչ լրիվ հաշվառմամբ, նրանց անհամաչափ կամ միակողմանի զարգացմամբ, փոքր քաղաքներում աշխատանքային ռեսուրսների և, մասնավորապես, կանանց աշխատուժի անբավարար օգտագործմամբ:

Իհարկե, անցյալի համեմատությամբ, վերջին տասնամյակում արտադրաուժերի տեղաբաշխումը մասամբ բարելավվել է: Դրա կոնկրետ օրինակը փոքր քաղաքներում, շրջաններում արտադրության համաչափ զարգացումն է, բարձր արդյունավետության արտադրական-տերիտորիալ էլեկտրատեխնիկական արդյունաբերության կոմպլեքսի հիմնումը, մի շարք քաղաքներում (Էջմիածին, Գորիս, Ստեփանավան, Հրազդան, Իջևան, Աբովյան, Կամո, Արթիկ, Մարալիկ, Մարտունի) արդյունաբերական ձեռնարկությունների ստեղծումը: Հանրապե-

[1] 1959—1970 թթ. ՍՍՀՄ քաղաքային բնակչությունն ավելացել է 36 մլն, այդ թվում՝ բնական աճի միջոցով 14,6 մլն, գյուղերը քաղաքների վերափոխվելու հաշվին՝ 5, գյուղական բնակչության ներհոսքի հաշվին՝ 16 մլն մարդ (տե՛ս «Սովետական Հայաստան», 1971, № 90):



digitised by A.R.A.R.@

տության տարբեր մասերում իրենց մասնաճյուղերն են ստեղծել Երևանի, Լենինականի, Կիրովականի խոշոր ձեռնարկությունները: Այժմ հանրապետության 82 բնակավայրերում կան մեկից մի քանի տասնյակի հասնող արդյունաբերական ձեռնարկություններ:

Արդյունաբերության ճյուղերի աշխարհագրությունն ընդարձակվելու շնորհիվ տնտեսական շրջաններում բարձրացել է արդյունաբերության համախառն արտադրանքի ու դրանում զբաղված բնակչության տեսակարար կշիռը: Այսպես, 1965—1970 թթ. մեկ շնչին ընկնող արդյունաբերության ծավալը Շիրակի տնտեսական շրջանում ավելացել է 40, Լոռիում՝ 53, Սևանում՝ 78, Սյունիքում՝ 70 տոկոսով (տե՛ս Г. Хорасанян. Пятилетка и индустрия городов, «Коммунист», 1972, № 20):

Ճիշտ է արտադրության համաչափ զարգացման շնորհիվ վերջին տարիներում Երևանի բնակչության մեխանիկական աճը մասամբ նվազել է, սակայն արտադրաուժերի տեղաբաշխման բնագավառում դեռ շատ թերություններ կան: Այդ է պատճառը, որ 1971 թ. դեկտեմբերի 15-ին ՀՍՍՀ ութերորդ գումարման Գերագույն սովետի երկրորդ սեսիան, ելնելով ՍՄԿԿ XXIV համագումարի «Խոշոր քաղաքների աճը զսպելու և փոքր քաղաքներում ու բանավաններում արդյունաբերական ձեռնարկությունները տեղադրելու» դիրեկտիվ ցուցումներից, որոշեց նոր արդյունաբերական ձեռնարկությունները և առկա գործարանների մասնաճյուղերն ստեղծել հանրապետության այն շրջաններում, որոնք ունեն ազատ աշխատանքային ռեսուրսներ և հումքային բազա: Հնգամյակի կառույցներից ավելի քան 100-ը տեղադրվելու են փոքր քաղաքներում, քաղաքատիպ ավաններում, ինչպես նաև խոշոր գյուղական բնակավայրերում:

Տերիտորիայի վրա արդյունաբերության ավելի ռացիոնալ տեղաբաշխումը, «...կապահովի հանրային աշխատանքի տնտեսումը, շրջանների կոմպլեքսային զարգացումը և նրանց տնտեսությունների մասնագիտացումը, կվերացնի բնակչության չափից դուրս կուտակվածությունը խոշոր քաղաքներում, կնպաստի քաղաքի և գյուղի էական տարբերությունների հաղթահարմանը, երկրի շրջանների տնտեսական զարգացման մակարդակների հետագա համահարթմանը» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութեր, էջ 494):

Արդյունաբերության համաչափ զարգացումը միաժամանակ կապահովի իր և տվյալ շրջանի գյուղատնտեսության մեջ ազատ աշխատանքային ռեսուրսների լրիվ զբաղվածությունը, դրանով իսկ կնվազեն բնակչության չհիմնավորված հեռավոր տեղափոխությունները:

Խ. Ս. ԱՎԵՏԻՍՅԱՆ
Աշխարհագրական գիտությունների թեկնածու

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԷԱԿԱՆ ՄԻ ՀԱՐՑ*

Ոչխարաբուծության մթերքների արտադրության հետագա ավելացման և դրանց որակի բարելավման մասին ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի 1972 թ. մայիսի 5-ի որոշմամբ, համապատասխան միջոցառումներ են նախատեսված կերի բազայի ամրապնդման, տիպային ոչխարանոցների շինարարության, ֆերմաներում աշխատանքի կոմպլեքսային մեքենայացման, հովիվների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման, նրանց վարձատրման բարձրացման և այլնի վերաբերյալ: Համաձայն նույն որոշման 1973—1975 թթ. Մարտունու շրջանի Ծակքարի և Թալինի շրջանի Ալագյազի ոչխարաբուծական սովխոզների համար նախատեսված է կառուցել կոմպլեքսային մեքենայացված ֆերմաներ, յուրաքանչյուրը 2500 մայր ոչխարի տեղով: Ոչխարների պահվածքի տարբեր եղանակներն ուսումնասիրելու և ոչխարաբուծության համար սարքավորումների ու շինանյութերի համապատասխան տիպերը ստուգելու նպատակով 1972—1975 թթ. Կամոյի շրջանի Հացառատի սովխոզի բազայի հիման վրա կազմակերպվելու է ոչխարաբուծական փորձնական սովխոզ:

Հանձնարարված է Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրությանը և անասնաբուծական-անասնաբուժական գիտա-հետազոտական ինստիտուտին բարելավել ոչխարաբուծության բնագավառում տարվող սելեկցիոն-տոհմային աշխատանքները:

Ոչխարաբուծությունը մեր հանրապետության գյուղատնտեսական արտադրության առաջատար ճյուղերից է: Կոլտնտեսություններն ու սովխոզները մեծ եկամուտներ են ստանում դրանից: Նրանք 1971 թ. ոչխարաբուծության արտադրանքի իրացումից ստացել են 37 միլիոն ռուբլի, որը կազմում է անասնաբուծության արտադրանքի իրացման 26, իսկ ոչխարաբուծական առաջատար շրջաններում՝ 50—55 տոկոսը:

Հանրային անասնաբուծությունից ստացվող համախառն մսի մեկ երրորդը տալիս է ոչխարաբուծությունը, իսկ Ազիզբեկովի, Ապարանի, Վարդենիսի, Եղեգնաձորի, Թալինի շրջաններում այն 51,7—58,4 տոկոս է:

Հայաստանի ամառային արոտավայրերի առկայությունը, կոլտնտեսություններում ու սովխոզներում օրավուր ծավալվող խոտհարքների և արոտավայրերի բարելավման աշխատանքները խոշոր հնարավորություններ են ընձեռում ոչխարաբուծության զարգացման համար:

* Տպագրվում է հարցադրման կարգով: Խմբ.:



digitised by A.R.A.R.@

Չնայած այդ բոլորին, մեր կոլտնտեսություններն ու սովխոզները դեռևս
անբավարար աշխատանք են տանում հոտի կազմի բարելավման, բարձր ապ-
րանքային ֆերմաների կազմակերպման և ոչխարաբուծության շահութաբերու-
թյան ավելացման ասպարեզում: Որոշ տնտեսությունների ղեկավարներ (Ազիզ-
բեկովի, Ղուկասյանի, Թալինի շրջաններում) հաշվի չեն առնում ոչխարաբու-
ծության զարգացման հեռանկարները, կերային բազայի ամրապնդման ու ճիշտ
օգտագործման անհրաժեշտությունը և անհարկի կրճատում են ոչխարների գլ-
խաքանակը: Գորիսի, Սիսիանի, Կրասնոսելսկի, Թալինի և մի քանի այլ շր-
ջաններում մաքիների տեսակարար կշիռը ո՛չ միայն չի հասնում լավագույն
չափերի, այլև ցածր է հանրապետության միջինից: Ներելի չէ, երբ հանրապե-
տությունում շարունակ հանրային հոտում մաքիների տեսակարար կշիռը ավե-
լանալու փոխարեն պակասում է, իսկ վերջին երկու տարում այն 59,1-ից իջել
է 55,8 տոկոսի:

1971 տնտեսական տարում հանրապետության կոլտնտեսություններում և
սովխոզներում արտադրվել է 17261,7 տոննա կենդանի քաշով ոչխարի միս,
ըստ որում 1971 թ. հունվարի 1-ի դրությամբ մաքիների գլխաքանակը կազմել
է 751,393 գլուխ, կամ հոտի 55,8 տոկոսը: Այսպիսով մեկ մաքուր հաշվով
տարվա ընթացքում արտադրվել է 23 կգ միս (կենդանի քաշով): Իսկ Ապարա-
նի, Ախուրյանի, Ղուկասյանի, Կամոյի, Մարտունու, Հրազդանի շրջանների կոլ-
տնտեսություններում ու սովխոզներում, որտեղ մաքիների տեսակարար կշիռը
հոտում կազմել է 56,5—59,7 տոկոս, յուրաքանչյուր մաքուր հաշվով արտա-
դրվել է 24,1—26,3 կգ միս: Գորիսի, Իջևանի և Ղափանի շրջանների տնտե-
սություններում, ուր նույն ժամանակամիջոցում մաքիների տեսակարար կշիռը
հոտում կազմել է 52,0—56,0 տոկոս, յուրաքանչյուր մաքիի հաշվով արտա-
դրվել է 20,5—21,4 կգ միս (կենդանի քաշով) և նախորդ տարվա համեմա-
տությամբ, 1972 թ. հունվարի 1-ի դրությամբ, հանրային հոտի գլխաքանակը
1,5—2,5 տոկոսով պակասել է:

Բերված օրինակներից ակնառու երևում է, որ ոչխարի մսի համախառն
արտադրանքը հիմնականում պայմանավորվում է մաքիների տեսակարար
կշռով. որքան այն բարձր է (հավասար պայմաններում), նույնչափ ավել է մսի,
բրդի և կաթի արտադրությունը: Մեր հաշվումներից պարզվում է, որ եթե հո-
տում մաքիների տեսակարար կշիռը առկա 55,8-ից հասցվի 65 տոկոսի,
1975 թ. ոչխարի մսի արտադրանքը կհասնի առնվազն 21320 տոննայի:
Այսինքն՝ հնգամյակում ոչխարի մսի արտադրանքը կաճի 23,5 տոկոսով: Նույնը
վերաբերում է նաև բրդի արտադրությանը:

Ոչխարաբուծության հետագա զարգացման ու ինտենսիվացման համար
իրագործվող միջոցառումների թվում կարևոր նշանակություն ունի հանրային
հոտերի վաղ և ձմեռային ծնի ապահովումը:

Առաջավոր տնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ մինչև մեկ տա-
րեկան արու մատղաշի իրացման միջոցով բարձրանում է մաքիների տեսակա-
րար կշիռը: Բացի այդ, մատղաշի մսի ինքնարժեքը մոտ 50 տոկոսով ցածր է
հասակավոր ոչխարի մսի ինքնարժեքից, որովհետև մատղաշը հիմնականում
պահվում է արոտի հաշվին և մինչև հաջորդ մսուրային ժամանակաշրջանն
իրացված է լինում: 9—10 ամսական մատղաշի միսը բավական համեղ է, իսկ
մորթին օժտված է տեխնիկական բարձր հատկություններով և պիտանի լավո-
րակ մուշտակեղեն պատրաստելու համար:

Կոլտնտեսությունների, սովխոզների և գիտահետազոտական հիմնարկու-



թյունների երկարամյա արտադրական լայն փորձերը ցույց են տվել, որ ոչ-
խարաբուծության ամենաարդյունավետ ուղղությունը կիսանրբագեղմ մսաբր-
դակաթնայինն է, որովհետև կոպտաբուրդները նրբագեղմներով տրամախաչու-
մից ստացվող խառնացեղ կիսանրբագեղմները հաջող զուգակցում են նման
այդ երկու ցեղերի տնտեսական ու բիոլոգիական օգտակար հատկությունները:
Վերոհիշյալ նկատառումից ելնելով, Հայաստանի ոչխարաբուծությունը
պետք է մասնագիտացնել հետևյալ կերպ.
1. Ազիզբեկովի, Արարատի, Եղեգնաձորի, Մարտունու և մասամբ Աշտա-
րակի, Ապարանի և Մասիսի շրջանների տնտեսություններում բուծվելու են
մսա-բրդա-կաթնային ցեղերը, իսկ կոպտաբուրդ ոչխարներից անհրաժեշտ է
զարգացնել բալբաս ցեղը, որը լավագույնն է:
2. Մնացած շրջաններում, բուծվելու են նրբագեղմ ու կոպտաբուրդ ոչ-
խարների խառնացեղեր՝ մսաբրդակաթնային կիսանրբագեղմ ցեղերը, ինչպես
և բարելավող ճանաչված և հյուսիսային-կովկասյան կիսանրբագեղմ մսաբր-
դատու ցեղը:
Այդ բոլորից ելնելով՝ առաջին խումբ շրջանների հանրային ոչխարաբու-
ծությունը մեր կարծիքով, պետք է մասնագիտացվի ոչխարի մսի և բրդի ար-
տադրության ասպարեզում, զուգակցելով այն յուրաքանչյուր մաքիից 2,3—
2,5 կգ կոպիտ կամ կիսակոպիտ բրդի, 30—32 կգ մսի (կենդանի քաշով) և
40—45 կգ ապրանքային կաթի, իսկ հեռանկարում 100 և ավելի կիլոգրամ
կաթի ստացման հետ:
Երկրորդ խումբ շրջանների տնտեսություններում պետք է ապահովել յու-
րաքանչյուր մաքիից 3,0—3,5 կգ կիսանուրբ բրդի, 30—32 կգ մսի (կենդանի
քաշով) և 20—25 կգ ապրանքային կաթի, իսկ հեռանկարում 50 և ավելի կիլո-
գրամ կաթի ստացումը:
Այսպիսով, հանրապետության շրջանների մեծ մասի համար սահմանված
է ոչխարաբուծության կիսանրբագեղմ ուղղությունը: Սակայն վերջին տարի-
ներին (1969—1971 թթ.) տրամախաչման գործը բարելավելու նպատակով
հանրային հոտերը մի շարք շրջաններում վերափոխվել են հիմնականում նրբ-
բագեղմի: Նման դրություն գոյություն ունի Անիի, Ախուրյանի, Արտաշատի,
Կամոյի, Ղուկասյանի, Գուգարքի, Հոկտեմբերյանի, Ստեփանավանի, Թալինի,
Շամշադինի, Հրազդանի, Թումանյանի և Վարդենիսի շրջանների կոլտնտեսու-
թյուններում ու սովխոզներում: Այս շրջանների տնտեսությունների 1971 թ.
պետությանը վաճառած համախառն բրդի 60—83 տոկոսը (ֆիզիկական քա-
շով) կազմել է նուրբ բուրդը և միայն 17—40 տոկոսը կիսանուրբն ու կիսակո-
պիտը, այլ կերպ ասած, արտադրվում է մեծ մասամբ նուրբ բուրդ և ոչխար-
ները հիմնականում նրբագեղմ են, որը չի համապատասխանում հանրապե-
տության ոչխարաբուծության ուղղությանը:
Գործի այդպիսի վիճակը բացասաբար է անդրադառնում հանրային ոչ-
խարաբուծության զարգացման վրա: Ինչպես ցույց են տալիս կոլտնտեսու-
թյունների ու սովխոզների ավելի քան երեք տասնամյակի արտադրական
փորձերը, կիսանրբագեղմ ոչխարներն ավելի լավ են հարմարվում տեղի բնա-
կլիմայական, կերային ու երկզոնային պայմաններին, քան նրբագեղմները և
չնայած վերջինները որոշ չափով ավելի բուրդ են տալիս, այնուամենայնիվ,
առանձնապես աչքի չեն ընկնում մթերատվությամբ: Եթե մինչև այժմ լայն
չափով կիրառվել է կոպտաբուրդ և կիսակոպտաբուրդ մաքիների տրամախա-
չումը նրբագեղմ խոյերով, ապա ներկայումս, երբ հանրային հոտերը հիմնա-



digitised by A.R.A.R.@

կանում կազմված են նրբագեղմ ոչխարներից, նրանց հետագա տրամախաչումը նրբագեղմ խոյերով ոչնչով չի հիմնավորված: Նրբագեղմները, կիսանրբագեղմների համեմատությամբ, ավելի պահանջկոտ են կերակրման, խնամքի առումով և ավելի թույլ են համակերպվում տեղի բնակլիմայական ու կերային պայմաններին, ըստ որում՝ կիսանրբագեղմ մատղաշներն ավելի կենսունակ ու շատ ավելի դիմացկուն են և նրանք ավելի լավ են աճում ու զարգանում, քան նրբագեղմ մատղաշները: Շարունակել կլանումը, նշանակում է հաշվի չառնել կիսանրբագեղմ ոչխարաբուծության հետագա զարգացումը, տարբեր շրջանների բնատնտեսական պայմանները, ոչխարների բիոլոգիական առանձնահատկությունները և անուշադրության մատնել ոչխարաբուծությունը:

Մեր երկարամյա աշխատանքի փորձից համոզվել ենք, որ կլանման տրամախաչումը որոշ ֆերմաներում հանգեցրել է ոչ ցանկալի երևույթների՝ նրբացել և մանրացել են ոչխարները, իջել է նրանց մսատվությունն ու բրդատվությունը, իսկ մատղաշներն ավելի պահանջկոտ են դարձել կերակրման, խնամքի ու պահվածքի նկատմամբ:

Ոչխարների տրամախաչման գործի կազմակերպման առաջին փուլում (1937—1967 թթ.) երբ մասսայաբար կիրառվում էր կոպտաբուրդ՝ մազեխ, բոզախ, ղարաբաղ և այլ ցեղերի մաքիների տրամախաչումը նրբագեղմ արտադրողներով, այն դյուրին գործ էր. ըստ որում, աշխատանքները հաջողությամբ կատարում էին նաև փորձված ֆերմայի վարիչները և ավագ հովիվները: Իսկ այժմ, երբ տնտեսությունները ամենուրեք թևակոխել են բուծման երկրորդ և ամենապատասխանատու փուլը, որի ժամանակ մասնագիտական մեծ փորձ ու գիտելիքներ են պահանջվում, անհրաժեշտ է, որ տնտեսությունների անասնաբույծները չափազանց լուրջ մոտենան այդ ավելի քան պատասխանատու միջոցառմանը, հակառակ պարագայում կիջնի սերնդի կենսունակությունը, պտղատվությունը, որին կհաջորդի հոտի մթերատվության նվազումը:

Փորձը ցույց է տալիս, որ այսուհետև ոչխարաբուծությունը պետք է զարգանա կենդանիների տոհմային ու մթերատու հատկությունների բարելավման և ստացվող սերնդի հատկանիշների կատարելագործման հունով, նպատակ ունենալով աճեցնել տեղի բնակլիմայական ու կերային պայմաններին ավելի լավ հարմարվող ցանկալի տիպի կիսանրբագեղմ կենդանիներ:

Այդ նպատակով բուծման համար պետք է ընտրել այնպիսի կենդանիներ, որոնք իրենց ամրությամբ, կենսունակությամբ ու մթերատվությամբ առավելապես կհամապատասխանեն տվյալ տնտեսության պայմաններին ու պահանջներին, կունենան բարձր մթերատվություն ու կենսունակություն, ըստ որում, յուրաքանչյուր նոր սերունդ ավելի կհամապատասխանի տեղի բնակլիմայական և կերային պայմաններին և առավել բարձր մթերատվություն կունենա: Այդպիսով, այն տնտեսություններում, որտեղ արդեն ստեղծվել են տեղի բնակլիմայական ու կերային պայմաններին լավ ընտելացած, մսատվության ու բրդատվության համապատասխան ցուցանիշներ ունեցող խառնացեղ կիսանրբագեղմ ոչխարներ (ցանկալի տիպ), անհրաժեշտ է դադարեցնել նրանց հետագա զուգավորումը պլանային ցեղի արտադրողներով, կազմակերպելով բուծումն «իր մեջ»:

Նկատենք, որ խառնացեղ ոչխարների բուծումը «իր մեջ» և սերնդի կոնսոլիդացումը չափազանց լուրջ ու ստեղծագործական աշխատանք է և, ամբողջապես, պայմանավորված է տեսական ու գործնական խոր գիտելիքներ և հարուստ փորձ ունեցող զոոտեխնիկական կադրերի առկայությամբ: Ահա թե



ինչու կադրերից պահանջվում է անընդհատ հարստացնել իրենց գիտելիքները, ուսումնասիրել առաջավորների հարուստ փորձը: Անհրաժեշտ է պարզել, թե տվյալ տնտեսության պայմանները (բնակլիմայական, կերային և այլն) արդյոք համապատասխանո՞ւմ են նոր տիպի ոչխարների բիոլոգիական առանձնահատկություններին ու պահանջներին, որի հիման վրա պետք է նպատակադիր աշխատանք տարվի ստացված նոր խումբ ոչխարների բուծման, կերակրման, խնամքի, պահվածքի համար: Այնուհետև ընտրության և զույգընտրության միջոցով, հաշվի առնելով ստացվող սերնդի բիոլոգիական առանձնահատկությունները և ընտելանալու ունակությունը տեղի բնակլիմայական ու կերային պայմաններին, կստացվի ամրակազմ սերունդ, որը կունենա բարձր կենսունակություն, ամուր մարմնակազմ, լավ առողջություն և բարձր մթերատվություն: Հակառակ պարագայում նոր սերնդում կկորչեն տնտեսական լավագույն հատկությունները, կիջնի մթերատվությունը և սերունդը աստիճանաբար կվերասերվի ու այլևս պիտանի չի լինի բուծման համար: Մեր կարծիքով, այսուհետև, նրբագեղմ գառների ստացումը կանխելու նպատակով, զուգավորման ժամանակ խառնացեղ նրբագեղմ մաքիները սերմնավորել պլանային կիսանրբագեղմ հյուսիս-կովկասյան մսաբրդատու ցեղի ոչ թե 56 և 58 որակի բուրդ ունեցող, այլ 48, 50, 50/48 որակի բուրդ ունեցող էլիտա կամ առաջին դասի արտադրողներով:

Հայաստանի ոչխարաբուծության համար մեծ արժեք է ներկայացնում նաև բալբաս ցեղը, որը հաջողությամբ բուծվում է Ազիզբեկովի, Արարատի, Եղեգնաձորի, Մարտունու շրջաններում: Այժմ բալբաս ցեղի ոչխարաբուծության առաջ խնդիր է ծառացած սելեկցիոն-տոհմային աշխատանքները ավելի բարելավելու և այն ընդարձակելու միջոցով, բազմացնել ցանկալի տիպի ոչխարների գլխաքանակը, ապահովելով բալբաս ոչխարաբուծության հնգամյա պլանային առաջադրանքների կատարումը:

Բալբաս ոչխարի բուծման շրջաններում մինչև 1958 թ. մեկ մայր ոչխարից տարվա ընթացքում ստացվող ապրանքային կաթի քանակը կազմել է 45—52 կգ, իսկ Մարտունու շրջանի առանձին տնտեսություններում (Վարդենիկի, Ծովինարի, Զորագյուղի, Աստղաձորի, Ջիլաքարի կոլտնտեսություններում)՝ 60—90 կգ: Սակայն վերջին տարիներին ոչխարների կիթը վատ կազմակերպելու հետևանքով մեծ չափով պակասեց ստացվող կաթի քանակը: 1971 թ. մեկ մաքից Արարատի շրջանում ստացվել է 11,8 կգ, Մարտունում՝ 29,4, Ազիզբեկովում՝ 32 և Եղեգնաձորում՝ 34,9 կգ կաթ:

Լուրջ թերություններ կան նաև բրդի արտադրության ասպարեզում: Չնայած մի քանի անգամ բարձրացվել են բրդի գնման գները, այնուամենայնիվ, բազմաթիվ տնտեսություններ բրդի իրացումից մեծ վնասներ են կրում: 1970—1971 թթ. բրդի արտադրությունից կոլտնտեսությունների ու սովխոզների կրած բացարձակ վնասը կազմել է ավելի քան 2,4 մլն ռուբլի: Վնասները գոյանում են առավելապես բրդի որակը չպահպանելուց: Ոչխարաբուծությունը բարձր եկամտաբեր ճյուղ դարձնելու և ստացվող զուտ եկամուտներն ավելացնելու ու բրդի արտադրությունը շահավետ դարձնելու նպատակով, անհրաժեշտ է ոչխարների կերակրումը և խնամքը բարելավելու միջոցով հասնել այն բանին, որ իսպառ վերացվի անորակ բրդի արտադրումը և յուրաքանչյուր ոչխարի միջին բրդատվությունը բարձրացվի առնվազն 0,2—0,3 կգ որպեսզի հանրային ոչխարների միջին բրդատվությունը 1975 թ. հասնի 2,5—2,6 կգ: Դրա համար մեր խառնացեղ ոչխարաբուծությունն ունի պոտենցիալ մեծ հնարավո-



digitised by A.R.A.R.@

րությունները: Այս միջոցառումն իրականացնելով, կոլտնտեսություններն ու սովխոզները ոչ միայն վնասներ չեն կրի, այլ որակյալ և ավելի արտադրած բրդի դիմաց յուրաքանչյուր տարի 8—10 մլն ռուբլի զուտ եկամուտ կստանան:

Ոչխարաբուծության մթերքների արտադրության արդյունավետությունը բարձրացնելու գործում կարևոր տեղ է գրավում կաթը, որն իր յուղայնության շնորհիվ (5—8 և ավելի տոկոս) բարձր է գնահատվում: Հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում տարվա ընթացքում արտադրվող ապրանքային կաթի 7—8, իսկ յուղայնության վերածած 10—12 տոկոսը կազմում է ոչխարի կաթը: Ազիզբեկովի, Ապարանի, Մարտունու, Թալինի, Եղեգնաձորի, Վարդենիսի շրջանների կոլտնտեսություններում ու սովխոզներում 1971 թ. արտադրած համախառն ապրանքային կաթի 17,6—32,2, իսկ յուղայնության հաշվով 25—48 տոկոսը կազմել է ոչխարի կաթը:

Ոչխարաբուծությունից ստացվող կաթի (1958—1971 թթ.) տվյալների վերլուծումից պարզվում է, որ ոչխարի կաթի արտադրությունը շատ տնտեսությունների ղեկավարների և մասնագետների կողմից պատշած ուշադրության չի արժանանում, դրա հետևանքով տարեցտարի նրա արտադրությունը պակասում է, չնայած ավելացել է մաքիների գլխաքանակը: Այսպես, 1958 թ. հանրային ոչխարաբուծությունից ստացվել է 17091 տոննա կաթ, իսկ 1971 թ. (երբ մաքիների գլխաքանակը ավելացել էր 79.600-ով) կաթի արտադրությունը պակասել է 2606 տոննայով:

Ոչխարի կաթի արտադրության գործում վիճակն առանձնապես անմխիթարական է Ստեփանավանի, Նոյեմբերյանի, Մեղրիի, Իջևանի, Գորիսի և այլ շրջանների կոլտնտեսություններում ու սովխոզներում, որոնք վերջին տարիներին յուրաքանչյուր մաքուց ստացել են 5,1—7,9 կգ կաթ, կամ պոտենցիալ հնարավորության ոչ ավելի 20—25 տոկոսի չափով, այն դեպքում, երբ հանրապետության հանրային հոտի միջին ցուցանիշը 1971 թ. եղել է 19,3 կգ:

Բացատրել, որ ոչխարից քիչ կաթի ստացումը հետևանք է մատղաշի կերակրմամբ (լավ ծծեցնելուն) ճիշտ չի լինի, քանի որ Հայաստանի բոլոր ցեղերի ոչխարներն էլ աչքի են ընկնում լավ կաթնատվությամբ, որը լիուլի բավարարում է մատղաշները կերակրելու և կաթի արտադրությունը նորմալ ապահովելու համար:

Կրասնոսելսկի շրջանի Թոխլուջայի ոչխարաբուծական սովխոզում նրբագեղմ և կիսանրբագեղմ ոչխարները կթելու արտադրական փորձերից պարզվել է, որ արոտային ժամանակաշրջանում ոչխարը հաջող կթվում է, որը չի անդրադառնում մատղաշի աճի ու զարգացման, ինչպես նաև մաքիների բրդի քանակի ու որակի վրա: Հարկ է նշել, որ Բալկանյան երկրներում անվնաս կթում են ոչ միայն կիսանրբագեղմ, այլ նաև նրբագեղմ մաքիները:

Հանրային ոչխարաբուծության հետագա զարգացման վերաբերյալ կուսակցության և կառավարության որոշումը կենսագործելու նպատակով անհրաժեշտ է, որ գյուղատնտեսական օրգանները, կոլտնտեսություններն ու սովխոզները միջոցառումներ ձեռնարկեն կարգավորելու և բարելավելու ոչխարաբուծության արտադրության կազմակերպումը՝ այն անասնաբուծության բարձր եկամտաբեր ու շահութաբեր ճյուղը դարձնելու համար:

Լ. Ա. ԲՈՒԽԲԵԿՅԱՆ

Հայկական ՍՍՀ վաստակավոր անասնաբույժ

## ՀՈՒՇԱԳՐՈՒԹՅՈՒՆ

# ՆԻԺՆԻ ՆՈՎԳՈՐՈԴՈՒՄ*

Նահանգկոմի հաշվետվության քննարկումը պլենումում շատ բուռն անցավ: Գրեթե բոլոր ելույթ ունեցողները խոսում էին նահանգկոմի ղեկավարության մեջ եղած անձնական խմբավորումների բերած վնասի մասին: «Նահանգկոմի առանձին անդամներ,— վրդովվում էր Քաղաքային շրջանի ներկայացուցիչ Գինզբուրգը,— ավելի շատ մտածում են իշխանության, քան աշխատանքի մասին...»[1]: Նրան պաշտպանեց հեռավոր շրջանից եկած Գոլովինը, հայտարարելով, թե «...գավառների միլիոնանոց բնակչությունը թողնված է առանց ղեկավարության, վերնախավերում միայն բանսարկություններ են...»[2]: Այդ նույն բանի մասին էին խոսում կուսակցության Վիկսայի, Բորի, Կնյագինինոյի և այլ շրջկոմների ու գավկոմների աշխատողները, այսինքն՝ այն կազմակերպությունների ներկայացուցիչները, որոնք պաշտպանում էին Լենինի պլատֆորմը և դժգոհ էին նահանգկոմում «բանվորական օպոզիցիայի» կողմնակիցների գործունեությունից:

Իսկ ինչպիսի՞ բանաձև կընդունի պլենումը: Սենցովն առաջարկեց խիստ, նահանգկոմում ընդգծված փոխհարաբերությունների էությունը բացահայտող բանաձև: «Բանվորական օպոզիցիայի» Սորմովոյի ներկայացուցիչ Եգորովը կարդաց բանաձևի մի տեքստ, որտեղ հարթվում էին բոլոր սուր անկյունները:

Նահանգկոմը ինչո՞վ կգնա կոնֆերանսի: 14 ձայն տրված է Սենցովի բանաձևի օգտին, 8-ը՝ դեմ, չորսը ձեռնպահ են մնացել:

Բանաձևը նշում էր, որ ՌԿԿ նահանգկոմը ղեկավար կուսակցական օրգան չի եղել. տեղական կուսակցական կազմակերպությունները թողնված էին իրենց կամքին. նահանգկոմում եղած անձնական խմբավորումները բարոյալքիչ ազդեցություն են գործել ամբողջ կազմակերպության վրա: Նիժնինովգորոդյան կազմակերպության առողջացման միակ միջոցը, ասվում էր բանաձևում, նահանգկոմի նոր կազմի ընտրություններն են առաջիկա կուսակցական կոնֆերանսում[3]:

Բանաձևն արդեն ընդունված էր, երբ ոտքի կանգնեց ժողտնտխորհի նախագահ Միխայիլ Վորոբյովը: «Ինչ վերաբերում է խմբավորմանը, — ասաց նա,— ապա ընկերների մի մասը, օրինակ՝ Իկոննիկովը և Միկոյանը, հանդես են գալիս որպես որոշակի խումբ և հաճախ չնչին բաներով ձգձգում են աշխատանքը, այն հանգեցնում մանրուքների, և նահանգկոմը իրավացի չէր, չցանկանալով ճզմել աշխատանքին խանգարող այդ խմբին...»[4]:

Դրա դեմ ես առարկեցի. «Մենք իրոք մեզ պահել ենք որպես խումբ, բայց սկզբունքային հողի վրա, պայքարելով այն բանի դեմ, որ սկզբունքային տարակարծությունը մղված է մի կողմ և վերնախավերը միավորված են անձնական շահերով: Նիստերում նահանգկոմի այս կամ այն անդամի առաջարկությունները լռելյայն ընդունվում էին անձնական նկատառումներից ելնելով: Ես դեմ եմ անձնական խմբավորումներին»[5]:

Նահանգկոմի պլենումն ավարտվեց: Բայց դեռևս առջևում էին գավառների ու շրջանների վճռական ժողովները, որտեղ պետք է քվեարկվեին պլատֆորմները և նահանգային կոնֆերանսի պատգամավորներ ընտրվեին: Պլենումից հետո հենց այնտեղ էլ փոխադրվեց ֆրակցիոն պայքարը:

Լենինյան պլատֆորմի համար ստիպված էինք պայքարել ժողովներում ու բջիջներում, արտադրամասերում, բանվորների հետ զրույցներում:

Դեռ հունվարի վերջերին Առափինյա շրջանի

* Սկիզբը տե՛ս «Լենինյան ուղիով» № 11, 1972 թ.,

1 «Известия Нижегородского губкома РКП(б)», 1921, стр. 30.

2 Նույն տեղը, էջ 31:

3 Նույն տեղը, էջ 33:

4 Նույն տեղը, էջ 34:

5 Նույն տեղը, էջ 35:



digitised by A.R.A.R.@

## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ

# ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՈՐՊԵՍ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՏԵԳՈՐԻԱ

Սեփականության պրոբլեմն առհասարակ մարքսիզմ-լենինիզմի և, հատկապես, տնտեսագիտության արմատական հարցերից է։ Դա բացատրվում է նրանով, որ յուրաքանչյուր հասարակարգ խարսխված է սեփականության որոշակի պատմական մի ձևի վրա։ «...Ոչ մի արտադրության, հետևաբար և, ոչ մի հասարակության մասին,— նշել է Կ. Մարքսը,— խոսք չի կարող լինել այնտեղ, որտեղ սեփականության ոչ մի ձև գոյություն չունի...» (Քաղաքատնտեսության քննադատության շուրջը, 1948, էջ 238)։

Արտադրամիջոցների հետ անմիջական արտադրողների միակցման եղանակով է պայմանավորված մարդկանց դիրքը հասարակական արտադրության սիստեմում, նրանց դասակարգային պատկանելությունը, բաշխման նորմերը, փոխանակության և սպառման բնույթը։ Յուրաքանչյուր պատմական որոշակի հասարակության արտադրահարաբերությունների ամենաբնորոշ գիծը սեփականության հարաբերություններն են։

Ժամանակին Կ. Մարքսը նշել է. «Սեփականությունը, որքանով այն հանդիսանում է արտադրության պայմանների՝ իբր իսկ նկատմամբ միայն որոշակի հարաբերություն, իրագործվում է բուն արտադրամիջոցներով» (Формы предшествующие капиталистическому производству, М., 1940, стр. 27)։ Մարքսը 1857—1858 թթ. տնտեսագիտական ձեռագրերի ներածականում արտադրությունը դիտում է որպես յուրացման պատմական որոշակի տիպ։ «Ամեն մի արտադրություն,— գրում է նա,— բնության բարիքների յուրացումն է անհատի կողմից՝ որոշ հասարակական ձևի սահմաններում ու դրա միջոցով։ Այդ իմաստով տավտալոգիա կլինի ասել, թե սեփականությունը (յուրացումը) արտադրության պայմանն է» (Քաղաքատնտեսության քննադատության շուրջը, 1948, էջ 237)։

Սեփականության պրոբլեմի լուծման հարցում Մարքսի և Էնգելսի գլխավոր ծառայությունն այն է, որ նրանք, ի տարբերություն բուրժուական ջատագովների, բացահայտեցին յուրացման պրոցեսի սոցիալական էությունը, որի հասարակական ձևը դրսևորվում է որպես սեփականության հարաբերություններ։

Բուրժուական տնտեսագետները սեփականության բովանդակությունը (յուրացումը) ըմբռնում են լոկ որպես նյութական բարիքների յուրացման պրոցես, որպես դրանց վերածումը սեփականության, այսինքն՝ նյութական բարիքներին տիրելու, օգտագործելու և տնօրինելու իրավունքի առաջացման պրոցես։ Գոյություն ունեցող պետական օրենքների շրջանակներում յուրաքանչյուր իրի վերածումը որևէ սեփականության, նրանք համարում են յուրացման ակտ և սեփականության հարաբերությունների առաջացում։ Տնտեսական տեսակետից յուրացման բովանդակության նման ըմբռնումը ոչ այլ ինչ է, եթե ոչ հասարակական արդյունքների բաշխում (ներառյալ և վերաբաշխումը փոխանակության միջոցով)։ Սակայն բաշխման այդ հարաբերությունները սքողված են որոշակի իրավաբանական ձևով։

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ յուրաքանչյուր դասակարգային հասարակության մեջ տնտեսական հարաբերություններն անխուսափելիորեն միջնորդավորվում են հասարակական արտադրության մեջ գերիշխող դասակարգի կամքի արտահայտությամբ։ Գերիշխող դասակարգի կամքն արտահայտվում է պետական համապատասխան օրենքներում, որոնք տվյալ դասակարգի սուբյեկտիվ ներգործության միջոցներ են հասարակական արտադրության պրոցեսի վրա։ Անտագոնիստական հասարակարգում արտադրահարաբերությունները, հետևապես և բաշխումն արտահայտվում են պետական օրենքներում, այն, ինչ հասնում է յուրաքանչյուրին բաշխման շնորհիվ, համարվում է նրա սեփականությունը, այսինքն՝ այդ բարիքների նկատմամբ տվյալ սուբյեկտն ստանում է տիրելու, օգտվելու և կարգադրելու մենաշնորհային իրավունք։

Այսպիսով, հասարակական վերարտադրության պրոցեսի յուրաքանչյուր առանձին փուլում սեփականության իրավունքը դառնում է կարևորագույն պայման։ Այն արտադրության հետևանքը լինելուց վերածվում է արտադրության (արտաքին) նախապայմանի։ Ուստի, կարևոր նշանակություն ունի սեփականության հարցի սահմանազատումը, որպես օբյեկտիվ տնտեսական հարաբերություն ու սեփականության իրավունք, որպես կամային հարաբերություններ և օբյեկտիվ տնտեսական հարաբերությունների իրավական արտահայտություն։

Հայտնի է, որ տնտեսական հարաբերություններից է առաջանում սեփականության իրավունքը։ Այդ հանգամանքը մարքս-լենինյան տնտեսագիտության մեթոդոլոգիական կարևորագույն դրույթներից մեկն է։

Քաղաքատնտեսության քննադատության շուրջը աշխատության «Ներածականում» Մարքսը գրել է. «Իմ հետազոտություններն ինձ բերեցին այն եզրակացության, որ իրավահարաբերությունները, ինչպես և պետության ձևերը չեն կարող ըմբռնվել ո՛չ իրենք իրենցից և ոչ էլ այսպես կոչված մարդկային ոգու ընդհանուր զարգացմամբ։ Ընդհակառակը, նրանց արմատներն ավելի շուտ գտնվում են կյանքի նյութական պայմաններում» (էջ 6—7)։

Սեփականության տնտեսական և իրավական ասպեկտների ճիշտ ըմբռնումը, անկասկած, բացառում է ո՛չ միայն նրանց նույնացումը, այլև այդ ասպեկտների անհիմն հակադրումը։ Սեփականության տնտեսական և իրավական բովանդակությունների շփոթումը կամ նույնացումը մի շարք դեպքերում տնտեսագիտության մեջ կարող է հանգեցնել սուբյեկտիվիզմի և տնտեսական քաղաքականության մեջ սուբյեկտիվիզմի տարրերի առաջացման։

Սեփականության տնտեսական իրացումը դասակարգային հարաբերության մեջ անխուսափելիորեն իրագործվում է իրավունքի մեխանիզմի միջոցով։ Հայտնի է, որ արտադրության արդյունքների յուրացման հարաբերու-



digitised by A.R.A.R.@

թյունների իրավական ձևը պահպանվում է նաև ոչ-անտագոնիստական դասակարգային հասարակության մեջ— սոցիալիստական հասարակարգում: Այստեղ արտադրության արդյունքների բաշխման հարաբերությունները դրսևորվում են յուրացման իրավական հարաբերությունների ձևով, և այն կատարվում է պետական-իրավական կարգավորման շնորհիվ՝ հօգուտ բանվոր դասակարգի և ամբողջ աշխատավորության: Միայն կոմունիստական հասարակարգում կանէանա բաշխման հարաբերությունների իրավական ձևը (հետևաբար և իրավունքը), որն արտահայտում է գերիշխող դասակարգի կամքը:

Մի շարք տնտեսագետներ գտնում են, որ անհատական օգտագործման իրերի նկատմամբ մարդկանց իրավունքը կպահպանվի նաև կոմունիզմի ժամանակ: Նրանք նկատի չեն ունենում, որ այդ իրավունքն օբյեկտիվ անհրաժեշտություն է ըստ աշխատանքի բաշխման պայմաններում և բոլորովին անհրաժեշտ չէ կոմունիստական սկզբունքով կատարվող բաշխման դեպքում: Արտադրության արդյունքների պատկանելությունն առանձին մարդկանց, խմբերին կամ ամբողջ հասարակությանը կարտահայտվեն ո՛չ թե սուբյեկտների կողմից արտադրության արդյունքներին մոնոպոլ տիրելու իրավունքով, այլ սովորական օգտագործման միջոցով. իրերը սպառման ոլորտում կլինեն ո՛չ թե դրանց նախնական յուրացման իրավական իմաստով, այլ բաշխման հատուկ ձևով՝ բաշխման կոմունիստական սկզբունքով: «Բաշխման կառուցվածքը լիովին որոշվում է,— ասում է Կ. Մարքսը,— արտադրության կառուցվածքով: Բաշխումն ինքն արտադրության արդյունք է,— ոչ միայն առարկայի տեսակետից, որովհետև բաշխվել կարող են արտադրության արդյունքները միայն, այլև ձևի տեսակետից, որովհետև արտադրությանը մասնակցելու որոշ եղանակն է որոշում բաշխման հատուկ ձևը,— այն ձևը, որով յուրաքանչյուրը մասնակցում է բաշխմանը» (Նույն տեղը, էջ 248):

Արտադրահարաբերությունների բնույթից է կախված բաշխման հարաբերությունների իրավական ձևի որոշակիությունն ու գոյությունը: Դրանով է որոշվում բաշխման հարաբերությունների իրավական ձևն ու առկայությունը: Հետևաբար՝ միայն արտադրահարաբերությունների անմիջական վերլուծությունը կարող է բացահայտել սեփականության իրավական հարաբերությունների առաջացումն ու դրանց տնտեսական բովանդակությունը:

Կ. Մարքսը վերլուծելով ապրանքային արտադրության պրոցեսն ընդգծում է, որ ապրանք արտադրողների «...իրավական հարաբերությունը... մի կամային հարաբերություն է, որի մեջ արտացոլվում է տնտեսական հարաբերությունը: Այս իրավական կամ կամային հարաբերության բովանդակությունը տրված է հենց տնտեսական հարաբերությամբ». (Կապիտալ, հ. 1, 1954, էջ 93):

Քանի որ բաշխման հարաբերությունները հասարակական արտադրահարաբերությունների սիստեմի օրգանական մասն են և որակապես որոշվում են արտադրության սեփականության հարաբերություններով, ուստի, սեփականության իրավական հարաբերությունների տնտեսական բովանդակության վերլուծությունը, առաջին հերթին, պետք է սկսել արտադրահարաբերությունների ամբողջ սիստեմից: Այն, ինչ մարդկանց կամային, իրավական որոշ հարաբերություններ անվանում են յուրացման հարաբերություններ, իրականում դրանք միայն արտադրված նյութական բարիքների բաշխման առանձնահատուկ ձևեր են: Յուրացման պրոցեսի տնտեսական բովանդակությունը, ինչպես հիշատակվեց վերը, դա արտադրության միջոցով բնության բարիքների յուրացումն է անհատի կողմից՝ որոշ հասարակական ձևի սահմաններում:



Կ. Մարքսի բնորոշմամբ, արտադրահարաբերությունների ամբողջությու-
նը կազմում է հասարակության տնտեսական կառուցվածքը, նրա բազիսը:
Այդ հարաբերություններն իրենցից ներկայացնում են արտադրամիջոցների
նկատմամբ որոշակի ձև և հասարակական հարաբերությունների սիստեմում
հանդես են գալիս որպես գլխավոր, հիմնական օղակ: Արտադրամիջոցների
նկատմամբ սեփականությունը կապում է արտադրության տվյալ եղանակին
հատուկ բոլոր տնտեսական հարաբերությունները մեկ միասնական ամբող-
ջության մեջ և նրան հաղորդում պատմական որոշակիություն: Հատկապես
այդ նկատի ունի Մարքսը, երբ նշում է. «...սահմանել բուրժուական սեփակա-
նությունը, դա նշանակում է ոչ այլ ինչ, եթե ոչ նկարագրել բուրժուական ար-
տադրության բոլոր հասարակական հարաբերությունները» (К. Маркс и ф.
Энгельс, Соч., т. 4, стр. 168): Սակայն Մարքսի այդ դրույթից չի կարելի
հանգել այն եզրակացության, ինչպես այդ անում են մի շարք տնտեսագետ-
ներ, որ նա սեփականությունը համարում է արտադրահարաբերությունների
միակցություն: Եթե այդպես լիներ, կստացվեր, որ սեփականությունն ընդհա-
նուր տնտեսական կատեգորիա չէ, զուրկ է իրային բովանդակությունից: Սա-
կայն ինչպե՞ս կարելի է պատկերացնել սեփականություն, առանց իրային բո-
վանդակության, առանց յուրացման օբյեկտի: «Այն յուրացումը,— գրում է
Մարքսը,— որը ոչինչ չի յուրացնում, հակասություն է իր մեջ» (Քաղաքատնտե-
սության քննադատության շուրջը, էջ 238): Ժխտել սեփականությունը որպես
որոշակի կատեգորիա և պատկերացնել միայն որպես արտադրահարաբերու-
թյունների ամբողջություն, նշանակում է փակել արտադրահարաբերություն-
ների սիստեմի տարբեր տարրերի, դրանց փոխադարձ պայմանավորվածու-
թյան գիտական վերլուծության ուղին: Սեփականության ըմբռնումը, որպես
կարևորագույն տնտեսական կատեգորիա, ամբողջությամբ բխում է մարքս-
լենինյան ուսմունքից:

Սեփականությունը ներհատուկ է արտադրաեղանակին և արտահայտում
է մարդկանց արտադրահարաբերությունները արտադրապրոցեսում՝ արտա-
դրամիջոցների յուրացման նկատմամբ: Կ. Մարքսն արտադրահարաբերու-
թյուններն անվանում է սեփականության հարաբերություններ ոչ այն նկատա-
ռումով, որ ցանկանում էր ապացուցել սեփականության և արտադրահարա-
բերությունների միակցության նույնությունը, այլ նա հետապնդում էր սեփա-
կանության տնտեսական հարաբերությունների բովանդակության բացահայտ-
ման նպատակը:

Եթե հետևողականորեն «արտադրությունը» վերառնենք, որպես արտա-
դրության հասարակական հարաբերություններ,— ասում է Վ. Ի. Լենինը,—
ապա և՛ «բաշխումը» և՛ «սպառումը» կկորցնեն իրենց ամեն մի նշանակու-
թյունը (տե՛ս ПСС, т. 2, стр. 196): Այդ նշանակում է, որ բոլոր էական տըն-
տեսական կատեգորիաները (ինչպես, օրինակ, շահագործումը, սեփականու-
թյունը, ապրանքը և այլն) արտադրահարաբերությունների որպիսության ար-
տացոլումն են և դրանց արտահայտությունն այլ փուլերում: Դրանց կողքին
գոյություն ունեն ոչ մեծ թվով այլ կատեգորիաներ, որոնք արտահայտում են
արտադրահարաբերությունների դրսևորման առանձնահատկությունները վեր-
արտադրության այլ փուլերում և այդ պատճառով ոչ թե արտադրության, այլ
ընդհանրապես միայն տվյալ (օրինակ, փոխանակության, բաշխման և սպառ-
ման) փուլերի կատեգորիաներ են:



digitised by A.R.A.R.@

Պ. Լաֆարգն ուսումնասիրելով հետամնաց մի շարք ցեղերի սեփականության հարաբերությունները նկատել է, որ սեփականության միակ հնարավոր և հասկանալի հիմնավորումը եղել է օգտագործումը: Դա հասկանալի է, քանի որ հասարակությունը բաժանված չէր դասակարգերի, չկար իրավունք, սեփականությունն ընդհանրապես և յուրաքանչյուր կոնկրետ դեպքում գործում էր օգտագործման ֆունկցիան: Միայն դասակարգային հասարակարգի ու դրա պետական և իրավական հաստատությունների առաջացմամբ է ստեղծվում սեփականության հարաբերությունների իրավական ձևը, որի շնորհիվ օգտագործումը որպես սեփականության հարաբերությունների նյութական բովանդակություն «անհետանում է» տիրելու, օգտագործման և կարգադրման իրավական հարաբերությունների ձևի տակ: «Փաստական յուրացումը,— նշում է Մարքսը,— նախ տեղի է ունենում ո՛չ թե մտովի, այլ այդ պայմանների նկատմամբ ակտիվ, ռեալ հարաբերություններում... դրանց փաստական օգտագործումը, որպես սուբյեկտիվ գործունեության պայման» (К. Маркс и ф.Энгельс, Соч., т. 46, ч. I, стр. 483): Օգտագործումը որպես հասկացություն, որն արտահայտում է որոշակի տնտեսական երևույթ, առաջին անգամ հանդիպում ենք մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատություններում: «Կոմունիզմի սկզբունքներում» Ֆ. Էնգելսը գրել է. «...մասնավոր սեփականությունն էլ պետք է վերանա և դրա տեղը բռնի արտադրության բոլոր գործիքների ընդհանուր օգտագործումը և պրոդուկտներն ընդհանուր համաձայնությամբ բաշխելը կամ գույքի, այսպես կոչված, հանրայնությունը» (Նույն տեղը, հ. 4, էջ 330): Մի այլ տեղ Էնգելսը նշում է, որ «Նոր արտադրաուժերն արդեն մի ամբողջ աստիճանով վերաճել են իրենց օգտագործման բուրժուական ձևի» (Նույն տեղը, հ. 20, էջ 279): Այդ նշանակում է, որ օգտագործումը որպես տնտեսական կատեգորիա համընկնում է յուրացման հետ:

Այս նկատառումով սեփականության սահմանման հիմքում որպես տնտեսական հարաբերություն պետք է դրվեն արտադրամիջոցների օգտագործման հարաբերությունները: Մեր կարծիքով, սեփականության հասկացությունը կարելի է ձևակերպել այսպես՝ սեփականությունը դա արտադրամիջոցների և գոյամիջոցների օգտագործման հասարակական ձևն է: Հետևապես, սեփականության հարաբերություններն արտադրամիջոցների ու գոյամիջոցների օգտագործման հարաբերություններ են:

Ինչպես հիշատակվեց վերը, սեփականության տնտեսական հարաբերությունները, այսինքն՝ արտադրամիջոցների օգտագործման հարաբերություններն առաջանում են հենց արտադրապրոցեսում: Արտադրամիջոցների օգտագործումը տեղի է ունենում հասարակական արտադրության երկու գործոնների՝ աշխատուժի և արտադրամիջոցների միակցման դեպքում: Դրա հասարակական ձևը (եղանակը) վճռական նշանակություն ունի հասարակական արտադրության զարգացման տվյալ էտապի որակական որոշակիության բացահայտման համար: Կ. Մարքսը գրել է. «Որոնք էլ լինեն արտադրության հասարակական ձևերը, գործավորներն ու աշխատամիջոցները միշտ մնում են նրա գործոնները: Բայց թե՛ առաջինները և թե մյուսները միմյանցից անջատ վիճակում լոկ հնարավորապես են արտադրության գործոններ: Որպեսզի ընդհանրապես բան արտադրվի, դրանք պետք է միակցվեն: Այն առանձնահատուկ կերպն ու եղանակը, որով իրականանում է այս միակցումը, իրարից զանազանում է հասարակական կառուցվածքի տարբեր տնտեսական դարաշրջանները» (Նույն տեղը, հ. 24, էջ 43—44): Միանգամայն պարզ է, որ առանց արտադրության անձ-



նական և նյութական գործոնների միակցման, խոսք չի կարող լինել սեփականության այս կամ այն ձևի առաջացման մասին: Արտադրողին արտադրամիջոցների հետ միավորումը առաջնային, կարևորագույն արտադրահարաբերությունն է, ամենաառաջին հասարակական հարաբերությունն է ընդհանրապես: Առանց այդ միացման, չի կարող լինել հասարակություն, ըստ էության, չի կարող լինել և ինքը՝ մարդը:

Վ. Ի. Լենինը հասարակության դասակարգերի բաժանման գլխավոր գործոնն է համարում մարդկանց խմբերի տեղը հասարակական արտադրության պատմական որոշ սիստեմում արտադրամիջոցների նկատմամբ ունեցած իրենց հարաբերությամբ:

Սեփականության գիտական սահմանումը, որպես կարևորագույն տնտեսական կատեգորիա, ելակետ է ծառայում նաև սոցիալ-տնտեսական ֆորմացիաների, ընդ որում և սոցիալիզմի հիմնական արտադրահարաբերությունների ճիշտ ըմբռնման համար: Սեփականության պատմականորեն կոնկրետ ձևը նախ արտահայտում է մարդկային հասարակության զարգացման այս կամ այն փուլի տնտեսակարգի բնույթը և դրան հատուկ տնտեսական օրենքների սիստեմի առաջացումը:

Բուրժուական տնտեսագետներն ու սոցիոլոգները հավատարիմ իրենց դասակարգային շահերին, փորձում են բոլոր միջոցներով աղավաղել սեփականության էությունը, քողարկել նրա հասարակական բնույթը: Այդ նպատակով նրանք կապիտալիստական արտադրապրոցեսը պատկերում են որպես տեխնոլոգիական հարաբերություններ մարդու և բնության միջև, որոնք իբր սոցիալ-տնտեսական հարաբերություններից զերծ են և կարգավորվում են բնական օրենքներով:

Բուրժուական տնտեսագետների կողմից սեփականության հարաբերությունների աղավաղման նոր եղանակների շարքում առանձնահատուկ տեղ են հատկացնում «կապիտալիզմի տրանսֆորմացիայի», «խառն էկոնոմիկայի», «կոնվերգենցիայի» տեսություններին, որոնց համաձայն պատմական զարգացման ընթացքում իբր տեղի է ունենում արտադրամիջոցների նկատմամբ մասնավոր կապիտալիստական և սոցիալիստական սեփականության ձևերի աստիճանական մոտեցում և այդ հիման վրա ստեղծվում է ինչ-որ «միջին ինդուստրիալ հասարակություն»: «Կոնվերգենցիայի» բուրժուական տեսության կողմնակիցները փաստորեն լիովին ժխտում են արտադրամիջոցների նկատմամբ սեփականության հարաբերությունների դասակարգային բնույթը:

Ժամանակակից ռեֆորմիստները և ռևիզիոնիստները լիովին կանգնած են բուրժուական վերոհիշյալ դիրքերում: Օրինակ, Ռ. Կրոսլենդը 1956 թ. լույս տեսած իր Սոցիալիզմի ապագան գրքում պնդում է, որ արտադրամիջոցների նկատմամբ սեփականության բնույթը այլևս որոշիչ ազդեցություն չի թողնում հասարակական կյանքի վրա:

Իրականում հայտնի է, որքան արագ է կատարվում համակենտրոնացումն ու հանրայնացումը, այնքան ուժգին է սրվում կապիտալիզմի հիմնական հակասությունը: Պետական սեփականության զարգացումը մի փորձ է գերիշխող դասակարգի կողմից մեղմացնելու սրվող հակասությունը: Դրանով պետք է բացատրել այդ պրոցեսի ուժեղացումը ԱՄՆ-ում և Արևմտյան Եվրոպայում: Եթե պետական սեփականության առաջացումն ու զարգացումը մոնոպոլիստական արտադրության և կապիտալի համակենտրոնացման արդյունք է, ապա



digitised by A.R.A.R.@

*այդ սեփականության աճն արագացնում է համակենտրոնացման պրոցեսը, ընդարձակվում է մոնոպոլիստական գերիշխանության ոլորտը։*

*Անցյալ դարի վերջերին մոնոպոլիաների և պետական սեփականության առաջացման մասին Ֆ. Էնգելսը գրել է. «...ոչ ակցիոներական ընկերությունների [ու տրեստների] ձեռքն անցնելը, ո՛չ պետական սեփականություն դառնալը, սակայն, չեն ոչնչացնում արտադրաուժերի կապիտալիստական բնույթը։ ...Ինչպիսի ձևեր էլ ունենա արդի պետությունը, նա մնում է ըստ իր էության որպես մի զուտ կապիտալիստական մեքենա, կապիտալիստների պետություն, մի իդեալական ամբողջական կապիտալիստ։ Որքան շատ արտադրաուժեր վերցնի և իր սեփականությունը դարձնի նա, այնքան լրիվ կլինի նրա փոխարկումն ամբողջական կապիտալիստի և այնքան ավելի մեծ թվով քաղաքացիների նա կշահագործի։ Բանվորները կմնան վարձու բանվորներ, պրոլետարներ։ Կապիտալիստական հարաբերությունները չեն ոչնչացվում, այլ, ընդհակառակը, հասցվում են ծայրահեղության, բարձրագույն կետին» (*Անտի-Դյուրինգ, *1952, էջ 357—358)։*

*Ֆ. Էնգելսի մատնանշած զարգացման «բարձրագույն կետը» կապիտալիզմի խորտակումն է կեղեքվողների դասակարգային կռվով։ Սոցիալական, ազգային և ամեն կարգի կեղեքումից մարդկության ռեֆորմիստական և ռեֆորմիստական փրկության տեսությունների սնանկությունը վաղուց է հերքված միջազգային հեղափոխական և բանվորական շարժումների հարուստ փորձով, ՍՍՀՄ բարգավաճող գոյությամբ և մարքսիզմ-լենինիզմի իրոք հեղափոխական, գիտական ուսմունքով։*

Գ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
Լենինական

---

# Վ. ՓԱՓԱԶՅԱՆԸ ՌԵԱԼԻԶՄԻ ՀԵՏԵՎՈՂԱԿԱՆ ՊԱՇՏՊԱՆ

Ուսումնասիրելով Վրթանես Փափազյանի տեսական-քննադատական ժառանգությունը, այս հոդվածում փորձել ենք ցույց տալ, թե ինչպես է նա մեկնաբանել գեղարվեստի՝ դարասկզբի համար ակտուալ համարվող մի քանի հարցեր։

Հայտնի է, որ XIX դարի վերջին քառորդը՝ որպես կապիտալիստական հակասությունների սրման, բուրժուական հարաբերությունների լճացման ու քայքայման ժամանակաշրջան, իր արտահայտությունը գտավ նաև գեղարվեստում։ Ապագայի անորոշ ու անհեռանկար ըմբռնումը խոր կնիք դրեց իրականության գեղարվեստական պատկերման թե՛ ձևի և թե բովանդակության վրա։ Այդ ժամանակներում, ահա, երևան եկավ ֆուտուրիզմը։ Իտալիան էր ֆուտուրիզմի հայրենիքը, սակայն, շուտով այն տարածվեց նաև Ռուսաստանում, զարգացման հող գտնելով ցարական ռեակցիայի տիրապետության ծանր մթնոլորտում։ Քննադատությունն անտարբեր չընդունեց այն. պաշտպանող և խրախուսող հոդվածների կողքին ավելի ու ավելի բացահայտ դարձավ առաջադեմ արվեստագետների ու տեսաբանների պայքարը ֆուտուրիզմի դեմ։ Այդ տարիներին հայ իրականության մեջ ևս երևացին ֆուտուրիզմի սկզբունքները բացահայտող ու քննադատող հոդվածներ, որոնց հեղինակներից մեկն է և Վրթանես Փափազյանը. այնպիսի մի արվեստագետ, որ հայ հոգևոր մշակույթը հարստացրել է ո՛չ միայն բարձրարժեք գեղարվեստական ստեղծագործություններով, այլև ակտիվ մասնակցել ռեալիզմի սկզբունքների պաշտպանությանը, պայքարել արվեստի անկումայնության ամեն տեսակ դրսևորումների դեմ։ Իհարկե, անփոփոխ չեն եղել գրող-տեսաբանի էսթետիկական ըմբռնումները, սակայն, գեղարվեստի հասարակական դերի ու գաղափարայնության հարցերում նա միշտ կանգնած է եղել գեղագիտական առաջավոր սկզբունքների պաշտպանության դիրքերում։ Զատագովելով դեմոկրատական արվեստի ավանդույթները՝ նա դեմ է եղել «գեղարվեստը՝ գեղարվեստի համար» սկզբունքին, գտնելով, որ վերջինս չի կարող հասարակական խնդիրներից մեկուսացած ինչ-որ ինքնանպատակ բան լինել։ Այդ առումով Փափազյանը քննադատել է դարասկզբի գեղարվեստի այն նոր ուղղությունների սոցիալ-քաղաքական և էսթետիկական հարցադրումները, որոնք բխում են եվրոպական անկումային արվեստից*։ Նա նկատում է, որ գեղարվեստի այդ ուղղությունները անտեսում են գրականության ու արվեստի ժողովրդա-դեմոկրատական սկզբունքները և չեն ծառայում հասարակության առաջընթացին, քանզի դրանք քայքայվող, իրենց դարն ապրած բուրժուական հարաբերությունների արդյունք են։ Ի վերջո, Փափազյանը եզրակացնում է. իրեն «նոր» հայտարարող արվեստը ձգտում է պատկերել «տարերային ուժեր», «անմիջական հույզեր», «որոնցով տոգորված են այժմյան փիլիսոփայությունն ու գեղարվեստը, մյուս կողմից՝ նա պարզում է այժմյան ընկերության զառամությունը»[1]։

«Նոր արվեստի» հավակնություն ունեցող ուղղությունները, վերջին հաշվով, ֆորմալիզմի արտահայտությունն էին գեղարվեստում, չնայած այն բանին, որ դրանց կողմնակիցները հանդես էին գալիս հակաֆորմալիստական հայտարարություններով։

Ըստ Փափազյանի գեղարվեստի դերն ու նշանակությունն առավել չափով են մեծանում հասարակական կյանքի բարդ իրավիճակում։ Հասարակական վատառողջ մթնոլորտում գեղարվեստը հույսեր է ներշնչում, ժողովրդին նպատակներ առաջադրում, նպաստում կյանքում գեղեցկի ճանաչմանն ու հաստատմանը։ Այս հարցերի նկատմամբ Փափազյանի վերաբերմունքն ուշագրավ է իր ժամանակի գաղափարական-էսթետիկական կարևոր հարցերի պարզաբանման համար։ Եվ ապա 1913 թվականին «Ազատամարտում» լույս է տեսնում նրա գրական-քննադատական ակնարկներից մեկը, ուր գրողը բնութագրում է ֆուտուրիզմը, քննադատելով այդ ուղղության հիմնադիր իտալացի Ֆ. Մարինետիի *Մաֆարկա* վեպը։ 1914 թ., Մարինետիի Ռուսաստան այցելելու կապակցությամբ գրած իր հոդվածում[2], ցույց տալով ֆուտուրիզմի էությունը անցյալի արժեքները մերժելու անվերապահ ձգտումը, պատերազմների գովերգումն ու անհատապաշտության քարոզը, Փափազյանն այն համարում է նահանջ գեղարվեստի վեհ սկզբունքներից։

Ֆուտուրիստները պատերազմը համարում են «աշխարհի առողջապահություն», գովերգում միլիտարիզմը, ազգայնամոլությունը... Նա ընդգծում է, որ ֆուտուրիզմի փիլիսոփայական ու էսթետիկական աղբյուրը Նիցշեի գաղափարախոսությունն է. ««Մաֆարկա» վեպի հերոսը,— գրում է նա,— ըստ հրամանի գրքի հեղինակի, դարձել է ո՛չ միայն գաղափարախոս, նեցշեական, այլ նույնիսկ ապազայապաշտ»[3]։ Փափազյանն իրավամբ նշում է, որ անվերապահորեն եսին են զոհաբերվում և՛ հասարակական շահը, և՛ բարոյական նորմերը, և՛ կրքերին հագուրդ տալուն արգելակող ամեն բան։ Ֆուտուրիզմի էությունը հայ ընթերցողին բացահայտելու նպատակով Փափազյանը հատվածներ է բերում ֆուտուրիստների հրապարակած մանիֆեստից և ցույց տալիս, որ *Մաֆարկա* վեպն ավելի շուտ գրված է այդ սկզբունքների գրական մարմնավորման համար և կապ չունի կյանքը ճշմարտացի վերարտադրելու՝ գեղարվեստի խնդրի հետ։ Թեև ֆուտուրիստները ևս դնում էին կյանքը ռեալիստորեն նկարագրելու պահանջ, սակայն դա չէր անցնում առարկայական միջավայրի ծայրահեղ նյութապաշտական նկարագրությունից։ Այս պահանջն իր անմիջական արտացոլումն էր գտնում նրանց ստեղծագործություններում։

Ըստ այդ մանիֆեստի, ֆուտուրիզմի գեղագիտական ըմբռնումների հիմքում ընկած էր իդեալի հասարակական բովանդակության ժխտումը և եսի՝ որպես էսթետիկական իդեալի, ճանաչումը։ Այստեղից էլ՝ անհատապաշտության անվերապահ գովքը. «Կյանքը՝ եսի և հեշտության համար, հասարակությունը՝ իր շահերին զոհելու, ձգտումները ոչնչացնելու»[4], եսին ու կրքերին ծառայեցնելու ձգտումը։ Վերոհիշյալ երևույթը, ըստ Փափազյանի, ո՛չ միայն վնասակար էր գեղարվեստի հասարակական օգտակարության, այլև իրականության գեղարվեստական արտացոլման առումով։ Ֆուտուրիզմը իրականությունն արտացոլում էր երևույթների մակերեսային վերարտադրմամբ, հրաժարվելով դրանց պարզաբանման, ընդհանրացման և քննադատության ռեալիստական սկզբունքներից։ Տեխնիկայի դարի ջատագովությամբ անուշադրության էր մատնվել և

---

** Ի դեպ, Վրթ. Փափազյանին է վերագրվել 1886—1888 թթ. «Արևելյան մամուլ» հանդեսում տպագրված* Ռուսահայ պանդուխտին նամակները *վերնագրով հոդվածաշարը (տե՛ս Ռ. Նանումյան,* Վրթ. Փափազյանը գրականության մասին, *Երևան, 1962, էջ 5, 15, 25), սակայն այն Իս. Հարությունյանի գրչին է պատկանում։ Այդ է վկայում վերջինիս կազմած մատենագիտական ցանկը, ուր հեղինակն իր աշխատությունների թվում նշում է վերոհիշյալ նամակները (տե՛ս Ե. Չարենցի անվան գրականության և արվեստի թանգարան, Իս. Հարությունյանի ֆ. 13)։*

1 *Գրականության և արվեստի թանգարան, Փափազյանի ֆ. 209 ա։*

2 *Տե՛ս Ստ. Թոփչյան, Շիրվանզադեի էսթետիկան, Երևան, 1963։*

3 *Վրթ. Փափազյանը գրականության մասին, Երևան, 1962, էջ 186։*

4 *Նույն տեղը, էջ 189։*



digitised by A.R.A.R.@

հետին պլան մղվել մարդկային հոգեկան խոր ապրումների, ձգտումների, հասարակական պահանջների արտացոլման անհրաժեշտությունը: Ֆուտուրիստական գաղափարները կապ չունեն ապագայի հետ, և Փափազյանի համար զարմանալի էր «ապագայապաշտ» կոչվելու նրանց հավակնությունը: Քննադատը գտնում է, որ Մարինետին հռչակվել է ո՛չ այնքան իր ստեղծագործությունների, որքան այն բանի շնորհիվ, որ նա համարվում է «ինչ-որ արտառոց և ծիծաղելի «դպրոցի» հիմնադիր, որ նույնիսկ սխալմամբ կոչվել է «ապագայապաշտություն»[1]:

Ֆուտուրիզմը հակառակորդներ ունեցավ նաև իր հայրենիքում: Փափազյանը հայ ընթերցողին ներկայացնում է նրանցից մի քանիսի հայացքները, որոնք այդ ուղղությունը գնահատում են որպես գեղարվեստի նվաճումներից հրաժարվելու վնասակար փորձ: Այնուամենայնիվ, ինչպես ընդգծում է նա, այդ ուղղությունը, բուրժուական հարաբերությունների լճացման պայմաններում, անհեռանկարայնության դեմ ըմբոստանալու միտում ունի, որը դրսևորվում է հինը ժխտելու բուռն ձգտման մեջ: Այդ ըմբոստությունը, սակայն, ըստ Փափազյանի «մնում էր միայն թղթի վրա իբրև զարդ, որովհետև ֆուտուրիստական բոլոր շարժումները կատարվում են հոգու ծայրահեղ հեշտասիրության, անհուն եսամոլության, հետամնաց ձգտումների, այլև տոգորված են՝ խորունկ արհամարհանքով դեպի ամեն վսեմ գաղափարը, ամեն ազատարար շարժում»[2]:

Ֆուտուրիստները, բացասելով գեղարվեստի հին արժեքները, չէին փորձում արվեստը դարձնել ներկան հասկանալու և գնահատելու միջոց: «Դրանով իսկ այդ ուղղությունը դառնում էր ինքնանպատակ, սեփական «մեծության» չափազանցում: Անտեսելով գեղարվեստի մեջ ժողովրդի ազատագրական շարժումները պատկերելու ձգտումը, ֆուտուրիստները նպաստում էին բուրժուազիայի շահերին: Ըստ Փափազյանի, դրանով է բացատրվում կառավարության դրական վերաբերմունքը ֆուտուրիստների նկատմամբ: Ընդգծելով ֆուտուրիզմի գաղափարական սնանկությունը և բուրժուազիայի շահերին ծառայելը, նա գրում է. «Պետք է որ պարզ լինի, թե ինչու ռուս այժմյան կառավարության համար շատ նպաստավոր են այդպիսի կազմակերպությունները և թե ինչու զարմանալի կերպով ոստիկանությունը միշտ ներողամիտ է ֆուտուրիստների՝ նույնիսկ այլանդակությունների և անվայելուչ ցույցերի վերաբերմամբ»[3]:

Եսամոլության քարոզն անհամատեղելի էր գեղարվեստի հասարակական ակտիվ դերի պահանջի հետ, քանի որ անտեսվում էր անհատը որպես հասարակական էակ և անհատի ձգտումները այդ դեպքում հակադրվում էին հասարակական առաջավոր գաղափարներին: Հայտնի է, որ Ռուսաստանի առաջավոր մտավորականությունն ակտիվ պայքարում էր ֆուտուրիստական հայացքների դեմ, բացահայտելով նրա գեղագիտական ըմբռնումների արատավորությունը:

Ֆուտուրիզմի կողմնակիցներն արհամարհում էին Պուշկինի, Լերմոնտովի, Տոլստոյի, Տուրգենևի ստեղծագործությունները: Հանդես գալով հին արվեստների պաշտպանությամբ՝ Փափազյանն իր հոդվածում շարունակելով Գորկու միտքը, հայտնում է իր համոզմունքը— չեն նսեմացել հին արժեքները, «այդ արժեքները գնահատողներն են ու ըմբռնողները, որ պստիկացել են»[4]:

Փափազյանը ֆուտուրիզմը գնահատում էր որպես իրականության խոր ու բազմակողմանի արտացոլումից խուսափելու միջոց: Իսկ պայքարելու նրանց ձգտումն ամուլ էր, որովհետև հայտարարությունից այն կողմ չանցավ: Դրանով է բացատրվում նաև այն հանգամանքը, որ ֆուտուրիզմը շուտով կորցրեց իր հրապույրը, և շատ անվանի արվեստագետներ հրաժարվեցին այդ ուղղությունից: Փափազյանը գտնում է, որ գեղարվեստի անջատումը հասարակական առաջավոր տենդենցներից նսեմացնում է ստեղծագործության գեղագիտական արժեքը:

Այդ տարիներին Ռուսաստանում գեղարվեստի մեջ իշխող դարձավ անկումային, ապագայի հանդեպ անվստահությամբ համակված մի շարժում՝ դեկադենտությունը: Ծնունդ առնելով Եվրոպայում, XIX դարի վերջում այն զարգացման հող գտավ Ռուսաստանում, մանավանդ 1905 թ. հեղափոխության պարտությունից հետո: Գեղարվեստը կարծես վայրէջք էր ապրել ժամանակի բարքերի անկման ու հասկացությունների այլափոխման, հասարակական առաջավոր հեղափոխական հոսանքների հարկադիր նահանջի հետևանքով: Լայն ասպարեզ էր բացվել գաղափարազուրկ գործերի համար, որոնք լի էին ամեն տեսակ գռեհկությունների ու անկումային տրամադրությունների նկարագրությամբ: Փափազյանը խորապես գիտակցել է անկումային գրականության բացասական դերը հասարակության առաջընթացի գործում:

Անհատապաշտության չափազանցությունը դարձավ դեկադենտական արվեստի հիմնական տենդենցը: Ներկան դառն էր, ապագան՝ անհույս: Մոլեգնում էր ռեակցիան, և այն հաղթահարելու ուժեր դեռ չէին երևում: Այս ամենը գեղարվեստում արտահայտվեց աշխարհի ունայնության, բարու և չարի պայքարում չարի անհաղթելիության, մարդկային վեհ ձգտումների իրականացման անհնարինության և անհատի ողբերգական վայելքի քարոզի ձևով: Գորկին այդ շրջանն անվանում էր գեղարվեստի հոգեկան աղքատության շրջան, բազմիցս հանդես գալով սուր քննադատությամբ: Ինչպես նշում է Փափազյանը, բանակռվի պատճառն էր ռուսական գրականության փառքերից մեկը՝ Դոստոևսկին: 1913 թ. «Русское слово» թերթում Գորկին տպագրում է մի նամակ, այդ բողոք էր *Նիկոլայ Ստավրոգին* պիեսի բեմականացման դեմ, որ պատրաստում էր Մոսկվայի գեղարվեստական թատրոնը: Դոստոևսկու Бесы վեպի հիման վրա կազմված այդ ներկայացումը Գորկուն անհանգստացնում էր, որովհետև այնտեղ կար ազատամիտ գաղափարները ծիծաղելի ներկայացնելու միտում: Ռեակցիան հարձակվում է Գորկու դեմ: Դրան պատասխանում և Գորկուն պաշտպանում է «За правду» բոլշևիկյան թերթը:

Հատկանշական է, որ հայ իրականության մեջ Փափազյանը առաջինն արձագանքեց Գորկու պահանջներին և վճռականորեն հանդես եկավ դրանց պաշտպանությամբ: Հետևելով Գորկուն՝ գրողը ևս գտնում էր, որ կա՛ վնասակար գրականություն: Այն ստեղծագործությունն է այդպիսին, որի մեջ ծաղրելի են ներկայացվում «վսեմ գաղափարները»[1], ուր ազատասիրության արտահայտություն են համարվում եսամոլության փառաբանությունը, մարդկային և քաղաքացիական պարտականությունների մերժումը:

Փափազյանին անհանգստացնում էին հայ մշակույթի ոլորտը թափանցող անկումային տրամադրությունները, որոնց դեմ պայքարելը ժամանակի ամենակարևոր խնդիրներից էր: Այդ անհանգստությունը տեղին էր: 1913 թ. «Հայ գրականություն» հանդեսում տպագրված *Ամլություն* հոդվածում Փափազյանն այն միտքն է հայտնում, որ վերջին տասը տարում չեն ստեղծվել քիչ թե շատ նշանակալից գործեր: Ճիշտ է, 1913 թ. տպագրվեցին *Հին աստվածները* և *Հեթանոս երգերը*, սակայն Փափազյանը գտնում է, որ դրանցով չէր կարելի լցնել հայ գեղարվեստի այդ տարիների բացը: Գրական ամլության պատճառը նա համարում էր «քաղաքական-տնտեսական» հեղձուկ պայմանները, որոնք գնալով ավելի էին ծանրանում: Նրան անհանգստացնում էր այն, որ Ռուսաստանում տարածված գրական այդ շարժումը հայ մշակութային կյանքում ևս կփորձի լիիրավ տեր դառնալ:

Անկումային տրամադրությունները թափանցել էին և թատրոն: Մի շարք հոդվածներում Փափազյանը քննադատում է գռեհիկ տեսարաններ բեմ հանելու՝ ժամանակի տենդենցները: Փափազյանը թատրոնը համարում է կրթական օջախ, ուր դաստիարակվում են ժողովրդի «բարքերն ու ճաշակը»[2]: Թատրոնի բեմում կենդանի ձևով պատկերվում են մարդկային ձգտումներն ու հոգեկան հարստությունները: Իր հոդվածներում նա բացահայտում է ռեալիստական թատրոնի էությունը, նրա դերն ու նշանակությունը: Փափազյանը թատրոնի անկումը կապում է ժամանակի բարքերի, ճաշակի անկման, իդեալի հասարակական բովանդակության աղքատացման, գեղագիտական ըմբռնումների հետ: Նրա համոզմամբ միայն «ծանրախոհ» քննադատությունն է ի վիճակի մերժելու այդ երևույթները, առաջ քաշելու «կենսունակության ու վերանորոգության հարցը», ապահովելու «գեղարվեստի զարգացման գրավականները»[3]: Պետք է ասել նաև, որ տեսաբանը չէր ժխտում դեկադենտների բոլոր գործերը. նա փորձում էր ցույց տալ որոշ ստեղծագործությունների գեղարվեստական արժանիքները: Փափազյանն անխնա քննադատել է այն գործերը, որոնցում առավել ցայտուն է դրսևորվել նրանց գաղափարական նահանջը: Նա բացասաբար է արտահայտվել ռուս դեկադենտ գրող Արցիբաշևի Санин, Սոլոգուբի Тяжелые сны և Անդրեևի՝ անկումային տրամադրություններով համակված Тьма գործերի մասին, ցույց տվել դրանց ո՛չ միայն գաղափարական սնանկությունը, այլև գեղարվեստական թերությունները: Փափազյանն ընդգծում է այդ գրողների՝ հասարակական-կենսական խնդիրներից խուսափելու փորձերը, նրանց ստեղծագործությունների հակահումանիստական էությունը: Հեղափոխության պարտությունը և ռեակցիայի հարձակումը նպաստեցին հասարակական առաջընթացի համար մղվող գաղափարական պայքարի թուլացմանը, որը և հող դարձավ դեկադենտական արվեստի համար: Մի հոդվածում քննադատը գրում է, որ 1905 թ. հեղափոխության պարտությունից հետո Ռուսաստանում «Համարձակորեն ասպարեզ նետվեցին անհատապաշտության (ինդիվիդուալիզմի) վարդապետության «զորեղ եսի» բնազդների ազատ գոհացումի և անվերապահ եսասիրության քարոզները»[4]: Փափազյանը գտնում է, որ գեղարվեստական այդ շարժումն ուներ ո՛չ միայն սոցիալ-քաղաքական, այլև գաղափարական ու գեղագիտական հիմնավորում: Դրանով առավել ևս ընդգծվում էր քննադատության նշանակությունը:

Ռուս դեկադենտ գրողներն իրենց գործերում

[1] *Նույն տեղը, էջ 187:*

[2] *Նույն տեղը:*

[3] *Նույն տեղը, էջ 189:*

[4] *Վրթ. Փափազյանը գրականության մասին, Երևան, 1962, էջ 196:*



[1] *Վրթ. Փափազյանը գրականության մասին, էջ 195:*

[2] *Վրթ. Փափազյանը գրականության մասին, էջ 196:*

[3] *Նույն տեղը, էջ 198:*

[4] *Գրականության և արվեստի թանգարան, Փափազյանի ֆոնդ № 209 թ:*





digitised by A.R.A.R.@

պատկերում էին հեղափոխական գաղափարներ կրողների անամոք անկումը, նրանց քարոզած գաղափարների պարտելիությունն ու անհեռանկարայնությունը: Ահա թե ինչու Փափազյանը ցավով գրում է, թե հեղափոխության պարտությունից հետո «...հեղափոխությունը և նրա գործիչներին ծաղրելը և վարկաբեկելը», «վսեմ մտքերը գռեհիկ ցույց տալու»[1] ձգտումը երևան եկան նաև գեղարվեստում: Կյանքում այլևս չունենալով բարձրագույն նպատակ, նրանց գրական կերպարները խարխափում էին անորոշության մեջ և կյանքի իմաստը որոնում վայելքների ու անհատապաշտության քաոսի մեջ: Ահա թե ինչու «որսա ռոպեն»[2] նշանաբանը դարձավ այդ հերոսների կյանքի իմաստը, որի համար նրանք զոհաբերում էին ամեն մի նվիրական հասկացություն: Санин-ի դեմ, ըստ տեսաբանի, որպես հակառակ ուժի արտահայտություն, ներկայացված էին մարդիկ, որոնք վարպետորեն պատկերված էին «խղճալի», «անորոշության մեջ խարխափող թշվառ շարժումներով»: Հետագայում գրած իր «Գրական ակնարկներում» Փափազյանը, կրկին անդրադառնալով դեկադենտների գրական գեղարվեստական սկզբունքների պարզաբանմանը, գտնում էր, որ հասարակական-քաղաքական իրադրության փոփոխության հետ կանհետանա նաև անկումային տրամադրություններ արտահայտող գրականությունը, դրա փոխարեն գրական ասպարեզում կիշխի կենսահաստատ արվեստը, քանի որ ըստ նրա. «Դերեզմանի եզրին է ներկա հասարակային կազմն իր հասկացողություններով ու բարոյականովը. նա այլևս իդեալ չունի, ապագայի շարժումների ընթացքը չի ըմբռնում»[3]:

Փափազյանը գեղարվեստի էսթետիկական արժանիքը գտնում է հասարակական-էսթետիկական իդեալների ճանաչման և ճշմարտացի նկարագրության մեջ:

Իրականության ճշմարտացի արտացոլումը ռեալիստական արվեստի հիմնական պահանջներից էր: Դեկադենտները ևս խոսում էին իրականության ճշմարտացի արտացոլման մասին: Նրանք պնդում էին, թե իրենց ստեղծագործություններում ժամանակի ռեալիստական նկարագրություն կա: Սակայն Փափազյանը նրանց «ռեալիզմը» համարում է կեղծ, քանի որ նրանք կյանքի տգեղ երևույթները ներկայացնում են որպես անժխտելի բան, ուր տգեղը փառաբանվում է ի վնաս կյանքի գեղեցկությունների հաստատման: «Ելնել ցեխն ու աղբը գրականության, կյանքի, վարք ու բարքի մեջ լցնել ու Санин-ների նման հիրավի ընկերական պարազիտներին գովել»[4],— գրում է Փափազյանը,— և դրանով համարվել «ռեալիստ» և «օրիգինալ», մեծ բան չէ և դա չէ գեղարվեստի խնդիրը, այլ կյանքի գեղեցկի հաստատման ձգտումը: Ինչո՞ւ պետք է գեղարվեստում հաստատվի՝ «երբ ես վատ եմ, դու էլ վատ եղիր» պահանջը[5]: Փափազյանը գտնում էր, որ գեղարվեստի նպատակը պետք է լինի լավի փառաբանումը և ոչ թե տգեղի ինքնանպատակ նկարագրությունը: Հասարակական առաջընթացն անտեսող, «անմիջական բնական» նեղ ցանկությունների բավարարման պահանջով հագեցած գեղարվեստը անհարիր էր ռեալիստ գրողի գեղագիտական ըմբռնումներին: Փափազյանի գնահատականները երբեմն ծայրահեղ խստության են հասնում, սակայն դա պայմանավորված է ժամանակի պահանջներով, գրականության ժողովրդայնության ու գաղափարայնության համար մղած պայքարի խնդիրներով: Նա համոզված էր, որ անկումային տրամադրությունների արտահայտությունը գեղարվեստում երկար տևել չի կարող, և սոցիալ-քաղաքական պայմանների փոփոխումը գեղարվեստի առջև նոր պահանջներ կդնի: Գեղարվեստի խնդիրը, ըստ Փափազյանի «մեծ, բարձր, մաքուր ու լավ լինելու»[6] համար պայքարող մարդկանց պատկերելն է: Դրանով իսկ նա մի անգամ ևս ընդգծում էր գեղարվեստի հասարակական դերը, կյանքում գեղեցիկը հաստատելու նրա բարձր կոչումը, «ազնիվն ու գեղեցիկը հասկանալու» և «վերականգնելու»[7] ձգտումը:

Գեղարվեստի հասարակական դերի այս պահանջը ո՛չ միայն քննադատի դեմոկրատական աշխարհայացքի արտահայտությունն էր, այլև գեղագիտական կարևոր սկզբունք, որով առաջնորդվում էր նա իր ստեղծագործական կյանքում և պաշտպանում իր տեսական հարցադրումներում:

Փափազյանի պայքարը ռեալիզմի սկզբունքներից կատարված նահանջի, շեղումների, անկումային ու ֆորմալիստական ամեն տեսակ հայացքների դրսևորումների դեմ, այսօր ևս ուսանելի շատ բան ունի, չի կորցրել իր տեսական, գործնական նշանակությունը:

Կ. Հ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

1 Նույն տեղը:

2 Նույն տեղը:

3 Գրականության և արվեստի թանգարան, Փափազյանի ֆոնդ, № 209 բ:

4 Վրթ. Փափազյանը գրականության մասին, Երևան, 1962, էջ 93:

5 Նույն տեղը, էջ 97:

6 Վրթ. Փափազյանը գրականության մասին, էջ 96:

7 Նույն տեղը, էջ 196:

# ՎԵՐԱՊԱՏՐԱՍՏԵԼ ՄԱՆԿԱՎԱՐԺՆԵՐԻՆ

*Պատմական կարճ ժամանակամիջոցում մեր երկրում վերացել են անգրագիտությունն ու հետամնացությունը: Մեծ վերելք է ապրել ժողովրդական կրթությունը: Այսպես, եթե 1939 թ. մարդահամարի տվյալներով ՍՍՀՄ-ում աշխատող քաղաքային բնակչության 24,2 տոկոսն ուներ միջնակարգ և բարձրագույն կրթություն (թերի և լրիվ), ապա 1970 թ. մարդահամարը ցույց տվեց, որ միջնակարգ և բարձրագույն կրթություն ունեն քաղաքի աշխատավորության 75 տոկոսը, գյուղի աշխատավորների՝ կեսը (տե՛ս «Правда», 25-ը հունիսի, 1971 թ.): Միայն 1970 թ. միջնակարգ հանրակրթական դպրոցներն ավարտել են 4661 հազար, իսկ 1971 թ.՝ 4701 հազար հոգի:*

*Կոմունիզմի կառուցումը՝ այդ մեծ գործը, անկարելի է առաջ տանել առանց մարդու բազմակողմանի զարգացման,— համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ասաց Լ. Ի. Բրեժնևը:— Առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցության, ներքին հասունության բարձր մակարդակի կոմունիզմն անհնար է, ինչպես անհնար է այն առանց նյութա-տեխնիկական համապատասխան բազայի (տե՛ս ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 110):*

*Հասարակության առաջընթացի ներկայիս հրատապ, վիթխարի պրոբլեմների լուծման գործում առաջնային նշանակություն ունի նաև ժողովրդական կրթության զարգացումը: Խոշոր է սովետական դպրոցի դերը,— գրել է Վ. Ի. Լենինը, — պետական, տնտեսական, կուլտուրական շինարարության ոլորտում: Դպրոցը պետք է ո՛չ միայն համապատասխանի հասարակական կյանքի պայմաններին, այլև ակտիվ, վերափոխիչ ազդեցություն գործի նրա վրա: Լենինը գտնում էր, որ նոր մանկավարժության խնդիրն է ուսուցչական գործունեությունը զուգակցել սոցիալիզմի կառուցման ընթացքի հետ (տե՛ս Երկեր, հ. 27, էջ 409): Լենինյան այս գաղափարները միշտ եղել են նոր, սոցիալիստական դպրոցի կառուցման հիմքը: Ելնելով դրանից կուսակցության XXIV համագումարը խնդիր դրեց մեր երկրում ապահովել երիտասարդության համընդհանուր միջնակարգ կրթություն և զարգացող սովետական հասարակության վերափոխումներին համապատասխան կատարելագործել ժողովրդական կրթության ողջ սիստեմը:*

*Անցումն ընդհանուր միջնակարգ կրթության՝ հնարավորություն է ընձեռում ամեն մի երիտասարդի՝ ընտրելու իր հակումներին համապատասխան մասնագիտություն, լավագույն ձևով գործադրելու հոգեկան ու ֆիզիկական ունակությունները՝ հանուն սովետական հասարակության զարգացման: Այդ նոր, կարևոր քայլ կհանդիսանա կոմունիզմի կառուցման ճանապարհին:*

*Այժմ մի շարք միջոցառումներ են իրականացվում միջնակարգ դպրոցների ցանցն ընդլայնելու, դրա նյութա-տեխնիկական բազան հարստացնելու և մատաղ սերնդի բազմակողմանի ունակությունների զարգացման նպատակով անհրաժեշտ պայմաններ ստեղծելու համար:*

*Ընդհանուր միջնակարգ կրթության անցնելու և ժողովրդական կրթության սիստեմը վերակառուցելու առնչությամբ սովետական դպրոցի առաջ հառնում են կենսահարույց նոր խնդիրներ— երիտասարդությանը տալ հումանիտար և բնական կայուն գիտելիքներ, ապահովել պոլիտեխնիկական կրթությունը, սովորողներին ծանոթացնել ժամանակակից արտադրության հիմունքներին: Սովորողներն աշխատանքին պետք է հաղորդակցվեն ո՛չ միայն աշակերտական արհեստանոցներում, ուսումնա-արտադրական տեղամասերում, այլև արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական հրապարակներում, սովխոզների և կոլտնտեսությունների դաշտերում:*

*Վերոհիշյալ կարևորագույն հարցերի վրա է հրավիրում մեր լուսավորության գործի ղեկավարների, այդ բնագավառի բոլոր աշխատողների ուշադրությունը՝ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի՝ երիտասարդության ընդհանուր միջնակարգ կրթության անցնելու և հանրակրթական դպրոցի հետագա զարգացման մասին որոշումը: Դրա կենսագործման համար անհրաժեշտ է իրականացնել ուսուցման նոր, առավել ներգործուն մեթոդներ ու տեխնիկական միջոցներ, ջանալով աշակերտությանը տալ ավելի խոր ու կայուն գիտելիքներ հասարակության ու բնության զարգացման օրենքների մասին, ձևավորել նրանց մարքս-լենինյան աշխարհայացքը, համակել աշխատասիրությամբ, հասարակական ակտիվ գործունեության ձգտումով, սոցիալիստական հայրենիքին նվիրվածության, կոմունիզմի գաղափարներին հավատարմության ոգով:*

*Այս ամենում շատ կարևոր է աշխատանքային դաստիարակության դերը: Առաջավոր շատ դըպրոցների փորձը ցույց է տալիս, որ շրջանավարտների ուժերին, կարողություններին համապատասխան կոլեկտիվ գործունեությունը երիտասարդության աշխատանքային, ֆիզիկական ու բարոյական դաստիարակության լավագույն միջոց է: Մեր հասարակության զարգացման ներկա մակարդակը պահանջում է ժամանակակից մարդու մասնագիտական պատրաստականություն, ընդհանուր կուլտուրայի առավել բարձր աստիճան: Սովետական մարդու կուլտուրական և հո-*



digitised by A.R.A.R.@

## ՄԱՐՍԻ ՆՈՐԱԳՈՒՅՆ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Վերջին հարյուրամյակների ընթացքում արեգակնային համակարգության որևէ մոլորակի (բացի Երկրից) ուսումնասիրությունն այնքան չի հետաքրքրել ու հուզել մարդկությանը, որքան Մարսինը։ Դրա հիմնական պատճառներից մեկն այն սխալ ենթադրությունն էր, թե Երկրի ու Մարսի բնական պայմանները բավականաչափ նման են իրար, ուստի և հնարավոր է բանական էակների առկայությունը նաև Մարսի վրա։

Մարսի գիտական հետազոտություններն սկսվել են գրեթե երեք ու կես դար առաջ՝ հեռադիտակի հայտնագործման ժամանակից ի վեր։ Դեռևս 1636 թ., իր հեռադիտակային դիտումների ժամանակ, իտալացի աստղագետ Ֆրանչեսկո Ֆոնտանան կազմել է հիշյալ մոլորակի մակերևութային գոյացությունների առաջին գծագրերը։ Այդ ժամանակից ի վեր հազարավոր գիտնականներ ամենաբազմազան սարքավորումներով դիտել, հետազոտել են Երկրի հարևան մոլորակը, կազմել դրա բազմաթիվ քարտեզներ ու սխեմաներ, որոշել նրա ֆիզիկական բնութագրերը։

Մարսի ուսումնասիրությունների պատմությունը հարուստ է դրամատիկական շրջադարձերով։ Այդ մոլորակի վերաբերյալ բազում ստույգ տվյալների հետ մեկտեղ, նրա մակերևութային գոյացությունների և ֆիզիկական պայմանների վերաբերյալ բազմիցս կատարվել են ոչ ճիշտ, հաճախ առավել երևակայական, քան գիտական ենթադրություններ։ Դրանց սկիզբը պայմանականորեն կարելի է համարել 1877 թ. իտալացի աստղագետ Ջիովանի Սկիապարելլիի հայտնաբերած մարսյան «ջրանցքները», վերջը՝ 1959 թ. սովետական նշանավոր աստղագետ Իոսիֆ Շկլովսկու ենթադրությունն այն մասին, թե Մարսի երկու արբանյակներն ունեն արհեստական ծագում։

Մարսի հետազոտությունների որակական նոր փուլ բացեցին վերջին տարիներս դեպի այդ մոլորակն արձակված ավտոմատ միջմոլորակային կայանները (ԱՄԿ), որոնք զգալիորեն ավելացրին տվյալները Մարսի մակերևույթի և մթնոլորտի վերաբերյալ։ Այդ կայաններից ստացված ինֆորմացիան հնարավորություն ընձեռեց գիտնականներին՝ ո՛չ միայն ճշգրտելու իրենց հին պատկերացումները Մարսի մասին, այլև հիմք դարձավ նոր հայտնագործությունների։

ԱՄԿ-ների միջոցով Մարսի նորագույն հետազոտությունների մասին կարելի է պատմել հետևյալը։

Դեպի Մարս արձակված առաջին տիեզերական ապարատը 1962 թ. նոյեմբերի 1-ին Սովետական Միության արձակած «Մարս—1» ավտոմատ միջմոլորակային կայանն է (քաշը՝ 893,5 կգ)։ «Մարս—1» ԱՄԿ-ի հիմնական խնդիրներն էին.

— Միջմոլորակային տիեզերական տարածությունում թռիչքի ընթացքում գիտական հետազոտություններ կատարել։

— Միջմոլորակային տիեզերական ռադիոկապ ստեղծել։

— Մարս մոլորակի մակերևույթը լուսանկարահանել և ռադիոկապով լուսանկարներ հաղորդել Երկիր։

«Մարս—1» ԱՄԿ-ի թռիչքի ժամանակ մեծ քանակությամբ գիտական ինֆորմացիա ստացվեց միջմոլորակային տարածության մագնիսական դաշտի, «արեգակնային քամու», մետեորիտային հոսանքների և այլ բնութագրերի վերաբերյալ։ 1963 թ. մարտին երբ «Մարս—1» ԱՄԿ-ը գտնվում էր Երկրից 106 միլիոն կմ հեռավորության վրա, ռադիոկապը նրա հետ խզվեց։ Մինչև այդ անց էր կացվել ռադիոկապի 61 սեանս։

1964 թ. դեպի Մարս արձակվեց ամերիկյան 260 կգ-ոց «Մարիներ—4» ԱՄԿ-ը։ Հաջորդ տարվա հուլիսի 15-ին այն անցավ Մարսի մակերևույթից մոտավորապես 10.000 կմ հեռավորության վրա և, շրջանցելով այդ մոլորակը 12—17 հազար կմ տարածությունից, կատարեց նրա



մակերևույթի 22 լուսանկար և դրանք հաղորդեց Երկիր։

«Մարիներ—4»-ի թռիչքի բարեհաջող իրագործումը հնարավորություն ընձեռեց ամերիկյան գիտնականներին ավելի նպատակասլաց նախապատրաստելու դեպի Մարս արձակվելիք «Մարիներ—6» և «Մարիներ—7» ԱՄԿ-ների թռիչքը։ «Մարիներ—6» ԱՄԿ-ը (քաշը՝ 383 կգ) 1969 թ. փետրվարի 24-ին «Ատլաս-Կենտավր» տանող հրթիռով, առանց երկրամերձ ուղեծիր դուրս բերելու, 11,49 կմ/վրկ արագությամբ, ուղղվեց դեպի Մարս։ 156 օր հետո, նույն տարվա հուլիսի 31-ին, «Մարիներ—6»-ը 3410 կմ հեռավորությամբ անցավ Մարսի մոտով։ Նրա ուղեծիրն անցնում էր Մարսի հյուսիսային բևեռից դեպի հասարակած։

Հինգ օր հետո Մարսից 3200 կմ հեռավորությամբ անցավ նաև «Մարիներ—7» ԱՄԿ-ը (արձակվել էր 1969 թ. մարտի 27-ին)։ Ի դեպ, այս կայանը հուլիսի 30-ին ոչ մեծ երկնաքարի հետ բախվելու հետևանքով (այն հավանաբար, ծակել էր բարձր ճնշման ռեզերվուարներից մեկը) կորցրել էր իր տարածական կողմնորոշումը, որի պատճառով 7 ժամ խզվել էր Երկրի ռադիոկապը կայանի հետ։ Հնարավոր է նաև, որ ռադիոկապի խզման պատճառը կարող է լինել նաև որևէ մարտկոցի պայթյունը։

«Մարիներ—6» և «Մարիներ—7» ԱՄԿ-ների գիտական հետազոտությունների ծրագրի հիմնական խնդիրներն էին.

— Մարսի մակերևույթի լուսանկարահանումը և հեռուստատեսության սկզբունքով դրանց հաղորդումը Երկիր, այդ մոլորակի մակերևույթն ու հատկությունները, ինչպես և մթնոլորտի օպտիկական բնութագրերը հետազոտելու համար։

— Մթնոլորտի բաղադրության ուսումնասիրությունը սպեկտրի ուլտրամանուշակագույն և ինֆրակարմիր տիրույթներում աշխատող սպեկտրալ սարքերի միջոցով։

— Մթնոլորտի որոշ բնութագրերի և մոլորակի մակերևույթի ջերմաստիճանի սահմանումն ըստ մոլորակը շրջանցելու ժամանակ ստացված ռադիոալիքների մարման արագության և Մարսի ինֆրակարմիր ճառագայթման տվյալների։

«Մարիներ—6» և «Մարիներ—7» ԱՄԿ-ների վրա դրված էին երկու տիպի հեռուստատեսային խցիկներ՝ տարբեր մասշտաբների պատկերներ ստանալու նպատակով, «Մարիներ—6»-ի լուսանկարահանման համար ընտրված էին Մարսի հասարակածային շրջանի անապատային, առավել մուգ՝ «ծովային» և ջրանցքային գոյացությունները։ «Մարիներ—7»-ի լուսանկարչական ու սպեկտրալ սարքավորումներն ուղղվել էին դեպի Մարսի հարավային բևեռագլխարկի և դրանից հյուսիս ընկած «ջրանցքների» և «բուսականությամբ» հարուստ շրջանները։ Այս երկու կայաններից ընդհանուր հաշվով ստացվել է 202 լուսանկար, որոնց կեսից ավելին՝ Մարսի հետ կայանների ամենամոտ մերձեցման (մոտ 3,5 հազար կմ) ժամանակ։

«Մարիներ—6» և «Մարիներ—7» ԱՄԿ-ների լուսանկարահանման շրջաններն ընտրված էին այնպես, որ դրանց մեջ հանդիպում էին Մարսի մակերևութային գրեթե բոլոր հիմնական գոյացությունները, այսպես կոչված՝ անապատները, ծովերը, ջրանցքները, բևեռագլխարկները, ամպերը և այլն։

1971 թ. Երկրի հետ Մարսի մեծ դիմակայության ժամանակ այդ մոլորակն արձակվեցին չորս ԱՄԿ-ներ, որոնցից 3-ը նույն տարվա վերջում հասան Մարսի շրջանը։ Նրանց միջոցով երկար ժամանակ հետազոտություններ կատարվեցին մարսաշուրջ ուղեծրերում։

Ամերիկյան «Մարիներ—8» ԱՄԿ-ի արձակումը, ցավոք, անհաջող անցավ՝ տանող հրթիռի երկրորդ աստիճանի կառավարման սարքերի անսարքության պատճառով արձակումից 40 րոպե անց կայանն ընկավ Ատլանտյան օվկիանոս։ Ի դեպ, այս ԱՄԿ-ը գնահատվում էր 64,5 միլիոն դոլար, որից 12,3 միլիոնը տանող հրթիռի արժեքն էր։

«Մարիներ—9» ԱՄԿ-ը նախատեսված էր ուղեծիր դուրս բերել 1971 թ. մայիսի 18-ին, սակայն իր նախորդի վթարի պատճառով այն արձակվեց մայիսի 30-ին։ Այդ պատճառով զգալիորեն վերանայվեց նաև «Մարիներ—9» կայանի գիտական հետազոտությունների ծրագիրը։

«Մարիներ—9» կայանն արձակումից 5,5 ամիս անց՝ 1971 թ. նոյեմբերի 14-ին, հասավ Մարսի շրջանը և սկսեց պտտվել նրա շուրջը 1200 կմ նվազագույն հեռավորությամբ։

Տիեզերական տարածության և Արեգակնային համակարգության մոլորակների հետազոտության ծրագրի համաձայն, 1971 թ. մայիսի 19-ին և 28-ին տանող հզոր հրթիռների օգնությամբ Բայկոնուրի հրթիռակայանից դեպի Մարս արձակվեցին սովետական «Մարս—2» և «Մարս—3» ԱՄԿ-ները։ 4650 կգ-ոց այդ կայանները նախ դուրս էին բերվել միջանկյալ երկրաշուրջ ուղեծիր, ապա տիեզերական երկրորդ արագությունը (11,01 կմ/վրկ 200 կմ բարձրության վրա) մի փոքր գերազանցող արագությամբ ուղղվել դեպի Մարսի հետ հանդիպման շրջանը։

«Մարս—2»-ի թռիչքը դեպի Մարս տևեց 192 օր։ Այդ ընթացքում կայանն անցավ 470 միլիոն կմ։ Կայանը Մարսի շուրջը մեկ լրիվ պտույտ էր կատարում 18 ժամվա ընթացքում։ Նրա ուղեծիրը Մարսի հասարակածային հարթության նկատմամբ թեքված էր 48 աստիճան 54 րոպեով։

Հինգ օր հետո՝ 1971 թ. դեկտեմբերի 2-ին, 188 օրվա թռիչքից հետո, Մարսին մոտեցավ նաև սովետական մյուս ԱՄԿ-ը՝ «Մարս—3»-ը։ Նույն



digitised by A.R.A.R.@

ըստ Մարսի ռադիոճառագայթումների, նրա մակերևույթի նյութի նմանակը Երկրի վրա կվարցային ավազներն են։

Սովետական «Մարս—2» և «Մարս—3» ԱՄԿ-ներով կատարված հետազոտությունների կոմպլեքսում, ի տարբերություն ամերիկյան «Մարիներ» կայանների ծրագրի, օժանդակ դեր էր հատկացվում մոլորակի լուսանկարմանը, որը գլխավորապես կապված էր սպեկտրի մյուս հատվածներում կատարված չափումների տեղակայումն ապահովելու հետ։ Ստացված լուսանկարներում նկատվել են հետաքրքիր աղջամուղջային երևույթներ, մասնավորապես տերմինատորի (ցերեկվա և գիշերվա սահմանի) գծից մոտավորապես 200 կմ այն կողմի մթնոլորտի լուսարձակման, տերմինատորի մոտակայքում մակերևույթի գույնի փոփոխությունների, Մարսի մթնոլորտի շերտավոր կառուցվածքի և «կարմիր» մոլորակի այլ բնութագրերի վերաբերյալ։

«Մարս—2», «Մարս—3» և ամերիկյան «Մարիներ—9» ԱՄԿ-ներից ստացված լուսանկարները գիտնականներին հնարավորություն տվին զգալիորեն ճշգրտելու իրենց պատկերացումները Մարսի մակերևույթի ռելիեֆի, նրա արբանյակների, նրա մակերևութային և մթնոլորտային շատ գոյացությունների վերաբերյալ։ Համառոտակի թվարկենք այն նորը, ինչ տվին այդ վերջին կայանի ուղեծրի փոփոխությունների դիտարկումները, նրանից ստացված լուսանկարների և մյուս նյութերի վերլուծությունը թվարկված հարցերի վերաբերյալ։

Մարսի հասարակածային գոտում հայտնաբերվեցին մի շարք խոշոր բարձունքներ, որոնք գրեթե ամբողջ գոտի են կազմում մոլորակի շուրջը։

Մարսի գրավիտացիոն դաշտը բավականաչափ անհամասեռ է։ Այդ դաշտի տեղական խոտորումները հավանաբար պայմանավորված են մոլորակի զանգվածի, լուսնային մասկոնները հիշեցնող, կուտակումներով։ Ըստ «Մարիներ—9» կայանի ուղեծրի փոփոխությունների գնահատվեց նաև Մարսի հասարակածային և բևեռային շառավիղների տարբերությունը, որը հասնում է երկու կմ-ի։

Դեպի Մարս արձակված «Մարիներ» ԱՄԿ-ներից նույն տեղամասերի լուսանկարների համեմատությունից պարզվեց, որ Մարսը բոլորովին էլ մեռած մոլորակ չէ, և նրա մակերևութային գոյացությունները (առանձնապես ոչ մեծ չափսեր ունեցողները) մշտական փոփոխությունների են ենթարկվում։ Մարսի վրա հողմահարության ինտենսիվությունը համեմատելի է երկրայինի հետ, թեպետ դրանք ծնող պատճառները, ամենայն հավանականությամբ, տարբեր են։

«Կարմիր» մոլորակի վրա հայտնաբերվեցին երկրային կիրճեր, խոր ձորեր, գետահովիտներ և հոսող ջրի ազդեցությամբ առաջացող ռելիեֆի այլ ձևեր հիշեցնող գոյացություններ։ Դրանք ո՛չ միայն ունեն բազմազան գալարումներ (մեանդրներ), այլև ընդունում են բազմաթիվ վտակներ։ Քանի որ այժմ Մարսի վրա հոսող ջրի առկայությունը բացառվում է, ենթադրվում է, որ ջրային ողողումների այդ ձևերն առաջացել են երկրաբանական ոչ վաղ անցյալում, երբ մոլորակի վրա, հավանաբար և՛ անձրևներ են տեղացել, և՛ գետեր հոսել։

Հայտնաբերվեցին հրաբխային ակտիվության հետքեր, որոնք արտահայտված էին խառնարանների, լավային հոսքերի ու ծածկոցների ձևով։ Բևեռամերձ մարզերում հայտնաբերվեցին նաև սառցադաշտային ռելիեֆի հետքեր։

Մի քանի խոսք Մարսի վրա կյանքի գոյության հարցի վերաբերյալ գիտության մեջ այժմ իշխող կարծիքի մասին։ Հաշվի առնելով Մարսի բնական պայմանները, նրա մակերևույթի և մթնոլորտի բաղադրությունն ու քիմիական կազմը, մոլորակի ենթադրվող երկրաբանական անցյալը և, վերջապես, կյանքի գոյության հնարավորության բավականաչափ ընդարձակ սահմանները գիտնականների մեծ մասը ենթադրում է, որ «կարմիր» մոլորակի վրա թե՛ անցյալում և թե այժմ քիչ թե շատ բարդ օրգանական կյանք չի եղել, թեև չի ժխտվում նրա պարզագույն ձևերի՝ միկրոօրգանիզմների (որոշ սունկերի, սպորների, մանրէների, միաբջիջ կենդանիների, բակտերիաների) գոյությունը։

Այս և Մարս մոլորակի հետ կապված բազմաթիվ հարցերի վերջնական պատասխանը կտան Երկրի հարևան մոլորակի երկրային և տիեզերական հետազոտությունները՝ ավտոմատ և օդաչուավոր կայանների միջոցով։ Այդ գիտափորձերը խոշոր ավանդ են մուծում ո՛չ միայն առանձին մոլորակների անմիջական հետազոտության, այլև տիեզերքում կյանքի ծագման և զարգացման դժվարագույն պրոբլեմի ուսումնասիրման ոլորտում։

Գ. Ա. ԻՎԱՆՅԱՆ

Լենինգրադի համալսարանի ասպիրանտ

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ՆԵԿՐԱՍՈՎՅԱՆ ՄԻՋՕՐԵԱԿԱՆԸ

ЕРЕВАНСКИЙ ГОСУДАРСТВЕННЫЙ УНИВЕРСИТЕТ

ИНСТИТУТ МИРОВОЙ ЛИТЕРАТУРЫ
им. А. М. ГОРЬКОГО АКАДЕМИИ НАУК СССР

НЕКРАСОВ
и
ЛИТЕРАТУРА НАРОДОВ
СОВЕТСКОГО СОЮЗА

ИЗДАТЕЛЬСТВО ЕРЕВАНСКОГО УНИВЕРСИТЕТА
ЕРЕВАН - 1972

Կան գրքեր, որոնց արժեքը մեծանում է գրական ավելի ու ավելի լայն հասարակայնության սեփականությունը դառնալու համեմատ։ Նման գրքերը նշանակալից են ոչ այնքան իրենց թեմատիկայով ու հարցադրմամբ, որն ինքնին շատ կարևոր է ու արժեքավոր, որքան այն հորիզոններով, որոնք բացվում են դրանցում արծարծված խնդիրների լուծման բարձունքից։ Նման գործերից է Նեկրասովը և Սովետական Միության ժողովուրդների գրականությունը ժողովածուն, որն ստեղծել է գրեթե բոլոր եղբայրական հանրապետությունների գրականագիտության ներկայացուցիչներից բաղկացած հեղինակային մի կոլեկտիվ։

Լուսաբանելով Նեկրասովի պոեզիայի դերը XIX դարի երկրորդ կեսի և XX դարի սկզբի ազգային գրականությունների ռեալիզմի, քաղաքացիականության և ժողովրդայնության ձևավորման մարզում, ժողովածուն բացահայտում է սովետական բազմազգ գրականության հատուկ միասնականության գաղափարա-գեղարվեստական որոշակի նախադրյալները, պատմական արմատներն ու աղբյուրները։ Այսպիսով, արտացոլվում են սովետական գրականության միասնականության ձևավորման բնականությունը, ներհատկությունն ու օրինաչափությունը, բացելով ազգային գրականությունների՝ ռուս մեծ ժողովրդի գրականության հետ ունեցած ստեղծագործական դարավոր համագործակցության լայն հորիզոնները։

Այս ասպարեզում արգասավոր ազդեցություն է գործել Նիկոլայ Ալեքսեևիչ Նեկրասովի պոեզիան, որը XIX դարի ռուսական պոեզիայի քաղաքացիականության բարձրակետն է. պոետի անունն իսկ դարձել է հայրենիքին, ժողովրդին ծառայելու խորհրդանիշ։ «Նա,— գրում է ակադեմիկոս Մ. Բ. Խրապչենկոն Նեկրասովը և Սովետական Միության ժողովուրդների գրականությունը հոդվածում, որով սկսվում է այս գիրքը,— այն մարդկանց թվում է, ովքեր ակտիվորեն ձևավորել են հեղափոխական գիտակցականությունը, եռանդուն ներգործել հեղափոխական ուժերի աճի վրա, որոնց նպատակն է եղել աշխատանքի մարդու ազատագրումը քաղաքական ու սոցիալական ճնշումից։ Հեղափոխական-

* Некрасов и литература народов Советского Союза. Ереван, Изд-во Ереванского университета, 1972.



digitised by A.R.A.R.@

## ՍՈՒՐԵՆ ԱՂԱԲԵԿԻ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Անողոք մահը մեր շարքերից խլեց գիտության վաստակավոր գործիչ, տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ ՍՈՒՐԵՆ ԱՂԱԲԵԿԻ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻՆ։



Իր ողջ գիտակցական կյանքի ընթացքում Ս. Ա. Միքայելյանն ընթացավ կոմունիստական հանրակարգ կերտողների գաղափարական ջոկատի առաջամարտիկների փաղանգում։ Շատ վա՞ղ, տակավին կոմերիտական աշխատանքի եռուն տարիներին դրսևորվեցին նրա հոգևոր նկարագրի ակնբախ հատկանիշները՝ բարձր գաղափարայնություն, սկզբունքայնություն, աղնվություն, ձեռներեցություն, գործնականություն, ինտելեկտուալ որոշակի հակումներով հանդերձ։ Ուստի, ամենևին պատահական չէր, որ մինչև իր այնքան հանրօգուտ ու բեղուն կյանքի վերջը, սիրելի Սուրենն իրեն անմնացորդ նվիրաբերեց սերունդների գաղափարական դաստիարակության շնորհակալ գործին։

Ս. Միքայելյանը մեր հանրապետության այն մանկավարժ-գիտնականներից մեկն էր, որը խորապես տիրապետելով մարքսիստական տնտեսագիտությանը, անափոս մտայնությամբ իր ամբարած հարուստ գիտելիքները հաղորդեց սովետական նոր սերնդի բազմահազար ներկայացուցիչներին։ Այո՜, անբռնազբոս ու կշռված դասախոս Միքայելյանի լեփլեցուն լսարանից ունկնդիրները միշտ էլ հեռացել են գոհունակության խոր զգացումով և այն հստակ գիտակցությամբ, որ իրենց ուսուցիչն իր կենսախայտ վճարկություններով կարողանում է համակել ունկնդիրներին գիտական կոմունիզմի վեհ իդեալներով ու տրամաբանական ճշտված կարողությամբ ստեղծագործական բորբ ավյուն ներարկել ուսանողների հոգևոր աշխարհին։

Բոլոր նրանք, ովքեր երբևէ ուսանել, մաքառել ու աշխատել են Սուրեն Միքայելյանի հետ, չեն մոռանա, որ համձին նրա կորցրին՝ անձնազոհ կոմունիստին, շնորհալի տնտեսագետ-մանկավարժին, աշխատանքային բարձր կուլտուրայով օժտված դասախոսին, տքնաջան խմբագրին, որի աշխատակցությունը մեր ամսագրի կոլեգիայում եղել է հույժ բեղմնավոր։

«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ)։

Адрес редакции: Ереван-33, Барекамутян, 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64։

ՎՖ 05649 Պատվեր 228 Թղթի չափսը 70×108 1/16։ Տիրաժ 14.400 Գինը 25 կոպ.։

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 28/II 1973 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ Ալ. Խասհակյան փող. № 28։



Гос. Библиотека ... Арм ССР

digitised by A.R.A.R.@


## ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

### ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՖՐԻԴՐԻԽ ԷՆԳԵԼՍ— Կենսագրություն։ Գերմաներենից թարգմանված։ Մ., «Политиздат», 1972։

ՎԻՏԿԻՆ Մ. Ա.— Արևելքը Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի պատմա-փիլիսոփայական կոնցեպցիաներում։ Մ., «Наука» հրատ., 1972։

ԳՈՐԿԻ Ա. Մ.— Վ. Ի. Լենին։ (Հուշեր)։ Մ., «Политиздат», 1972։

ԱՋԻԶՅԱՆ Հ. Գ.— Լենինյան ազգային քաղաքականությունը զարգացման և գործողության մեջ։ Մ., «Наука» հրատ., 1972։

Հեղինակն արտացոլել է լենինյան ազգային քաղաքականության դերը Ռուսաստանում հաղթանակած սոցիալիստական հեղափոխության մեջ, լուսաբանել Վ. Ի. Լենինի կողմից ազգային հարցի մշակումը սովետական իշխանության տարիներին. ցույց է տվել, թե ինչպես ՍՄԿԿ զարգացնում և իրականացնում է լենինյան ազգային քաղաքականությունը։

ԱՍԼԱՆՅԱՆ ՀԱՅԿ Գ.— ՍՄԿԿ XXIV համագումարը և արդի գաղափարախոսական պայքարը։ Եր., ԳԱ հրատ., 1972։

Այս գրքում հեղինակը համառոտակի բնութագրել է ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների գաղափարական-տեսական բովանդակությունը և շարադրել բուրժուական ու ռևիզիոնիստական գաղափարախոսության դեմ հարձակողական պայքար մղելու հարցեր։

Ժամանակակից իմպերիալիստական պետության գաղափարական գործունեությունը։ Մ., «Наука» հրատ., 1972։

ՄԱԼԻՆԻՆ Վ. Ա.— Հեղափոխական նարոդնիկության փիլիսոփայությունը Մ., «Наука» հրատ., 1972։

Ընդդեմ բուրժուական և մանրբուրժուական սոցիալիզմի տեսությունների։ Հոդվածների ժողովածու։ Մ., «Экономика» հրատ., 1972։

Գրքում զետեղված հոդվածների հեղինակները քննադատում են սոցիալիզմի՝ բուրժուական և մանրբուրժուական տեսությունները։

ԲԵՐԵԺԿՈՎ Վ. Մ.— Դիվանագիտության ծառայության տարիները։ Հիշողություններ։ Մ., «Международ. отношения» հրատ., 1972, 374 էջ։

Հեղինակն այստեղ պատմել է հուշեր՝ հիտլերյան Գերմանիայի հետ չհարձակման պայմանագիր կնքելու (1940 թ.), Թեհրանի և մյուս բանակցությունների մասին։

Արևիստական ընբերցումներ։ Պրակ 5։ Խղճի ազատությունը և օրենքը։ Քրիստոնեական սոցիալիզմը և այլ հարցեր։ Մ., «Политиздат», 1972։

Սովետական օրենսդրության հիմունքները։ Կոաուսուցման սիստեմի համար։ Մ., «Политиздат», 1972։

Այս ձեռնարկում համառոտ ու մատչելի ձևով շարադրված են օրենսդրության տարբեր բնագավառների հիմնական հարցերը։

ԴՈՒԳԻՑ Վ. Գ.— Գիրք երջանիկ մարդու մասին։ Պատմվածք Նիկոլայ Բաումանի մասին։ Մ., «Политиздат», 1972։

«Բոցաշունչ հեղափոխականներ» մատենաշարի այս գրքում, որ նվիրված է Վ. Ի. Լենինի զինակից Ն. Բաումանի (1871—1905) ծննդյան 100-ամյակին, արտացոլված է նրա կյանքն ու հեղափոխական կարճատև գործունեությունը։

ՆԻԿՈԼԱԵՎ Վլ.— Նվիրվում եմ հեղափոխությանը։ Մ., «Политиздат», 1972։

«Սովետական հայրենիքի հերոսները» շարքի այս գրքում արտացոլված են անվախ ընդհատակայինի, մասսաների տաղանդավոր կազմակերպչի ու պրոպագանդիստի, ականավոր զորավար Մ. Վ. Ֆրունզեի կյանքն ու պայքարը։

Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին։ Թուրքական աղբյուրներ (հատ. Դ)։ Թարգմ. Ա. Խ. Սաֆրաստյանի և Գ. Հ. Սանթուրջյանի։ Եր., ԳԱ հրատ., 1972, 260 էջ։

Գինը 25 կ.: 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՔԱՂՑՐ ՍՊԻՏԱԿՈՒՑ

*Արևմտյան Աֆրիկայում աճող դիոսկորեոֆիլլում բույսի հատապտղից ամերիկյան քիմիկոսներն առանձնացրել են արտակարգ քաղցր նյութ, որն ստացել է «մոնելին» անունը: Շաքարը դրա համեմատ անհամ է. մոնելինը շաքարից քաղցր է 3 հազար, սախարինից մոտ՝ 6 անգամ: Մոնելինը սպիտակուց է, և որպես համանյութ հավանաբար կօգտագործվի շաքարախտով տառապողների բուժման համար: Այժմ, որպես շաքարի փոխարինիչ, վերջիններիս համար կիրառվում են սինթետիկ նյութեր՝ սախարին, կսիլիտ, սորբիտ: Մոնելինի առավելությունը նրա բնական ծագումն է:*

## ԱՌԱՆՑ ՆԻԿՈՏԻՆԻ

*Լեհաստանում, Պուլավայի բուսաբուծության, հանքային պարարտանյութերի և հողագիտության ինստիտուտի աշխատակիցներին հաջողվել է ստանալ ծխախոտի նոր տեսակ, որի տերևները պարունակում են ընդամենը 0,1 տոկոս նիկոտին, 40 անգամ պակաս, քան մնացած տարատեսակները:*

*Նոր տեսակը բարձր բերքատու է: Հեկտարի միջին բերքատվությունը 15—20 ցենտներ է, այն դիմացկուն է վիրուսային հիվանդությունների նկատմամբ: Դրանից պատրաստված սիգարեթներն ու գլանակները չեն զիջում նիկոտինի բարձր պարունակություն ունեցողներին:*

## ՅՈՒՂԸ ՊԱՐԿՈՒՄ

*Ամերիկյան «Գուդրիչ» ֆիրման գտնում է, որ մոտ ապագայում ավտոմոբիլի յուղը պետք է վաճառվի ոչ թե թիթեղյա բանկաներում, այլ պոլիուրեթանային ամուր թաղանթից պատրաստված պարկերում: Այն էժան է մետաղյա տարայից: Յուղն օգտագործելուց հետո պարկը կարելի է այրել:*

## ՈՒԼՏՐԱՁԱՅՆԱՅԻՆ ՍԱԼԻԿ

*Բարձր հաճախականության վառարանները ուտելիքի պատրաստման համար ունեն լուրջ թերություն: Նվազագույն անսարքության ժամանակ ստեղծում են մեծ ռադիոարգելքներ: Այդ իսկ պատճառով ֆրանսիական որոշ ֆիրմաներ արտադրում են ուլտրաձայնային սալիկներ: Դրանք, պահպանելով բարձր հաճախականության վառարանների առավելությունները, ուտելիքը պատրաստում են արագ, բայց և չեն այրում:*

## ԱՂԱՋՈՒՐԸ ԵՎ ՃԱԿՆԴԵՂԸ

*Ամերիկյան օվկիանոսագիտության ինստիտուտում (քաղ. Սանտ-Դիեգո, Կալիֆոռնիա) նախնական հետազոտությունները պարզել են. շաքարի ճակնդեղը կարող է աճել աղի ջրով ոռոգվող դաշտերում: Որոշ տվյալներ վկայում են, որ այդպիսի ոռոգման դեպքում շաքարի ստացվածքը նույնիսկ ավելի է, քան սովորական ոռոգման պայմաններում: Սակայն մի վերապահում. որոշ տեսակներ պետք է սկզբում ոռոգել անհամ ջրով և ապա աստիճանաբար անցնել աղի ջրի:*

## ԿՈՄՊՅՈՒՏԵՐԸ ԾՈՑԱԳՐՊԱՆՈՒՄ

*Այժմ արդեն դժվար է որևէ մեկին զարմացնել պայուսակի էլեկտրոնային հաշվիչ մեքենայով: Ճապոնական ֆիրմաներից մեկն ավելի հեռուն է գնացել— այն նախագծել է ծոցագրպանում ազատ տեղավորվող կոմպյուտեր, որի չափսերն են 7,62×15,24 սմ, քաշը՝ 255 գ.:*

*Սարքի միկրոսխեման, սակայն, համարժեք է «մեծ» ԷՀՄ-ին, որը պարունակում է 30 հազար տրանզիստոր:*

digitised by